## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1980
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԿԿ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ



### ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



### ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ



### ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ



### ՈՐԱԿ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







Սովետական Հայաստանի և

ՀԿԿ կազմավորման 60-ամյակին

ընդառաջ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Ա. Զ. ԲԵԳԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների դոկտոր

*ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ, ինչպես և Ռուսաստանի մյուս ճնշված ժողովուրդների իսկական ազատագրումը հնարավոր դարձավ ցարիզմի ու ժամանակավոր կառավարության տապալման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ, որին հաջորդեց սովետական պետականության ստեղծումը։ Հայաստանի աշխատավորները, ինչպես և Ռուսաստանի մյուս ժողովուրդները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հիմնեցին նոր սոցիալիստական ժողովրդաիշխանություն։ Անցած 60 տարում աննախընթաց տեմպերով զարգացավ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։*

*Հիշենք, որ դաշնակները 1918 թվականի մայիսի 28-ին, հայ ժողովրդի կամքին հակառակ, Հայաստանը հայտարարեցին անկախ հանրապետություն, իսկ իրենց Ազգային խորհուրդը՝ նրա գերագույն իշխանություն։ Դառնալով կառավարող կուսակցություն, դաշնակները բնակչության լայն զանգվածներին իրենց կողմը գրավելու համար սին խոստումներ էին տալիս, թե կիրականացնեն ագրարային ռեֆորմ, միջոցներ կձեռնարկեն մեղմացնելու պարենային ճգնաժամը, կտեղավորեն գաղթականներին, կհաստատեն կարգուկանոն, կսանձահարեն անարխիան, արմատախիլ կանեն ավազակությունը, կողոպուտը, Հայաստանը կպաշտպանեն Թուրքիայի ագրեսիայից և այլն։ Բայց դրանցից ոչ մեկը չկատարվեց։*

*Աշխատավորները, համոզվելով, որ հակառակ դաշնակների հավաստիացումների, կյանքն օրեցօր ավելի անտանելի է դառնում, աճում է հանցագործությունը, պայքարի էին ելնում պաշտպանելու իրենց իրավունքները։ Նրանց համար կողմնորոշիչը ո՛չ թե դաշնակների ստահոդ խոստումներն էին, այլ Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի և սովետական մյուս ազգային հանրապետությունների օրինակը։*

*Դաշնակցական կառավարության հակաժողովրդական բնույթի մասին ամենից ակնառու վկայում էին նրա պատժիչ քաղաքականությունը, կամայականությունը բնակչության լայն խավերի նկատմամբ։ Այդ ժամանակաշրջանում նույնիսկ խոսք չէր կարող լինել պետական կարգուկանոնի մասին։*

*Զգալով, որ աճում է աշխատավորների դասակարգային ինքնագիտակցությունը և սրվում դասակարգային պայքարը, դաշնակ կառավարողները փորձում էին հենվել իմպերիալիստական տերությունների վրա։ Արդեն 1918 թվականի վերջին իշխանությունը Հայաստանում անցել էր անգլիական հրամանատարու-*

թյան ձեռքը։ 1919 թվականի հունիսին Հայաստանում եկացին դաշնակների արտասահմանյան գլխավոր տերերը՝ ամերիկյան խնամակալները, որոնց հլու հնազանդ ենթականերն էին դարձել Հայաստանի կառավարողները։

Դաշնակցականները ցուցաբերեցին կառավարելու լիակատար անընդունակություն։ Նրանց վարած ներքին քաղաքականությունը հանգեցրել էր մասսաների աղքատացման, իսկ արտաքին քաղաքականությունը երկիրը տանում էր դեպի կործանում։ Այդ հատկապես զգալի էր 1920 թվականի աշնանը, երբ երկրորդ անգամ բռնկեց պատերազմի հրդեհը, որն անգլո-ամերիկյան իմպերիալիստների աջակցությամբ սկսել էր թուրքական զինվորականությունը։ Կյանքը հաստատեց բոլշևիկների իրավացիությունը. դաշնակներն ի վիճակի չեն ստեղծելու կենսունակ պետություն։ Ինչպես հետագայում խոստովանել է բուրժուական հայկական հանրապետության առաջին պրեմիեր Հովհաննես Քաջազնունին, «պետականության կազմավորման և պետական կյանքի ղեկավարման գործը մեր ուժերից անչափ վեր էր... Մենք պետական գործիչներ չէինք»։

Սովետական Ռուսաստանը, ռուս մեծ ժողովուրդը խորապես կարեկցում էին անգլո-ամերիկյան գաղութարարների ու նրանց դաշնակ կամակատարների ստեղծած բացառիկ ծանր դրության մեջ ընկած հայ աշխատավոր ժողովրդին։ Սովետների համառուսաստանյան VII համագումարի բանաձևում ճնշված ազգերի մասին ասված է. «Իր համակրանքը հայտնելով նախկին Ռուսաստանյան կայսրության բոլոր ծայրամասերի աշխատավոր մասսաներին, որոնք այժմ առանձնացել են պատերազմի ու հեղափոխության հետևանքով, սովետների համառուսաստանյան VII համագումարը պաշտպանում է նաև հետագա համերաշխությունը, որը հաստատվել է ցարիզմի և ռուսական իմպերիալիստական բուրժուազիայի դարավոր ճնշման դեմ մղված ընդհանուր պայքարով»։

Ազատատենչ ու ճնշված աշխատավոր մասսաներն ավելի ու ավելի էին հանգում այն գիտակցության, որ Հայաստանը վերջնական կործանումից կարելի է փրկել սովետական իշխանություն հաստատելով միայն։ Բայց նրանց ազատասիրական պայքարին խոչընդոտում էին սեփական շահագործողներն ու օտարերկրյա կեղեքիչները։ Այդպիսի իրադրության մեջ Հայաստանի աշխատավորները ակտիվացրին դասակարգային ու ազգային-ազատագրական պայքարը։ Գյուղացիներն ավերում էին խոշոր հողատերերի կալվածքները, գրավում նրանց հողերը, հրաժարվում ենթարկվել դաշնակցական վարչակարգին, ծառայել բանակում, հարկեր վճարել, ձախողում էին ընտրությունները։ Բանվորները պահանջում էին դեմոկրատական իրավունքներ ու ազատություններ, բարձրացնել աշխատավարձը, կազմակերպում հակադաշնակցական ցույցեր։

Հայաստանի բանվորներն ու գյուղացները վճռական պայքար ծավալեցին սովետական իշխանության հաղթանակի համար։ Այդ պայքարի հաջողության գրավականը Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությունն էր։

Հաշվի առնելով ապստամբության ընթացքում ստեղծված բարդ իրադրությունը, 1920 թվականի նոյեմբերի 28-ին, Հայաստանի Հեղկոմը բանվորների և գյուղացիների անունից դիմեց ՌՍՖՍՀ ժողկոմխորհի նախագահ Վ. Ի. Լենինին, խնդրելով «զինված օգնություն ցույց տալ Հայաստանին՝ լիահույս, որ Արևելքի ճնշված ժողովուրդների ազատարար, սոցիալիստական մեծ Ռուսաստանի հերոսական կարմիր բանակը ցույց կտա ռեալ օգնություն»։ Սովետական Ռուսաստանը կատարեց իր ինտերնացիոնալ պարտքը, և XI բանակի զորամասերը, անցնելով Հայաստանի սահմանը, զինված օգնություն ցույց տվին հայ ժողովրդին։ Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն։

Սովետական Հայաստանը հին հասարակարգից ժառանգել էր տնտեսական ու քաղաքական անհավասարություն, քառամյա իմպերիալիստական պատերազմի, դաշնակների ու անգլո-ամերիկյան օկուպանտների եռամյա գիշատչական տնօրինության հետևանքով ավերված ժողովրդական տնտեսություն։ 1919 թվականին Հայաստանում արտադրված արդյունաբերական արտադրանքի ծավալը 12 անգամ ավելի քիչ էր, քան 1913 թվականին։ Ցանքատարածություննե-



րը հասել էին նախապատերազմյան մակարդակի 22,9 տոկոսին, խաղողի այգիների տարածությունը՝ 55,4 տոկոսին։

Բնակչության սոցիալական դրությունը Հայաստանում ողբերգական էր. 50 հազար որբ, 100 հազարից ավելի գաղթականներ Արևմտյան Հայաստանից, չկար հաց, հագուստ, վառելիք, դեղորայք։ Ժողովրդի կյանքն առավել ծանրացրին դաշնակների սանձազերծած քաղաքացիական պատերազմը, նրանց փետրվարյան (1921 թ.) ավանտյուրան։

Հայ ժողովրդի համար ծանրագույն այդ շրջանում Սովետական Հայաստանին օգնության ձեռք մեկնեց Ռուսաստանը։ Վ. Ի. Լենինը, ՌԿ(բ)Կ Կենտկոմը, Ադրբեջանի և մյուս հանրապետությունների կառավարություններն օգնում էին Հայաստանին պարենամթերքով, հագուստով, դեղորայքով, վառելիքով։ Մոսկվայում, Լենինգրադում, Խարկովում, Ռոստովում, Օդեսայում և այլ քաղաքներում կազմակերպվել էին Հայաստանի օգնության հատուկ կոմիտեներ։ Այդ ազնիվ գործին մասնակցում էին արտասահմանյան հայ գաղթօջախների աշխատավորները ևս, համարելով այն իրենց դասակարգային ու ազգային պարտքը։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը և կառավարությունը մշակեցին և, հենվելով Սովետական Ռուսաստանի օգնության վրա, իրականացրին մի ամբողջ շարք քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական միջոցառումներ սովետական իշխանությունը ամրապնդելու, ժողովրդական տնտեսությունը վերականգնելու նպատակով։ Պայմաններ ստեղծվեցին Հայաստանի համակողմանի վերելքի համար։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերից արմատապես վերափոխվեցին նաև հանրապետությունում ապրող ազգությունների փոխհարաբերությունները։ ՀՍՍՀ-ի հայ և այլազգի բնակչության միջև ազգային հաշտության և բարեկամության ապահովումը դարձավ նրա քաղաքականության բարձրագույն օրենքներից մեկը։

Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում սկզբնավորեց աշխարհով մեկ ցրված հայերի վերամիավորման գործը։ Հայաստանի սովետների առաջին համագումարն ընդունեց հատուկ դիմում՝ սփյուռքահայ աշխատավորներին կոչ անելով պաշտպան կանգնել Հայաստանի վերածննդի ու նրա պայծառ ապագայի համար մղվող պայքարին։

Ներքին քաղաքականության մեջ իրականացված պատմական նշանակություն ունեցող միջոցառումները, որոնցից գլխավորը սահմանադրության ընդունումն էր, լրացվում էին ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությամբ, որն ավելի ռեալ հեռանկար էր բացում հայ ժողովրդի ազգային վերածննդի համար։ Բազմազգ սովետական երկրում կատարյալ ազգային սոցիալիստական պետականության ստեղծման համար կարևոր նշանակություն ուներ սովետական էկոնոմիկայի վերածումը միասնական տնտեսական օրգանիզմի։ Վ. Ի. Լենինը, դիմելով ազգային-պետական շինարարության գործում տնտեսականի և ազգայինի հարաբերակցության հարցին, արտահայտել է մի միտք, որն այսօր ևս այժմեական է. «տնտեսությունը համախմբում է մի պետության մեջ ապրող ազգերը» (ԵԼԺ, հ. 24, էջ 217)։

Հայկական, ինչպես և մյուս սովերեն, մանավորապես անդրկովկասյան սովետական հանրապետությունների փորձը հաստատեց լենինիզմի այն դրույթը, թե սոցիալիստական վերակառուցման հաջողության համար բավական չէ ազգային հաշտություն հաստատել այդ հանրապետություններից յուրաքանչյուրի ներսում, համերաշխության հասնել նրանց միջև առանձին ակտերի ու համաձայնությունների հիման վրա, այլ անհրաժեշտ է քաղաքական, տնտեսական ու ռազմական սերտ միավորում։ Հենց այդ նպատակներին էր համապատասխանում անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիան։ Ահա ինչու Հայաստանի սովետների առաջին համագումարը, լուծելով հանրապետության պետական կյանքի կարևորագույն շատ հարցեր, պաշտպանեց Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման հասունացած գաղափարը և հանձնարարեց

Հայաստանի Կենտգործկոմին՝ միջոցներ ձեռնարկել այն իրականացնելու համար:

Կենսագործելով համագումարի և Հայաստանի Կենտգործկոմի հետագա որոշումները, հանրապետության լիազոր ներկայացուցիչներն ստորագրեցին Անդրկովկասյան ֆեդերացիայի և ՍՍՀ Միության կազմավորման մասին ակտերը, որոնք համապատասխանում էին լենինյան սկզբունքներին: Դրանով իսկ հնարավոր դարձավ բոլոր հանրապետությունների նյութական ռեսուրսների միավորումը և նրանց զարգացման միասնական ժողովրդատնտեսական պլանով կազմակերպումը, որով և ապահովվեցին տնտեսական և կուլտուրական ծաղկումը, սոցիալիզմի կառուցումը մեր երկրում:

Զարգանալով սոցիալիստական արտադրահարաբերությունների հիմքի վրա, սովետական հասարակարգը շարունակ կատարելագործվում էր որպես կոմունիզմի առաջին փուլի հասարակարգ: Զարգանում և ամրապնդվում էր մարդկանց պատմական, սոցիալական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը, որի գաղափարախոսական հիմքը մարքս-լենինյան աշխարհայացքն է, ՍՄԿԿ քաղաքականությունը: Զարգանում, խորանում էին դասակարգերի ու սոցիալական խմբերի ներդաշնակ հարաբերությունները, իրականացել էր ժողովրդի սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը, ազգային և ընդհանուր սոցիալական շահերի ներդաշնակ զուգակցումը, ամբողջ ՍՍՀ Միության և նրա յուրաքանչյուր առանձին հանրապետության անշեղ առաջընթացը:

Ինչպես որ միմյանց հետ սերտորեն կապված ու անքակտելի են ընդհանուր սոցիալականն ու ազգայինը, նույնպես և միմյանց հետ անխզելիորեն կապված ու անբաժանելի են սովետական ազգային հանրապետություններն ու դրանց միությունը: Այդ լավ էին հասկացել սովետական ժողովրդի հակառակորդները: Այդ միասնությունը խախտելու նպատակով նրանք առաջ էին քաշել «բացարձակ սուվերենություն», «բացարձակ անկախություն» լոզունգները: Դա հարմար քող էր նրանց հակահեղափոխական տակտիկայի համար, որի նպատակն էր տարանջատել, մեկուսացնել հանրապետությունները և օտարերկրյա պետությունների օգնությամբ ոչնչացնել սովետական իշխանությունն ու վերականգնել բուրժուականը: Բայց հայ ժողովուրդը, ստեղծելով իր սովետական ազգային պետականությունը, հանդես եկավ սովետական ֆեդերացիայի՝ բոլոր եղբայրական հանրապետությունների հետ սերտ միասնության պաշտպանությամբ՝ ելնելով ինչպես իր, նույնպես և ողջ սովետական պետության ընդհանուր շահերից: Ընդհանուր միութենական և ազգային պետականությունը միասնական է ու անխզելի, ինչպես միասնական ու անխզելի են սովետական ժողովուրդը, մեր երկրի ազգերն ու ազգությունները: Այդ է մեր երկրի ազգային-պետական հարաբերությունների զարգացման գրավականը: Ահա ինչու Վ. Ի. Լենինը, բոլշևիկները միշտ վճռականորեն մերժել են այդ միասնությունն ու անխզելիությունը տեղայնության և նացիոնալիզմի, կոնֆեդերատիվ, անջատողական ու մեծապետական միտումների դիրքերից վերանայելու փորձերը:

Սովետական միութենական պետությունն իր գոյության առաջին իսկ օրերից ուժեղ է եղել ամենից առաջ նրանով, որ բոլոր միութենական հանրապետությունները, այսինքն՝ ամբողջ Միությունը, կանգնած են եղել յուրաքանչյուր հանրապետության շահերի, իսկ յուրաքանչյուրը՝ բոլորի, ամբողջ Միության շահերի պաշտպանության դիրքերում: Այդ սկզբունքը հասուն սոցիալիզմի պայմաններում հաստատվեց, զարգացվեց և սահմանադրորեն վավերագրվեց: Հայկական ՍՍՀ 1978 թվականի սահմանադրության մեջ արտացոլված կարևորագույն սկզբունքը միութենական և ազգային պետականության միասնության սկզբունքն է: ՍՍՀ Միությունը իր կազմավորման պահից սկսած մարմնավորել է պետական-իրավական միասնության սկզբունքորեն նոր ձև, որն արտացոլվել է ՍՍՀՄ 1924 թվականի, 1936 թվականի սահմանադրություններում, միութենական հանրապետությունների 20-ական թվականների և 1937 թվականի սահմանադրություններում: ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությունները, խորացնելով միութենական հանրապետությունների իրավունքների երաշխիքները, շեշտում են մեր պետության միութենական հիմունքների ամրապնդման



կարևորությունը: «ՍՍՀ Միությունը միասնական միութենական բազմազգ պետություն է» սահմանումը (ՍՍՀՄ սահմանադրության 70-րդ հոդվ., Հայկական ՍՍՀ սահմանադրության 68-րդ հոդվ.) արտացոլում է մեր երկրի ազգերի ու ազգությունների տեղի ունեցող մերձեցումը՝ նրանց պետական կյանքի, նպատակների ու ձգտումների ընդհանրության հիման վրա: Այդ սահմանումը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, բոլոր ազգերի ու ազգությունների համախմբումը կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով (տե՛ս ՍՍՀՄ սահմանադրության 70-րդ հոդվածը):

Սահմանադրության 81-րդ հոդվածը պարտավորեցնում է ՍՍՀ Միությանը՝ ի դեմս նրա պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմինների, պահպանել միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները: Սահմանադրությունը սահմանում է մի շարք նորմաներ, որոնք միութենական և ինքնավար հանրապետություններին ուղղակի պարտավորեցնում են նպաստել սովետական ֆեդերացիայի հետագա զարգացմանն ու ամրապնդմանը: ՍՍՀՄ սահմանադրությունը (77-րդ հոդվածի երկրորդ պարբերությունը) միութենական հանրապետություններին պարտավորեցնում է իր տերիտորիայում նպաստել ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործել ՍՍՀՄ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները:

Ելնելով Վ. Ի. Լենինի այն ցուցումից, որ սովետական իշխանության հիմնական քաղաքականությունը պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը, հայկական սովետական պետությունն իր գոյության ողջ ընթացքում առավելագույն ուշադրություն է նվիրել և շարունակում է նվիրել տնտեսական զարգացման հարցերին: Տնտեսության զարգացումն անհնար է առանց գիտության, կուլտուրայի զարգացման, հարկ է, որ ավելի մեծ թվով աշխատավորներ մասնակցեն հասարակության և պետության կառավարման գործերին: Պատմական կարճ ժամանակամիջոցում Սովետական Հայաստանը մեծ հաջողությունների է հասել այդ ճանապարհին, սրընթաց թռիչք է գործել դեպի տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացման բարձունքները: Սովետական Միության բոլոր ժողովուրդները երբեք այնքան սերտորեն չեն առնչվել հայ ժողովրդի կուլտուրական նվաճումներին, որքան այժմ՝ զարգացած սոցիալիզմի փուլում: Այդ են վկայում մեր ժողովրդի հոգևոր գանձերի ըստ ամենայնի արժեքավորումը և պրոպագանդումը ինչպես մեր բազմազգ երկրում, այնպես և արտասահմանում:

Ժամանակակից Հայաստանը բարձր զարգացած ինդուստրիալ հանրապետություն է, որն ունի արդի արդյունաբերական արտադրության մոտ 100 ճյուղ՝ նորագույն տեխնիկայով ու տեխնոլոգիայով հագեցված ձեռնարկություններ:

Թեթև և սննդի արդյունաբերությունից բացի հանրապետությունում հաջողությամբ զարգանում են այնպիսի ճյուղեր, ինչպիսին են էներգետիկան, գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրոնիկան, ռադիոէլեկտրոնիկան, հաշվիչ-հաշվողական մեքենաների արտադրությունը և ժամանակակից արդյունաբերության շատ այլ ճյուղեր: Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ հանրապետությունն առաջ է անցել Ֆրանսիայից, Ճապոնիայից, Իտալիայից: Մետաղահատ հաստոցների, պղնձի և գունավոր մետալուրգիայի, այլ արտադրատեսակների, ինչպես և բարդ մեքենաների ու սարքավորումների արտադրությամբ Հայաստանը բնակչության մեկ շնչի հաշվով մի քանի անգամ գերազանցում է Եվրոպայի բարձր զարգացած մի շարք կապիտալիստական երկրների: Աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման մեջ Հայաստանն զբաղեցնում է առաջատար տեղերից մեկը քիմիական արդյունաբերության արտադրանքների, մասնավորապես սինթետիկ նյութերի արտադրությամբ. բնակչության մեկ շնչի հաշվով քիմիական արդյունաբերության արտադրանքների արտադրությամբ ևս Հայաստանը գրավում է առաջին տեղերից մեկը: Հայաստանի էկոնոմիկայի զարգացումը հենվում է նրա հզոր էներգետիկ բազայի վրա. էական փոփոխություններ են տեղի ունեցել նրա էներգետիկ հաշվեկշռում:

Մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները մեծապես շահագրգռված են Սովետական Հայաստանի հաջողություններով, իրենց ավանդն են ներդնում հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման գործում: Հայաստանը ևս իր ավանդն է մուծում եղբայրական հանրապետությունների վերելքի մարզում: «Փոխադարձ հաջողության նկատմամբ սովետական ազգերի ջերմ շահագրգռվածությունը օրինաչափ արտահայտությունն է այն փաստի, որ նրանք բոլորն ունեն մեկ ընդհանուր գործ, ընդհանուր իղձեր ու հույսեր, նպատակներ ու ձգտումներ» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 1, էջ 632):

Իմպերիալիզմի ջատագովները իրենց պրոպագանդայի ծանրության կենտրոնը ավելի ու ավելի հաճախ են փոխադրում ազգայինի բնագավառը, ձգտելով ՍՍՀՄ ազգերի մերձեցումը ներկայացնել որպես Սովետական Միության ազգերի ու ազգությունների զոհաբերում «անպտուղ կոմունիստական փորձին»: Այսպես, տարբեր ազգերի երիտասարդության՝ խոպանում աշխատելու ցանկությունը նրանք համարում են «տեղահանություն ազգային հանրապետությունների տերիտորիայից՝ հետագա գաղութացման նպատակով»:

Սովետական Միության ժողովուրդները, նրանց հետ և հայ ժողովուրդը, համատեղ կառուցելով կոմունիստական հասարակարգ, պաշտպանում են նվաճվածը՝ ազգային ազատ զարգացման (տնտեսական, լեզվական, կուլտուրական) հնարավորությունը, որը համապատասխանում է յուրաքանչյուր ժողովրդի շահերին: Հիմնազուրկ է կոմունիզմի կառուցման պրոցեսում ազգային հարաբերությունների զարգացումը ներկայացնել որպես ազգային շահերի թերագնահատում, որպես նրանց արհեստական ասիմիլյացիա և այլն:

Ակնբախ են վաթսունամյա Սովետական Հայաստանի նվաճումները պետական, ժողովրդատնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում: Դրանք արգասիք են եղբայրական հանրապետությունների նոր համագործակցության ու փոխադարձ օգնության, որի հիման վրա ստեղծվեց ՍՍՀ Միության պետականության և ՍՍՀ Միության ժողովուրդների պետականության միասնությունը:

Տոնելով իր սոցիալիստական պետականության հաստատման վաթսունամյակը, հայ ժողովուրդը երախտագիտության խոսք է ուղղում կոմունիստական կուսակցությանը, սովետական ժողովուրդների անխախտ դաշնադրությանը:

---

# ԱՇԽԱՏԵԼ ԱՌԱՆՑ ԵՏ ՄՆԱՑՈՂԻ

**Ռ. Մ. ԳԱԼՍՏՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի երկրորդ քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻԿԱ XXVI համագումարի պատվին համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ստեղծագործական աշխատանքի բուռն խանդավառությամբ է համակել Լենինական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներին: Կուսկազմակերպությունները գլխավորում են արտադրական կոլեկտիվների այդ խանդավառությունը և նրանց ջանքերն ուղղում տասներորդ հնգամյակի պլանները հաջողությամբ կատարելու, համագումարն արժանավայել գործերով դիմավորելու նպատակին:

Այժմ, երբ աստիճանաբար մոտենում է ՍՄԿԿ XXVI համագումարի հրավիրման օրը, համագումար, որը կանխորոշելու է մեր երկրի տնտեսական և սոցիալ-կուլտուրական զարգացման նոր հնգամյա ծրագիրը, ամեն մի կոլեկտիվի առջև ծառանում է այն հարցը, թե ինչ է արել նա ընթացիկ հնգամյակում, ինչպես է կազմակերպել սոցիալիստական մրցությունն անցած տարիներին և ինչպիսի արդյունքի է հասել:

Ընթացիկ հնգամյակի տարիներին սոցիալիստական մրցությունն իր թափով ու խորությամբ դարձավ հիրավի համաժողովրդական, ծնեց ստեղծագործական աշխատանքի վառ օրինակներ, խթանեց մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը, սկիզբ դրեց հայրենասիրական նոր շարժումների: ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, խոսելով երկրի էկոնոմիկայի զարգացման գործում հայրենասիրական նոր նախաձեռնությունների դերի մասին, ասաց. «Մեզ հարկավոր են գործնական, բուն մասսաների խորքից եկող նախաձեռնություններ, որոնք ընդունակ են խանդավառել, ոգեշնչել միլիոնավոր մարդկանց: Դրանցից մեկն է՝ աշխատել առանց ետ մնացողների: Հենց այդպիսի նախաձեռնություններն էլ պետք է տարածել»:

Ինչպես հայտնի է, Դոնի-Ռոստովում ծնունդ առած՝ «Աշխատել առանց ետ մնացողների» հայրենասիրական նախաձեռնությունը ժամանակին արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանը և լայնորեն տարածվեց ամբողջ երկրում: Ծավալելով նոր շարժումը՝ ռոստովցիներն իրենց առջև խնդիր դրեցին նախ նվազագույնի հասցնել պլանը թերակատարող ձեռնարկությունների թիվը, իսկ հետո հասնել այն բանին, որ բոլոր կոլեկտիվներն ապահովեն արտադրանքի իրացման, աշխատանքի արտադրողականության աճի և նոր տեխնիկայի ներդրման առաջադրանքների կատարումը: Արդյունքը եղավ այն, որ վերջին հինգ տարում քաղաքի արդյունաբերությունն սկսեց աշխատել առանց ետ մնացող ձեռնարկությունների:

Լավ օրինակը լայն արձագանք գտավ նաև Լենինականի աշխատավորական կոլեկտիվներում: Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներն անշեղորեն իրագործելու, արտադրական բոլոր օղակներում հանրային արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու նպատակով լայնորեն կիրառում են ինչպես Ռոստովի, այնպես էլ Մոսկվայի, Լենինգրադի, Սվերդ-

լովսկի, Գորկու, Կարագանդայի կուսակցական կազմակերպությունների ուսանելի փորձը: Քաղաքային կուսկազմակերպությունը վերջին տարիներին հետևողական աշխատանք է ծավալում արդյունաբերական ձեռնարկությունների ետ մնալը հաղթահարելու համար: Տնտեսական դժվար լուծելի պրոբլեմներն ու խնդիրները պարբերաբար քննարկում ենք ետ մնացող ձեռնարկությունների ղեկավարների ու մասնագետների հետ, ինչպես նրանց, այնպես էլ կուսկազմակերպությունների հաշվետվությունները լսվում են քաղկոմի բյուրոյի նիստերում: Քաղկոմի պատասխանատու աշխատողները լինում են տեղերում, ուսումնասիրում գործերի վիճակը, անհրաժեշտության դեպքում օգնում կոլեկտիվներին իրենց առջև ծառացած խնդիրների լուծման գործում:

Քաղկոմի ձեռնարկած միջոցների, արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների, կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների հետևողական ջանքերի շնորհիվ 1978 թ. պետական պլանները կատարեցին բոլոր կոլեկտիվները: Համաչափ, արդյունավետ աշխատանքի օրինակ են տալիս էլեկտրատեխնիկական գործարանի, դարբնոցամամլիչային սարքավորումների, գուլպանասկեղենի, բամբակագործվածքային արտադրամիավորումների, տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվները:

Հաջողության գրավականը առաջավոր փորձի լայն արմատավորումն է: Ամեն մի արտադրական կոլեկտիվ պարտավոր է ծանոթանալ հարևանի կիրառած առաջավոր եղանակներին, ընդօրինակել այն ուսանելին ու լավը, որ կուտակել է նա և օգտագործում է արտադրության պրոցեսում: Կուսքաղկոմը ջանում է, որպեսզի ամեն մի ձեռնարկությունում ցուցաբերեն այդպիսի մոտեցում գործի նկատմամբ: Մրցակիցների աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձին ծանոթանալու նպատակով անցյալ տարվա ապրիլին Դոնի-Ռոստովում եղան մեր քաղաքի կուսակցական և տնտեսական մի խումբ ղեկավարներ, ինժեներատեխնիկական աշխատողներ, որոնք ուսումնասիրեցին մրցության կազմակերպման նրանց փորձը և շատ բան ընդօրինակեցին: Ո՞րն էր ուսանելին Ռոստովում: Մեր պատվիրակության համար ուշագրավ էր այն, որ ռոստովցիները, զարգացնելով սկսած շարժումը, հենվելով ձեռք բերածի վրա, խնդիր են դրել հասնել պետական առաջադրանքների կատարմանը ութ հիմնական ցուցանիշներով: «Աշխատել առանց ետ մնացողների» նախաձեռնության արմատավորման պրոցեսում նրանք մեծ տեղ են հատկացնում կադրերի հետ տարվող աշխատանքին, նրանց հմտությանը, մոբիլիզացնում են բոլոր աշխատավորներին պետական առաջադրանքները կատարելու համար: Եվ գլխավորն այն է, որ դաստիարակության ոլորտն են ներգրավվում բոլորը: Բանվորից մինչև տնտեսական ղեկավար պատասխանատվության զգացումով է համակվում պլանային առաջադրանքների կատարման նկատմամբ, պայքարում իր ձեռնարկության մակնիշի պատվի համար, բարձրանում է կոմունիստների դերը՝ յուրաքանչյուր աշխատանքային տեղում բարձր կազմակերպվածության և պահանջկոտության մթնոլորտ ստեղծելու գործում:

Կուսքաղկոմը, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հետ միասին, կազմակերպչական և քաղաքական լայն աշխատանք է ծավալում բանվոր-ծառայողների, ինժեներատեխնիկական աշխատողների շրջանում առանց ետ մնացողի աշխատելու շարժումը տարածելու համար, նրանց ջանքերը նպատակամղում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործմանը: Առաջավոր ձեռնարկություններում կուսկազմակերպությունները գործուն կերպով վերահսկում են սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, ձեռնարկում են օպերատիվ և արդյունավետ միջոցներ պլանային առաջադրանքների թերակատարումը նախապես կանխելու նպատակով, ուժեղացնում են պահանջկոտությունը ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների ու մասնագետների նկատմամբ: Քաղաքի կուսկազմակերպությունները հասել են այն բանին, որ էապես կրճատվել և նվազագույնի է հասցվել պլանային առաջադրանքները թերակատարող ձեռնարկությունների թիվը: Ձեռք են բերվել արդյունաբերական արտադրանքի իրացման, թողարկման, աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր:

Կուսքաղկոմը, անդրադառնալով ռոստովցիների հայրենասիրական նախա-



ձեռնությանը, քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարեց աշխատավորական կոլեկտիվներում տարվող քաղաքական-մասսայական և կազմակերպչական աշխատանքն ուղղել պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարմանը, հասնել այն բանին, որ տասներորդ հնգամյակը և նրա եզրափակիչ տարին բարձր ցուցանիշներով փակեն բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները:

Հետազոտությունները մեզ բերեցին այն համոզման, որ առանձին աշխատավորական կոլեկտիվների ետ մնալու հիմնական պատճառը միայն նյութատեխնիկական և կոմպլեկտավորող իրերի վատ մատակարարումը չէ: Կան նաև մի շարք ներքին պատճառներ: Մի խումբ ձեռնարկություններում ցածր է կատարողական կարգապահությունը, մյուսում վատ է աշխատանքի կազմակերպումը, մեծ է կադրերի հոսունությունը, երրորդում զգացնել են տալիս տեխնիկական հետամնացությունը և աշխատանքային թույլ կարգապահությունը:

Այդ թերությունները և դրանց վերացման ուղիները դարձան քաղաքային կոմիտեի պլենումների ու ակտիվի ժողովների քննարկման և խոր վերլուծության առարկա: Բանն այն է, որ մի շարք ձեռնարկություններ տարվա առաջին կիսամյակին պլանավորում էին տարեկան ընդհանուր ծավալի մոտ 40 տոկոսը, իսկ դա հաճախ տարեկան պլանների թերակատարման պատճառ էր դառնում: Այժմ պլանների ընդունումը, հաստատումը, ըստ եռամսյակների և ամիսների դրանց բաշխումը կատարվում են կուսակցության քաղկոմի անմիջական հսկողությամբ: Տարեկան պլանների նախագծերը ուսումնասիրվում և վերլուծվում են ոչ միայն քաղսովետի գործկոմի, այլև քաղկոմի բաժիններում, որտեղ հաշվի են առնվում դրանց լարվածությունը, իրականացման հնարավորությունը:

Երկու տարուց ավելի է, որ սահմանել ենք այսպիսի կարգ. յուրաքանչյուր տասնօրյակ քաղկոմը արդյունաբերական ձեռնարկություններից ստանում է պլանների սպասվելիք կատարման նախնական տվյալները և վերլուծում դրանք, հարկ եղած դեպքում անհրաժեշտ օգնություն ցույց տալիս: Այսպես, այդ հաղորդումներից պարզվեց, որ կոշիկի և տրիկոտաժի ֆաբրիկաներում տրանսպորտի անբավարար աշխատանքի պատճառով ծանր դրություն է ստեղծվել հունիս ամսվա իրացման պլանի կատարման համար: Հարկ եղավ միջնորդել Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի ղեկավարությանը՝ Լենինական քաղաքին լրացուցիչ կոնտեյներներ հատկացնելու համար: Դրանով լուծվեց այդ ձեռնարկությունների առջև ծառացած դժվարին հարցը:

Կարող է թվալ, թե քաղկոմը, զբաղվելով արդյունաբերական ձեռնարկություններին համակողմանի օգնություն ցույց տալու հարցերով, սովետական և տնտեսական մարմիններին զրկում է իրենց հիմնական ֆունկցիաներով զբաղվելու հնարավորությունից: Բնավ ո՛չ: Ընդհակառակը, մենք ջանում ենք, որ այդ մարմինները սիստեմատիկաբար և արդյունավետ կերպով զբաղվեն արտադրության կառավարման հարցերով, հնարավորություն ենք տալիս նրանց՝ իրականացնելու արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարման իրենց օրենսդրական պարտականությունները: Քաղկոմի օգնությունը կազմակերպչական բնույթի է: Մենք խորամուխ ենք լինում արտադրության մեջ՝ կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու, արտադրության զարգացման նոր հնարավորություններ ու ռեզերվներ հայտաբերելու, ետ մնալու պատճառները պարզելու, նորն ու առաջավորը ընդհանրացնելու և բոլոր օղակներում սոցիալիստական մրցության գործարարությունն ապահովելու համար:

Քաղկոմը կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների առջև խնդիր է դնում հետևողականորեն կիրառել մրցության կազմակերպման լենինյան սկզբունքները, այն ծավալել կուսակցության այսօրվա պահանջներին համապատասխան: Եվ, իրոք, քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները սոցիալիստական մրցությունը կազմակերպում ու ծավալում են այն հաշվով, որ այն ներառի համախառն արտադրանքի թողարկման ու իրացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոմենկլատուրայի ապահովման, արտադրանքի որակի, ինքնարժեքի իջեցման, օգուտների պլանի կատարման, տեխնիկական առաջընթացի արագացման, գիտության և արտադրության կապի ամրապնդման, արտադրական ֆոնդերի

*արդյունավետ օգտագործման, խնայողության ռեժիմի արմատավորման ու կիրառման խնդիրները։ Նրանք աշխատավորական մեծ ու փոքր կոլեկտիվների ուշադրությունը հրավիրում են այդ խնդիրների լուծման վրա։ Մրցության արդյունքների ամփոփման ժամանակ այդ ցուցանիշները հավասար դեր են խաղում հաղթողներին որոշելիս։ Թերացե՞լ է կոլեկտիվն այդ գլխավոր ցուցանիշներից որևէ մեկի կատարման մեջ, ուրեմն՝ զրկվում է մրցանակային տեղից։ Այլ խոսքով, ո՛չ միայն պլանների, այլև սոցպարտավորությունների կատարումը նույնպես պահանջում է համաչափություն ու համակողմանի մոտեցում, իսկ դրանք իրենց հերթին կարևոր երաշխիք են դառնում «Առանց ետ մնացողների» մրցության արդյունավետ կազմակերպման համար։*

*Եվ օրինաչափ է, որ, ռոստովցիների օրինակով լայնորեն ծավալելով «Առանց ետ մնացողների» մրցությունը, քաղաքի աշխատավորական կոլեկտիվները հասել են որոշակի հաջողությունների։ Նրանց անդուլ ջանքերի շնորհիվ մեր քաղաքը տասներորդ հնգամյակի անցած չորս տարիներին քանիցս հաղթող է ճանաչվել համամիութենական ու հանրապետական սոցմրցությունում։ Այսպես, 1976, 1977 և 1979 թվականների արդյունքներով քաղաքն արժանացել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, իսկ 1978 թվականի արդյունքներով՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։*

*Առանց ետ մնացողների աշխատելու բնորոշ ձևերից մեկն այն է, որ ձեռնարկությունների կուսկազմակերպությունները, քաղաքային կոմիտեն սիստեմատիկ վերլուծության ճանապարհով և արտադրության ընթացքի վերահսկմամբ ձեռնարկությունների արտադրական հզորությունների ճիշտ օգտագործմանը, արտադրության օպերատիվ պլանների հաստատմանը, վերակառուցվող օբյեկտների ֆինանսավորմանը վերաբերող և լուծման կարոտ հարցերը ավելի կոնկրետ են առաջադրում մինիստրություններին ու ճյուղային վարչություններին։*

*Որակի պրոբլեմը ներառում է կոլեկտիվի արտադրական գործունեության բոլոր կողմերը։ Դա գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային միջոցառումների ներդրումն ու դրանց հետագա կատարելագործումն է։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման և կառավարման ողջ մեխանիզմը, նյութական ու բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների ու կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը և այդ խնդրին պետք է մշտապես բևեռված լինի կուսկազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը (տե՛ս* ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 66)։*

*Որակի գիտական կառավարման, դրա համար կուսակցական մարմինների պատասխանատվության բարձրացման պահանջը համակողմանիորեն արտացոլվեց ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, համագումարի ընդունած որոշումներում։ Գործունեության ուղենիշ ընդունելով համագումարի պահանջները՝ քաղաքի կուսակցական կազմակերպության ուշադրությունը կենտրոնացվել է թողարկվող արտադրանքի որակի ըստ ամենայնի բարելավման հարցերին։ Այդ պրոբլեմը լուծվում է ձեռնարկություններում որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ներդրմամբ։ Առաջինն այդ ասպարեզում հաջողությունների հասավ մսի-պահածոների կոմբինատը։ Այժմ քաղաքի 22 ձեռնարկություններում հետևողական աշխատանք է տարվում որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ներդրման համար։ Դա էապես նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը։ Քաղաքում տարեցտարի աճում է որականիշով արտադրանքի քանակը։ Նրա տեսակարար կշիռն ընդհանուր արտադրանքի ծավալի մեջ այժմ կազմում է 22 տոկոս։ Որականիշով են թողարկվում լենինականյան մակնիշի 198 արտադրատեսակներ։*

*Արտադրանքի որակական ցուցանիշների բարելավման գործում մեծ դեր է խաղում տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը։ Քաղաքի 20 ձեռնարկություններում մշակվել և իրականացվում են տեխնիկական վերազինման և վերակառուցման պլաններ։ Այդ խնդիրների լուծմանը մեծապես օգնում*



*են կուսքաղկոմին առընթեր գործող ճյուղային խորհուրդները։ Քաղկոմում ստեղծվել է որակի կաբինետ, որտեղ ամեն օր հերթապահում են արտադրության առաջատար մասնագետները։ Նրանք կոնսուլտացիաներ են անցկացնում ձեռնարկությունների ներկայացուցիչների հետ, օգնում որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ներդրմանը, առաջավոր փորձի տարածմանը։*

*Ամրապնդվում է գիտության և արտադրության կապը։ Այդ հարցերով մշտապես զբաղվում է «գիտությունն՝ արտադրությանը» արտահաստիքային բաժինը, որն արդեն երեք տարուց ավելի է, ինչ գործում է քաղաքային կոմիտեին առընթեր։ Այդ բաժնում ընդգրկված են քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ, բարձրագույն ուսումնական հաստատությունների դասախոսներ, գիտնականներ։ Լինելով տեղերում, մասնագետները կոնկրետ օգնություն են ցույց տալիս ձեռնարկություններին՝ տեխնիկական առաջընթացի արագացման, «Աշխատել առանց ետ մնացողների» մրցության կազմակերպման գործում։*

*Քաղաքի կուսկազմակերպությունը մեծ տեղ է հատկացնում մրցության գաղափարական ապահովմանը։ Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համակարգում, դասախոսական պրոպագանդայի միջոցով ունկնդիրների ջանքերն ուղղվում են պետական պլանների կատարմանը, առանց ետ մնացողների շարժման լայն ծավալմանը։*

*«Աշխատել առանց ետ մնացողների» մրցության շրջանակները լայն են։ Այն ներառում է նաև ձեռնարկությունների ներքին օղակները։ Այդ նախաձեռնությունը լայնորեն տարածվել ու արմատավորվել է Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրական միավորման ֆաբրիկաներում, արտադրամասերում, հերթափոխություններում, բրիգադներում։ Որպես կանոն, յուրաքանչյուր ամիս, կուսկոմիտեի անմիջական ղեկավարությամբ ու հսկողությամբ վերլուծվում են մրցության արդյունքները, ուսումնասիրվում են պլանային առաջադրանքները չկատարելու պատճառները։ Վարպետ-դաստիարակները ստանձնում են առաջադրանքները թերակատարող բանվորների շեֆությունը, օգնում նրանց առաջավորներին հասնելու գործում։*

*Մշտական ուշադրություն է նվիրվում բանվորների մասնագիտական կատարելագործմանը։ Այդ նպատակով ամեն տարի գործում են բանվորական վարպետության դասընթացներ, որոնց մասնակցում է 1200 մարդ։ Մեծ արդյունք են տալիս առաջավոր փորձի միջֆաբրիկային դպրոցները և բանվորական վարպետության մրցույթները։ Միայն 1980 թ. առաջին կիսամյակում գործել է առաջավոր փորձի հինգ դպրոց, կազմակերպվել է երիտասարդ բանվորների 54 մրցույթ։*

*Եվ այսպես, կուսակցության քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները, գլխավորելով «Աշխատել առանց ետ մնացողների» սոցմրցությունը, օգտագործում են քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի բազմաթիվ ձևեր ու մեթոդներ՝ 1980 թվականի և ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի պետական առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները անվերապահորեն կատարելու համար։ Ամփոփել ենք անցած չորսուկես տարիների աշխատանքի արդյունքները։ Դրանք գոհացուցիչ են. իրացման պլանը կատարվել է 102 տոկոսով, պլանից ավելի իրացվել է 32 միլիոն 416 հազար ռուբլու արտադրանք։ Համախառն արտադրանքի թողարկման նույն ժամանակամիջոցի պլանը կատարվել է 102,5 տոկոսով, արտապլանային կարգով թողարկվել է 42,8 միլիոն ռուբլու արտադրանք։ Բավարար են նաև հնգամյակի եզրափակիչ տարվա առաջին կիսամյակի արդյունքները։*

*Սակայն երկու ձեռնարկություն՝ «Մագնիսահաղորդակ» և հեծանիվի գործարանները, չկարողացան ապահովել կիսամյա պլանի կատարումը, և քաղաքը փաստորեն ունեցավ ետ մնացող երկու ձեռնարկություն։ Իհարկե, մենք անդրադարձանք դրանց հարցին։ Վերջին ամիսների արդյունքները հույս են ներշնչում, որ երկու ձեռնարկություններն էլ կկատարեն տարեկան պլանները, և քաղաքը 1980 թվականը կփակի առանց ետ մնացող ձեռնարկության։ Այդ*

նպատակին հասնելու համար մեծ ջանքեր են գործադրում քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները, բոլոր կոմունիստները։

Մեր երկրի կոմունիստները, բոլոր աշխատավորները բուռն խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թվականի հունիսյան պլենումի որոշումը կուսակցության հերթական՝ XXVI համագումարը հրավիրելու մասին։ Մամուլում հրապարակվել է «ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու համար սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, ուր ասված է. «Զարգացնելով Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձին նախապատրաստվելու ընթացքում իրենց հանդես բերած աշխատանքային ակտիվությունը, արտադրության առաջավորները, բրիգադների, տեղամասերի, ֆերմաների, արտադրամասերի, ձեռնարկությունների, կազմակերպությունների և միավորումների կոլեկտիվները ստանձնում են ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ, մեծացնում իրենց ստեղծագործական ջանքերը։ Ընդլայնվում է «Հարվածային աշխատանքով եզրափակենք հնգամյակը։ Արժանավայել դիմավորենք ՍՄԿԿ XXVI համագումարը» նշանաբանով համաժողովրդական շարժումը»։

Բազմաթիվ կոլեկտիվներ, շարունակելով լենինյան հարվածային հերթափոխը, ներգրավվում են ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալած համաժողովրդական սոցմրցության մեջ և ստանձնում նոր, լրացուցիչ պարտավորություններ։ Կուսակցության առաջիկա համագումարն արժանավայել դիմավորելու նպատակով ծավալված պայքարը հուսալի նախադրյալներ կստեղծի տասներորդ հնգամյակի հաջող եզրափակման, տասնմեկերորդ հնգամյակում կայուն աշխատանքի երաշխիքների ապահովման համար։ Առաջավոր կոլեկտիվներն արդեն առաջին քայլերն են արել, առաջին հաջողությունները ձեռք բերել նախահամագումարյան սոցիալիստական մրցությունում։ Այս առումով հատկանշական է Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրամիավորման կոլեկտիվի գործունեությունը։ Աշխատանքային խիզախումների լավագույն ավանդույթներ ունեցող այս կոլեկտիվը ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստության ժամանակաշրջանը հայտարարել է հարվածային աշխատանքի հերթափոխ։ Ի պատիվ համագումարի՝ նա ստանձնել է լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ. մինչև XXVI համագումարի բացման օրը, նախկինում պարտավորվածից բացի, արտադրել և իրացնել 150 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք, պետական որականիշով թողարկվող արտադրանքի ծավալը հասցնել ատեստացիայի ենթարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի 55 տոկոսի, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2 տոկոսով, լրացուցիչ տնտեսել 50 տոննա բամբակ, 200 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 100 տոննա պայմանական վառելանյութ և համագումարի օրերին աշխատել խնայված հումքի հաշվին։

Կուսակցության քաղաքային կոմիտեն հավանություն տվեց ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին նախահամագումարյան սոցիալիստական մրցություն ծավալելու և լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ ստանձնելու վերաբերյալ տեքստիլագործների նախաձեռնությանը և հանձնարարեց քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին՝ պաշտպանել և տարածել այն։

Տեքստիլագործների հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք է գտել քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական, տրանսպորտային կազմակերպությունների կոլեկտիվներում։ Ամենուրեք նոր թափով է ծավալվում սոցիալիստական մրցությունը, մյուս կոլեկտիվները ևս համագումարի պատվին ստանձնում են նոր, լրացուցիչ պարտավորություններ։

ՍՄԿԿ XXVI համագումարի պատվին ծավալված մրցությունը, անտարակույս, կնպաստի աշխատանքում տեղ գտած թերությունների ու վրիպումների վերացմանը, ետ մնացողներին առաջավորներին հասցնելու գործին։

Նախահամագումարյան յուրաքանչյուր օրը դարձնել հարվածային, աշխատել առանց ետ մնացողների՝ այսպիսին է մեծ Լենինի անունը կրող քաղաքի աշխատավորական կոլեկտիվների նշանաբանը։

---

# ԱՄՐԱՊՆԴՈՒՄ ԵՆՔ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ա. Խ. ԲԱԴՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի երկրորդ քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ հսկայական ոգևորությամբ ու ջերմ հավանությամբ ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի 1980 թ. հունիսյան պլենումի որոշումը՝ կուսակցության XXVI հերթական համագումարը հրավիրելու մասին։ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը վստահություն հայտնեց, որ առաջիկա համագումարը ևս նոր հորիզոններ կբացի մեր կուսակցության ու երկրի առջև, կկանխորոշի պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստական շինարարության սկսվող փուլում։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը հստակորեն սահմանեց XXVI համագումարին նախապատրաստվելու ասպարեզում կուսկազմակերպությունների կատարելիք կազմակերպչական և գաղափարական-քաղաքական աշխատանքի ծավալուն ծրագիրը, նշեց այն խնդիրները, որոնք ծառացած են մեր ժողովրդի առջև տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու և XXVI համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար։ Այդ առումով հսկայական նշանակություն ունի ի պատիվ առաջիկա համագումարի համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

ՍՄԿԿ XXVI համագումարը հրավիրելու և նրա պատվին սոցիալիստական մրցություն ծավալելու առնչությամբ սովետական ժողովրդին համակած խանդավառությունը և քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը հատկանշական են նաև Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների կոլեկտիվներին։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո անցած տարիները համառ ջանքերի գործադրման, բեղմնավոր ու հերոսական աշխատանքի ժամանակաշրջան եղան նաև նրանց համար։ Համագումարի պատմական որոշումների կենսագործման համար քաղաքի կուսակցական կազմակերպության, ողջ աշխատավորության անձնվեր պայքարի գլխավոր արդյունքը արդյունաբերական արտադրանքի թողարկման տասներորդ հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարումն էր, որի մասին քաղաքը զեկուցեց մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի նախօրյակին։ Այդ նվաճումը բարձր գնահատականի արժանացավ Կիրովականի կուսակցական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հղած ջերմ ողջույնի մեջ։

Մեր քաղաքի էկոնոմիկան զարգանում է դինամիկ կերպով, զգալիորեն գերակատարվում են հնգամյակի պլանային առաջադրանքները։ Հնգամյակի անցած չորսուկես տարում արդյունաբերական արտադրանքի աճը կազմել է 56,8 տոկոս։ Աճի 96,8 տոկոսը ձեռք է բերվել գործող ձեռնարկությունների կարողությունների ընդլայնման, արտադրության ներքին ռեզերվների արդյունավետ օգտագործման, խնայողության ռեժիմի խստագույն կիրառման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի համակողմանի բարձրացման շնորհիվ։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը ընթացիկ տարում 1975 թ. համեմատությամբ կմեծանա 1,6, իսկ 1970 թ. համեմատությամբ՝ 2,3 անգամ։

Տասներորդ հնգամյակի տարիներին կատարելագործվել է քաղաքի արդյունաբերության ճյուղային կառուցվածքը, առավել արագ տեմպերով են զարգացել մեքենաշինությունը, թեթև ու էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Եվ դա ամբողջովին բխում է ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից. «Առանձնահատուկ պատասխանատվություն է ընկնում ժողովրդական տնտե-

սության բոլոր ոլորտները ժամանակակից մեքենաներով և սարքավորումներով ապահովելու կոչված ճյուղերի վրա, մեքենաշինության վրա։ ...Միաժամանակ պետք է բարելավվի, ավելի ճկուն և տեխնիկական նորամուծությունների նկատմամբ ընկալունակ դառնա նրա կառուցվածքը։ Դա պահանջում է առավել մեծ ուշադրություն հաստոցաշինության, սարքաշինության, էլեկտրատեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերության զարգացման նկատմամբ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 62—63)։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները տասներորդ հնգամյակի բոլոր տարիներին պատվով կատարեցին պետական առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Ձեռք բերած նվաճումների համար Կիրովականն առաջին երեք տարիներին արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, 1979 թվականին՝ ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի, իսկ տասներկու եռամսյակ՝ ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին։ Միութենական մինիստրությունների և ճյուղային արհմիությունների կենտկոմների փոխանցիկ դրոշներ են շահել կարի, կահույքի արտադրական միավորումների, ավտոգենային մեքենաշինության, «Ավտոմատիկա» սարքաշինական, ճշգրիտ հաստոցների, լուսատեխնիկական, բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների գործարանների, մորթու-մուշտակի, կոշիկի ֆաբրիկաների, գեղարվեստական և «Կիրներուդ» կոմբինատների, № 5 տպարանի կոլեկտիվները։

Քաղաքի աշխատավորական կոլեկտիվները ավելի կազմակերպված սկսեցին հնգամյակի եզրափակիչ տարին. Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի նախապատրաստությունը և այդ տարելիցի առթիվ ծավալված համաժողովրդական սոցմրցությունը աշխատանքային նոր լիցք հաղորդեցին յուրաքանչյուրին։ Դա արտահայտվեց ձեռք բերված բարձր արդյունքներում։ Արդյունաբերական արտադրանքի ծավալի անցած յոթ ամիսների պլանային առաջադրանքը կատարվել է 104,9 տոկոսով, պլանից դուրս թողարկվել է 11,6 միլիոն և իրացվել 11,5 միլիոն ռուբլու արտադրանք։ Աշխատանքի արտադրողականությունը նախատեսված պլանի համեմատությամբ բարձրացել է 3,8, արտադրանքի թողարկման անցած տարվա նույն ամիսների մակարդակը գերազանցվել ութ տոկոսով։

ՍՄԿԿ XXV համագումարը տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրներից մեկը համարեց հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը և արտադրանքի որակի համակողմանի բարելավումը։ «էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության աշխատանքի կողմնորոշումը դեպի արդյունավետության և որակի վճռական բարձրացումը հիմա ամենակարևորն է...» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 66)։ Արդյունավետության կարևորագույն ցուցանիշի՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները հնգամյակի բոլոր տարիներին գերակատարվել են։ Մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը 1975 թ. համեմատությամբ աճել է 16 տոկոսով, այդ թվում մեքենաշինության մեջ՝ 29,4 տոկոսով, թեթև արդյունաբերության մեջ՝ 34,2, սննդարդյունաբերության մեջ՝ 34, տեղական արդյունաբերության մեջ՝ 38,5 տոկոսով։

Աշխատանքի բարձր արտադրողականությունն ամենից առաջ արտադրանքի տեխնիկական բարձր մակարդակն է։ Այն պայմանավորված է արտադրական պրոցեսների կատարելագործման, հզորությունների ռացիոնալ օգտագործման, արտադրության ղեկավարման աստիճանով և սերտորեն առնչվում է արտադրանքի որակի համակողմանի բարելավման հետ։ Անցած չորսուկես տարում պետական որականիշով արտադրանքի պլանը կատարվել է 116,3 տոկոսով։ Այժմ 217 անուն արտադրատեսակ թողարկվում է պետական որականիշով, որի տեսակարար կշիռը քաղաքի արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմում է 38,7 տոկոս, 1975 թվականի 5,5 տոկոսի փոխարեն։

Քիմիական արդյունաբերության արտադրանքի 34,4, մեքենաշինական, սարքաշինական, էլեկտրատեխնիկական ձեռնարկությունների արտադրանքի



52, թեթև արդյունաբերության արտադրանքի 35,2 տոկոսը թողարկվում է հնգանիստ նշանով։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն 1978 թ. մայիսին որոշում ընդունեց արտադրանքի որակի կառավարման հանրապետական կոմպլեքսային համակարգ ստեղծելու վերաբերյալ։ Դա ծրագրային առաջադրանք էր նաև մեր կուսքաղկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար։ Ի կատարումն այդ որոշման՝ քաղկոմը մշակեց որակի կառավարման քաղաքային կոմպլեքսային համակարգ, որը ներդրվեց հաջողությամբ։ Այժմ որակի կառավարման կոմպլեքսային համակարգը գործում է քաղաքի 10 արտադրական ձեռնարկություններում։ Համակարգի ներդրումից ստացված տնտեսական օգուտը կազմում է շուրջ 1,5 միլիոն ռուբլի։ Այդ համակարգի միջոցով կոորդինացվում են աշխատանքի և արտադրանքի որակի բարձրացման նպատակով տարվող բոլոր աշխատանքները։ Ձեռնարկություններին մեթոդական օգնություն ցույց տալու համար քաղաքային կոմիտեում ստեղծել ենք որակի սենյակ, որտեղ ներկայացված են որակի կառավարման ասպարեզում Կիրովականի ձեռք բերած նվաճումներն արտացոլող նյութեր։

Արտադրանքի որակի բարձրացումը ստանձնած սոցիալիստական պարտավորությունների գլխավոր ցուցանիշներից է։ Մրցության արդյունքների ամփոփման ժամանակ որակի հարցերը հաշվի են առնվում ամենայն բծախնդրությամբ, խոտան արտադրանք թողարկած կոլեկտիվները դուրս են մնում մրցանակային տեղերի համար պայքարողների ցուցակից։ Արտադրանքի որակի բարելավմանը մեծ չափով խթանեց «Կիրովականյան մակնիշով արտադրանքը՝ միայն բարձր որակի» նախաձեռնությունը, որը ծնունդ առավ քաղաքի կուսկազմակերպության նախորդ՝ XVIII կոնֆերանսում։ Կոնֆերանսի արդյունքները կազմակերպությունների ժողովներում քննարկելիս շեշտը դրվեց այդ նախաձեռնության հետևողական արմատավորման վրա։ Եվ իրոք, այն լայն արձագանք գտավ կոլեկտիվներում, ունեցավ մեծաթիվ հետևորդներ ու լայնորեն արմատավորվեց անխտիր բոլոր արդյունաբերական ձեռնարկություններում։

Արտադրանքի բարձր որակի համար մրցության շրջանակները լայն են։ Դրանում ներգրավվել են քաղաքի մեքենաշինական, թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները։ Այդ մրցության արդյունքներն ամփոփվում են տարին երկու անգամ, հաղթող կոլեկտիվին տրվում է «Կիրովականյան մակնիշով՝ գերազանց որակի արտադրանք» փոխանցիկ կարմիր դրոշը։

Տասներորդ հնգամյակի անցած չորսուկես տարիներին Կիրովականում իրականացվել է կապիտալ շինարարության ընդարձակ ծրագիր։ Ֆինանսավորման տարբեր աղբյուրներով իրացվել են ավելի քան 126 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Գործարկվել են 130 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր։ Կառուցվել, վերակառուցվել և ընդլայնվել են 25 արտադրական ձեռնարկություններ, այդ թվում՝ քիմիական մանրաթելի գործարանի երկրորդ հերթը, քիմիական գործարանի բյուրեղների արտադրության առաջին Ա հերթը, ընդլայնվել են կորունդի արտադրությունը, «Ավտոմատիկա» ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոյի փորձնական գործարանը, ավտոգենային մեքենաշինության, ավտոնորոգման, լուսատեխնիկական, ճշգրիտ հաստոցների գործարանների մասնաշենքերը։

Հաջողությամբ է իրագործվում քաղաքի սոցիալ-կուլտուրական զարգացման ծրագիրը։ Տասներորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում շահագործման է հանձնվել 220 հազար քմ բնակելի տարածություն կամ պլանը կատարվել է 104,7 տոկոսով, իրագործվել են նաև նախադպրոցական, դպրոցական և առողջապահական օբյեկտների շինարարության հնգամյա ծրագրերը։ Վերջերս գործարկվեց Նովոսելցովո—Կիրովական խմելու ջրատարը։ Շարունակվում են բնակելի թաղամասերի և փողոցների բարեկարգման, կանաչ գոտիների ստեղծման աշխատանքները, արագ թափով ընթանում է պոմպակայանի շինարարությունը։ Ընթացիկ տարում շահագործման կհանձնվեն «Հայաստան» առողջարանի 13 հարկանի մասնաշենքը, արտասահմանյան մասնա-

գետների հյուրանոցը, պիոներների պալատը, ունիվերսամը, բնակելի նոր շենքեր:

Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թ. որոշմամբ կառուցման ու վերակառուցման լայն ծրագիր նախատեսվեց նաև Կիրովականի համար: Կուսքաղկոմը, քաղսովետի գործկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները գործնական աշխատանք ծավալեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված օբյեկտների շինարարության կազմակերպման նպատակով: Որոշմամբ նախատեսված կառույցներից գործարկվել են ավելի քան 20 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր: Շարունակվում են քիմիական գործարանի կորունդի և բյուրեղների արտադրությունների ընդարձակման աշխատանքները, բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների գործարանի, տրիկոտաժի, կարի արտադրական միավորումների, նյութատեխնիկական մատակարարման ունիվերսալ բազայի, մոնտաժային կազմակերպությունների միացյալ բազայի, ունիվերսամի և առևտրի պահեստային տնտեսությունների շինարարությունը:

Կուսակցության քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները միջոցներ են ձեռնարկում ձեռք բերած հաջողություններն ամրապնդելու, տասներորդ հնգամյակի տնտեսական և սոցիալ-կուլտուրական բոլոր խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Այդ գործում մեծ տեղ է հատկացվում սոցիալիստական մրցության կազմակերպմանը: Օգոստոսի 29-ին քաղկոմի բյուրոն քննարկեց «ՍՄԿԿ XXVI համագումարը արժանավայել դիմավորելու համար սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման ասպարեզում քաղաքի կուսկազմակերպությունների խնդիրները և միջոցառումներ մշակեց նախահամագումարյան սոցմրցությունը հաջողությամբ կազմակերպելու, դրա գործարարությունն ու արդյունավետությունն ապահովելու համար: Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները ևս անդրադարձան այդ որոշմանը և գործնական քայլերի դիմեցին դրանից բխող պահանջները հետևողականորեն կատարելու համար:

Եվ ամենուրեք ծավալվում է նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը, որի ընթացքում ամբողջ կոլեկտիվներ, արտադրության շատ առաջավորներ դրսևորում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիանալի օրինակներ: Ամենայն խրախուսանքի է արժանի կարի արտադրամիավորման կոլեկտիվի գործունեությունը: Նա տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարել է ժամկետից մեկ տարի հինգ ամիս շուտ: Կարող բանվորները ընթացիկ տարվա համար սահմանված 2,2 մլն ռուբլու արտապլանային արտադրանքի փոխարեն պլանից ավելի արդեն թողարկել են 7 միլիոն ռուբլու հագուստեղեն: Հաշվի առնելով իրենց ռեզերվներն ու հնարավորությունները՝ նրանք, ի պատիվ ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակի, հանդես եկան մի նոր նախաձեռնությամբ. մինչև տարեվերջ լրացուցիչ թողարկել ևս ինը միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք: Կարողների նախաձեռնությունը քննարկվեց ՀԿԿ քաղաքային կոմիտեի բյուրոյում և արժանացավ հավանության. այն լայն արձագանք գտավ նաև մյուս ձեռնարկություններում:

Վերջերս քաղկոմի բյուրոն քննարկեց և պաշտպանեց նաև տրիկոտաժի արտադրական միավորման գլխամասային ֆաբրիկայի կարող բանվորուհի, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր, ՀԿԿ Կենտկոմի անդամ Գոհար Ղազարյանի ղեկավարած կուսխմբի՝ «Հնգամյակին հաջող ավարտ, XXVI համագումարին արժանավայել դիմավորում» նախաձեռնությունը: Խմբի յուրաքանչյուր կոմունիստ պարտավորվել է ամեն մի հերթափոխում թողարկել լրացուցիչ արտադրանք, իսկ ամբողջ հերթափոխը մինչև XXVI համագումարի բացումը կտա 50 հազար ռուբլու արտապլանային արտադրանք:

Տրիկոտաժագործների կուսխմբի նախաձեռնությունը քննարկվել և հավանության է արժանացել քաղաքի բոլոր կուսակցական խմբերում: Նրա օրինա-



կով պարտավորություններ են ստանձնել 120 արտադրական կուսխմբեր, որոնցում ընդգրկված են ՍՄԿԿ ավելի քան հազար անդամներ ու թեկնածուներ: Նրանց թողարկած արտապլանային արտադրանքը մինչև կուսակցության XXVI համագումարը կկազմի երկու միլիոն ռուբլի:

Համագումարի առթիվ իրենց անելիքներն են ճշգրտել նաև տրանսպորտային հանգույցների կուսկազմակերպություններն ու կոլեկտիվները: Ավտոտրանսպորտային ձեռնարկության կոմունիստները պատրաստակամություն են հայտնել պլանից ավելի տեղափոխել 250 հազար ռուբլու ժողովրդատնտեսական բեռներ: Երկաթուղային հանգույցի կոմունիստները, հանդես գալով «Արտապլանային բեռների տեղափոխումը՝ արագ և որակով» նախաձեռնությամբ, որոշել են արտապլանային բեռների փոխադրումը հասցնել 350 հազար տոննայի:

Վերջերս Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները հանդես եկան «ՍՄԿԿ XXVI համագումարին՝ 26 հարվածային շաբաթ» նախաձեռնությամբ: Այն լայն արձագանք գտավ մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում: Հետևելով մոսկվացիների օրինակին՝ մորթու-մուշտակի ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել է 1980 թ. թողարկել մեկ միլիոն ռուբլու, «Ավտոմատիկա» սարքաշինական գործարանը՝ 350 հազար, կահույքի արտադրամիավորումը՝ 300 հազար, ավտոգենային մեքենաշինության գործարանը՝ 200 հազար ռուբլու արտապլանային արտադրանք: Ճշգրիտ հաստոցների գործարանի կոլեկտիվը, որը օգոստոսի 28-ին ավարտեց տասներորդ հնգամյակը, պարտավորվել է մինչև տարվա վերջը պլանից դուրս թողարկել 1250 հատ մետաղահատ հաստոց:

Քաղաքի կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները մշտապես հսկում են ծնունդ առած և հավանության արժանացած բոլոր նախաձեռնությունների արմատավորմանը, օգնում կոլեկտիվներին՝ կատարելու ստանձնած պարտավորությունները:

Ճիշտ է, քաղաքի արդյունաբերությունը և շինարարությունը զարգանում են կայուն, բարձր տեմպերով, այնուամենայնիվ, դեռևս շատ են թերությունները, թերացումներն ու վրիպումները, չօգտագործված ռեզերվներն ու հնարավորությունները: Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1980 թ.) պլենումում նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը «...անհրաժեշտ է քննադատաբար նայել այն վրիպումներին, թերություններին, որոնք, ցավոք, կան թե՛ տնտեսավարման պրակտիկայում, թե՛ նաև կուսակցական ապարատում»:

Հնգամյակի վերջնագծում առանձնակի սրությամբ է ծառանում ոչ միայն ընդհանրապես պլանների, այլև տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով յուրաքանչյուր ձեռնարկության առաջադրանքների կատարման հարցը: Երբ այս առումով ենք գնահատում մեր արածը, ապա այն բնավ էլ մեզ լիովին չի գոհացնում: Առանձին ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններ և տնտեսական ղեկավարներ, ինչպես հարկն է, չեն զբաղվում պետական պլանային կարգապահության ամրապնդման հարցերով, բավարար չափով չեն բարձրացնում բոլոր օղակների պատասխանատվությունը: Այդ ամենի հետևանքով շարունակվում է ցածր պլանների ընդունման, դրանց իջեցման նպատակով սիստեմատիկ «ճշգրտումների» պրակտիկան: Այսպես, քաղաքի 27 արտադրական ձեռնարկություններից 13-ում 1980 թ. պլանները 28,7 միլիոն ռուբլով ցածր են հնգամյակի բազային մակարդակից, այդ թվում քիմիական գործարանում՝ շուրջ 13 միլիոն ռուբլով, ջերմաէլեկտրակենտրոնում՝ 5 միլիոն, քիմիական մանրաթելի գործարանում՝ 4 միլիոն ռուբլով և այլն:

Ընթացիկ տարում լուրջ և բարդ պրոբլեմներ են ծառացել քիմիական, քիմիական մանրաթելի գործարանների, տրիկոտաժի արտադրական միավորման առջև: Նրանց արտադրանքի ծավալը կազմում է քաղաքի ընդհանուր արտադրանքի 42,8 տոկոսը, հետևապես, այդ ձեռնարկություններում պլանների ձախողումը անմիջականորեն վատացնում է քաղաքի արդյունաբերության ընդհանուր ցուցանիշները: Հումքի անբավարար մատակարարման հետևանքով ընթա-

ցիկ տարվա առաջին կիսամյակում նրանք երկրին պակաս են տվել 5 միլիոն ռուբլու արտադրանք։

Այսօր տնտեսական խնդիրների համակարգում կարևոր տեղ է հատկացվում արտադրատեսակների նոմենկլատուրայի պլանների կատարմանը։ Մեր քաղաքում թողարկվող 50 կարևորագույն արտադրատեսակներից 14-ի պլանները չեն կատարվում։ Թերակատարվում են հատկապես քիմիական պարարտանյութերի, մելամինի, քիմիական թելերի, մանվածքի, ոչ-ալկոհոլային խմիչքների թողարկման, երկաթ-բետոնյա կոնստրուկցիաների պատրաստման, ավտոշարժիչների հիմնական նորոգման առաջադրանքները։ Այս ամենից հետո զարմանալի չէ, որ քաղաքի ութ ձեռնարկություններ չեն կատարել արտադրանքի առաքման պայմանագրային բոլոր պարտավորությունները։

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ձեռնարկություններում արտադրության ռեսուրսների զգալի կորուստներ են լինում նաև աշխատաժամանակի ոչ ռացիոնալ օգտագործման, կադրերի հոսունության պատճառով։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում աշխատաժամանակի կորուստները կազմել են շուրջ 0,8 տոկոս։ Աշխատաժամանակի կորուստների պատճառների բացահայտման և դրանց կանխման նպատակով քաղաքային կոմիտեն շուրջ վեցամսյա ուսումնասիրություններ է կազմակերպել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Ստուգման արդյունքները քննարկվեցին գիտագործնական կոնֆերանսում, որի աշխատանքներին մասնակցելու համար մասնագետ գիտնականներ էին հրավիրվել Երևանից և Մոսկվայից։ Կոնֆերանսը մշակեց գիտական հիմնավորված հանձնարարականներ և քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններին խորհուրդ տվեց իրագործել դրանք։

Ճիշտ է, կապիտալ շինարարության բնագավառում զգալի հաջողություններ ունենք, սակայն այս տարի գործերը բարվոք չեն։ Առաջին յոթ ամսվա կապիտալ ներդրումների պլանը կատարվել էր ընդամենը 92,3, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 96 տոկոսով։ Շահագործման էր հանձնվել տարեկան պլանով նախատեսված հիմնական ֆոնդերի ընդամենը 15,8 տոկոսը։ Վիճակն անմխիթար է նաև բնակարանային շինարարության ասպարեզում։ Կիսամյակում, պլանով նախատեսված 11,2 հազար քմ-ի փոխարեն, շահագործման էր հանձնվել ընդամենը 5,5 հազար քմ օգտակար տարածություն, որը կազմում էր տարեկան պլանի սոսկ 12,3 տոկոսը։

Շինարարությունում գործերի նման վիճակը հիմնականում հետևանք է նյութատեխնիկական վատ մատակարարման և որակյալ շինարարների պակասի։ Դեռևս արմատախիլ չի արված հանրապետությունից դուրս աշխատանքի մեկնելու արատավոր պրակտիկան։ Այդ երևույթի դեմ կուսակցական կազմակերպությունների ծավալած պայքարն առայժմ ցանկալի արդյունք չի տալիս։

Հնգամյակի եզրափակիչ տարին հաջողությամբ ավարտելու համար լուրջ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած շինարարական-մոնտաժային և պատվիրատու կազմակերպությունների առջև։ Նրանք պարտավոր են ամեն ինչ անել ընթացիկ տարվա համար նախատեսված հիմնական ֆոնդերի գործարկումն ապահովելու համար։

Կուսակցության քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները լայն աշխատանք են ծավալում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերի, ընդունած որոշումների խոր ու համակողմանի պարզաբանման նպատակով, մշակում են գործնական միջոցառումներ տասներորդ հնգամյակի պլանները բոլոր ցուցանիշներով ու բոլոր ձեռնարկությունների կողմից կատարելու, ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար։ Քաղաքի առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծմանը մեծապես խթանում են տեղի ունեցող կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները, որոնք վերլուծում են կոլեկտիվների գործունեությունը, պարզում թերացումների պատճառները և որոշում առաջընթացի ուղիները։ Կուսկազմակերպությունները ամեն կերպ ջանում են վերացնել թերությունները, ամրապնդել ձեռք բերած հաջողությունները։

---

# ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ

**Ն. Ա. ԱՓԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ հաստատումից հետո պետական անվտանգության պահպանությունը Հայաստանի երիտասարդ սովետական պետության զարգացման համար ունեցավ առաջնակարգ նշանակություն։ Այն միջոցառումների մի ամբողջություն էր, որն ապահովում էր պետական սահմանների, պետության քաղաքական և տնտեսական հիմքերի անձեռնմխելիությունը, պաշտպանությունը ներքին ու արտաքին թշնամիներից, իմպերիալիստական երկրների հետախուզությունների և նրանց գործակալների ոտնձգություններից։ Այդ իսկ պատճառով պետական անվտանգության մարմինների գործունեությունը, որն առնչվում էր վերը նշված բարդ խնդիրների լուծմանը, մշտապես Հայաստանի կոմկուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում է եղել։

Պետական անվտանգության մարմինների նկատմամբ կոմկուսակցության քաղաքական ղեկավարությունը նրանց հաջող աշխատանքի հիմնական պայմանը և հեղափոխական օրինականության պահպանման հաստատուն երաշխիքը եղավ։ Հայաստանի կոմկուսակցության գործունեության նշանակալի դերն այս ոլորտում ցայտուն կերպով արտահայտվեց տակավին հանրապետության Չեկայի կազմակերպման ժամանակ, երբ Հեղկոմի առջև սրությամբ ծառացավ սոցիալիզմի գաղափարներին նվիրված, երիտասարդ սովետական պետության անվտանգության մարմիններում աշխատելու ունակ կոմունիստներ ընտրելու հարցը։ Հայաստանի որոշ ղեկավար կոմունիստներ ուսումնասիրել էին Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի (Չեկայի) փորձն այդ բնագավառում։ Զտելով անվտանգության մարմինները համալրել գաղափարապես կայուն աշխատողներով, Ֆ. Է. Ձերժինսկին մշտապես շեշտում էր, որ նրա աշխատանքը չի կարող լինել բեղմնավոր ու արդյունավետ՝ առանց կուսակցության հետ սերտ կապի, նրա ուղղություն տվող և կոորդինացնող գործունեության (տե՛ս Избранные произведения, т. 1, М., 1957, стр. 265—266)։

Երևանում շրջահայացորեն էին թեկնածուներ առանձնացվում Չեկայի նախագահի, հակահեղափոխական հանցագործությունների դեմ պայքարելու համար հատուկ բաժնի պետի և արտակարգ հանձնաժողովի կենտրոնական ապարատում այլ ղեկավար պաշտոնների համար։ Կուսակցությունը Չեկա ուղարկեց լավագույն կոմունիստների, սովետական իշխանության հաստատման համար ակտիվորեն պայքարած մարտիկների։ Այսպես, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երաշխավորությամբ Հեղկոմը Հայաստանի Չեկայի նախագահ նշանակեց հեղափոխական շարժման ակտիվ գործիչ, կայուն բոլշևիկ Շ. Մ. Ամիրխանյանին, իսկ հակահեղափոխական հանցագործությունների դեմ պայքարող հատուկ բաժնի պետ՝ Ս. Մելիք-Օսիպովին, որը նույնպես հեղափոխության մասնակից էր, կոմկուսակցության անդամ։ Չեկայի ստեղծման գործում ակտիվ դեր խաղացին հանրապետության կոմկուսակցության ականավոր գործիչներ Ս. Կասյանը, Ա. Մյասնիկյանը, Ա. Մռավյանը, Ի. Դովլաթյանը և ուրիշներ, որոնց կոչով 1921 թ. սկզբներին Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների Կենտկոմները

վարչական մարմիններում, այդ թվում նաև Չեկայում աշխատելու համար Հայաստան ուղարկեցին մի խումբ ստուգված կուսակցականների և մասնագետների[1]։

Հետագա տարիներին հանրապետության պետական անվտանգության մարմիններում կադրերի ընտրության և տեղաբաշխման ասպարեզում կուսակցական մարմինների դերն ավելի բարձրացավ։ Գլխավոր խնդիրներից մեկը կադրերի քաղաքական դաստիարակությունն էր։ Հաշվի առնելով կոմունիստների առաջատար դերի կարևորությունը պետական անվտանգության մարմինների աշխատանքում, կուսակցության գավառային կոմիտեներն իրենց հսկողության տակ վերցրին պետական անվտանգության մարմիններում աշխատելու համար թեկնածուների ընտրությունը[2]։ Գավառային կոմիտեների պարտականությունն էր՝ հսկել, որպեսզի պետական անվտանգության մարմնում մարդկանց աշխատանքի նշանակելու դեպքում ստուգվեին նրանց գաղափարական համոզվածությունը, բանիմացությունը, հեռանկարայնորեն մտածելու կարողությունը, սոցիալիզմի գործին նվիրվածությունը։

Չեկիստական մարմինների ամրապնդման գործում Հայաստանի կոմկուսակցության աշխատանքի կարևոր բաղկացուցիչ մասը եղել է նրանց կադրերի պրոֆեսիոնալ նախապատրաստությունը, որակավորման բարձրացման նպատակով պարապմունքների պարբերաբար վարումը։ Պետական անվտանգության մարմինների կողմից իրենց խնդիրների արդյունավետ լուծումը, հեղափոխական օրինականության պահպանությունը և հասարակական անվտանգության ամրապնդումը Չեկայի աշխատողներից պահանջում էին անընդհատ խորացնել իրենց քաղաքական գիտելիքները, բնակչության հետ ունեցած փոխհարաբերություններում տիրապետել համոզմունքի մեթոդին[3]։

Հայաստանի կոմկուսակցությունը մշտապես նշել է, որ բնակչության լայն շերտերը օրենքի նկատմամբ հարգանքով են լցվում ո՛չ միայն իրավական գիտելիքների պրոպագանդման միջոցով, այլև հանրապետության չեկիստական և մյուս վարչական մարմինների անբասիր պրակտիկ գործունեությամբ[4]։

Իրավունքի նորմերի պահպանման անհրաժեշտության նկատմամբ քաղաքացիներին խոր համոզվածությամբ կարելի է տոգորել միայն այն դեպքում, երբ նրանք ամենօրյա կյանքում տեսնեն պետության շահերը, աշխատավորների իրավունքները պաշտպանողների գործունեության օրինականությունը։ Այդ մարմիններին ուղղված կոմկուսակցության Կենտկոմի նամակներում ասվում էր, որ պետական անվտանգության մարմինների ամեն մի անօրինական որոշում, թեկուզ հետո այն վերացված լինի, անխուսափելիորեն բացասաբար է անդրադառնում քաղաքացիների իրավագիտակցության վրա, վնասում չեկիստական մարմինների հեղինակությանը[5]։

Կոմկուսակցությունը հատուկ նշանակություն էր տալիս նաև արտակարգ հանձնաժողովների աշխատանքի կուլտուրայի բարձրացմանը։ Ստանձնած ֆունկցիաները հաջողությամբ կատարելու համար չեկիստական մարմիններն իրենց գոյության հենց սկզբից պետք է ունենային բացառիկ բարձր հեղինակություն։ Նկատենք, որ Չեկայի աշխատողները հանրապետության ցանկացած քաղաքացուն դիմում էին օրենքի անունից և հանձնարարությամբ, սովետական իշխանության անունից, որոնց ներկայացուցիչներն էին նրանք։ Հայաստանի ԺԿՍ-ի 1921 թ. հունիսի 3-ի «Խուզարկություններ, առգրավումներ և ձերբակալություններ կատարելու մասին» դեկրետում նշվում էր, որ այն մարմինները, որոնք կոչված են կատարելու նշված գործողությունները, պետք է զգուշաբար վարվեն ձերբակալվող կամ խուզարկվող մարդկանց հետ, լինեն քաղաքավարի,

1 ՀՍՍՀ ԿՊԱՀՀ, ֆ. 116, ց. 1, պահպ. միավ. 7, թ. 110, 167։

2 ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկական մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ց. 1, պահպ. միավ. 7, թ. 11։

3 ՀՍՍՀ ԿՊԱՀՀ, ֆ. 116, ց. 1, պահպ. միավ. 48, թթ. 55—56, պահպ. միավ. 446, թ. 7։

4 ՀՍՍՀ ԿՊԱՀՀ, ֆ. 116, ց. 1, պահպ. միավ. 702, թ. 54։

5 ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ց. 1, պահպ. միավ. 3, թ. 82—83։



շրջահայաց և զգույշ, ինչպես նաև չչարաշահեն իրենց վերապահված լիազորությունները[6]։

Արխիվային նյութերը վկայում են, որ Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներից կուսակցական բջիջները հաջողությամբ էին լուծում Չեկայի աշխատողների քաղաքական ու կուլտուրական դաստիարակության խնդիրը։ Այդ բնագավառում նրանց ազդեցությունը հատկապես ուժեղացավ 1926 թ. Հայպետքաղվարչության կազմավորումից և դրա սիստեմում գլխավոր կուսբջիջ ստեղծելուց հետո, որին իրավունք տրվեց ղեկավարելու և վերահսկելու ստորադաս բջիջների գործունեությունը։

Հայպետքաղվարչության կուսակցական բջջի բյուրոյին առընթեր գոյություն ուներ կազմհանձնաժողով, որն իր նիստերում լուծում էր տեղական բջիջների ղեկավարությունն ուժեղացնելու, Պետքաղվարչության պատասխանատու պաշտոնների համար թեկնածություններ առաջադրելու հարցերը և չեկիստական մարմինների աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման հետ առնչվող այլ խնդիրներ[7]։

Պետական անվտանգության մարմինների աշխատողների շրջանում քաղաքական-լուսավորական աշխատանքի ուժեղացման և նրանց կուլտուրայի բարձրացման մեջ կարևոր դեր խաղացին հանրապետության վարչական մարմինների և զինվորական կազմակերպությունների կուսակցական կոլեկտիվներում պարբերաբար անցկացվող խորհրդակցությունները[8]։

Չեկիստական մարմինների գոյության առաջին իսկ օրերից Հայաստանի կոմկուսակցությունը մեծ նշանակություն էր տալիս Չեկայի աշխատողների քաղաքական զգոնության զարգացմանը դասակարգային թշնամու դեմ։ Կուսակցությունը չեկիստական մարմինների աշխատողներից մշտապես պահանջում էր լինել զգոն և պատրաստ՝ ցանկացած ժամանակ պաշտպանելու հեղափոխության նվաճումները, կանխելու Հայաստանի աշխատավորների շահերի նկատմամբ ամեն մի ոտնձգություն։ Հենց չեկիստական մարմինները պետք է առաջին հերթին խափանեին պրոլետարական հեղափոխության ոսոխների դիմադրությունը, կանխեին ամեն տեսակ հանցափորձեր երիտասարդ սովետական հանրապետության պետական կարգերի դեմ։ Դա նրանց անմիջական պարտականությունն էր, որը բխում էր Հեղկոմի 1920 թ. դեկտեմբերի 6-ի՝ Հայաստանում արտակարգ հանձաժողովի ստեղծման հիմնական նորմատիվ ակտից։ Այս էր պետական անվտանգության մարմինների տարբերիչ հատկանիշը, նրանց աշխատանքի յուրահատկությունը։

Հասկանալի է, Հայաստանի կոմկուսակցությունը հեղափոխական զգոնության բարձր զգացողություն էր ներարկում ո՛չ միայն չեկիստներին, այլև ինքն էր ըստ ամենայնի ցուցաբերում այդպիսի զգոնություն, հատկապես 1921 թ. դաշնակցական ավանտյուրայից հետո, որը Հայաստանի պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության համար դառը դաս դարձավ և ավելորդ անգամ ցույց տվեց, թե ինչի կարող է հանգեցնել հեղափոխության թշնամիների մեքենայությունների նկատմամբ զգոնության թուլացումը։

Ղեկավարվելով լենինյան ցուցումներով՝ Հայաստանի կոմկուսակցությունը չեկիստներին սովորեցնում էր՝ չհանգստանալ ձեռք բերածով, հիշել, որ Հայաստանի բանվորագյուղացիական սովետական պետության առջև դրված են սոցիալիստական հասարակարգի կառուցման կարևոր խնդիրները։ Կուսակցությունը Չեկայի աշխատողներին կոչ էր անում՝ չմոռանալ, որ այդ կազմակերպության բացառիկ դերը դեպի իրեն է ձգում նաև օտար տարրերի, որոնցից անհրաժեշտ է ժամանակին մաքրել Չեկայի շարքերը։ Միայն այդ դեպքում Չեկայի գործունեությունը կարժանանա աշխատավորության լիակատար աջակցությանը։

6 ՀՍՍՀ ԿՊԱՀՀ, ֆ. 116, ց. 1, պահպ. միավ. 577, թ. 16—17։

7 ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ց. 1, պահպ. միավ. 2, թ. 44։

8 ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ց. 1, պահպ. միավ. 2, թ. 44։

Չեկիստների քաղաքական դաստիարակության գործում կարևոր դեր են խաղացել բոլշևիկյան մամուլը, թերթերում զետեղված հետաքրքրական հոդվածների, աշխատավորության, ինչպես նաև հասարակական կյանքի տարբեր ոլորտներում պատասխանատու ֆունկցիաներ կատարող պետական տարբեր մարմիններին ուղղված բանվորագյուղացիական կառավարության կարևոր կոչերի քննարկումը: Չեկիստական ապարատի ղեկավար աշխատողներն այդ հոդվածների նյութերի հիման վրա պարբերաբար կազմակերպել են քաղաքական տեսակետից առավել պատրաստված կոմունիստների ելույթներն իրենց անձնակազմի առաջ:

Հետագա տարիներին չեկիստական ապարատի աշխատողների քաղաքական դաստիարկության ֆունկցիաները հաջողությամբ կատարում էր Հայպետքաղվարչության կուսբջջի բյուրոն[9]:

Արտակարգ հանձնաժողովները, երևան գալով որպես պատժիչ մարմիններ[10], հակահեղափոխության, սաբոտաժի, սպեկուլյացիայի և պաշտոնական հանցանքների դեմ պայքարելու համար, իրենց գոյության հենց սկզբից ունեին մի կարևոր առանձնահատկություն. դա նրանց «արտակարգությունն» էր: Այն արտահայտվում էր նախ և առաջ նրանով, որ Չեկան իրավական դրությամբ, կառուցվածքով և աշխատանքի մեթոդներով որոշ չափով դուրս էր գալիս այն դեմոկրատիայի սահմաններից, որը Հայաստանում հաստատվել էր մինչև 1926 թ., այսինքն՝ մինչև Հայաստանի Չեկան Պետքաղվարչության վերափոխելը: Հենց նշված բնույթը, որն իր արտացոլումն էր գտել այդ հատուկ մարմինների նույնիսկ անվանման մեջ, որոշ չափով տարբերում էր նրանց պրոլետարական պետության մյուս մարմիններից: Սակայն պետք է նշել, որ Չեկայի մարմինների գլխավոր բնութագրիչ հատկանիշը «...այնուամենայնիվ, նրանց «արտակարգությունը» չէր, այլ այն, որ նրանք ամենասերտ կերպով կապված էին սովետական իշխանության պետական-քաղաքական ամբողջ սիստեմի հետ, հանդիսանում էին սովետական պետական ապարատի բաղկացուցիչ մասը՝ նրա հետ կապված լինելով թե՛ կազմակերպչորեն, թե՛ գործունեությամբ» (Л. Н. Маймескулов, А. И. Рогожин, В. В. Сташис. Всеукраинская чрезвычайная комиссия (1918—1922). Харьков, 1971, стр. 70—71):

Արտակարգ հանձնաժողովների մյուս կարևոր հատկանիշն այն էր, որ դրանց ողջ գործունեությունը ղեկավարում և անդուլ հսկում էր Հայաստանի կոմկուսակցությունը: Եվ, վերջապես, այդ մարմինները մշտապես սերտ փոխգործողության մեջ էին պրոլետարական պետության այնպիսի մարմինների հետ, որպիսիք էին՝ բանակը, միլիցիան, արդարադատության օրգանները, ինչպես նաև հասարակական կազմակերպությունները, մասնավորապես՝ արհմիությունները և աշխատավորության լայն խավերը:

ՀԽՍՀ Չեկայի օրգանների արդյունավետ գործունեության առաջնահերթ պայմանը Հայաստանի կոմկուսակցության այն բոլոր կարգադրությունների ու դիրեկտիվների անշեղ կատարումն էր, որոնց օգնությամբ կուսակցությունը սովետական պետական ապարատի գործունեությանը տալիս էր անհրաժեշտ ուղղություն:

Հայաստանի կոմկուսակցության կողմից Չեկայի մարմինների ղեկավարումը դրսևորվեց աշխատանքի հիմնական ուղղությունների, ձևերի և մեթոդների հաստատման, ինչպես նաև նրանց կազմակերպության անընդհատ կատարելագործման և գործունեության արդյունավետության բարձրացման մեջ:

1926 թ. հետո նույն սկզբունքներով էին գործում նաև Հայաստանի Պետ-

[9] ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ց. 1, պահպ. միավ. 3, թ. 18:

[10] Բազմաթիվ արխիվային նյութեր և այլ պաշտոնական փաստաթղթեր ցույց են տալիս, որ այդ մարմիններն արտակարգ լիազորություններով օժտվել են ոչ միանգամից, այլ ավելի ուշ՝ պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության դասակարգային թշնամիների դիմադրության ուժեղացման կապակցությամբ: Այսպիսով, չեկիստական մարմիններին՝ օրենքով սահմանված մասշտաբներով դատական ռեպրեսիաների իրագործման իրավունք տալու հիմնական պատճառը Հայաստանում դասակարգային պայքարի ուժեղացումն էր:



քաղվարչության մարմինները: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնաժողովը 1929 թ. Հայպետքաղվարչության լենինյան բաժանմունքի գործունեության ստուգումից հետո գտավ, որ նրա աշխատանքում տեղ գտած հիմնական թերությունը կադրերի սխալ ընտրությունն ու տեղաբաշխումն էր: Մասնավորապես, պարզվեց, որ կոմբջջի անդամները նոր աշխատողներ ընդունելիս բավարար ուշադրություն չեն նվիրում նրանց անցյալին, աշխատանքային նախընթաց գործունեությանը և քաղաքական պատրաստականությանը[11]:

Երևան հանելով թերությունները և ցույց տալով դրանց արագ հաղթահարման ուղիները՝ Հայաստանի կոմկուսակցությունը դրանով իսկ օժանդակում էր չեկիստական մարմինների աշխատանքի կարգավորմանը, նրանց քաղաքական կողմնորոշմանը, գործունեության արդյունավետության բարձրացմանը:

Հայաստանի պետական անվտանգության մարմինների ղեկավարման, գործունեության կատարելագործման առաջնակարգ ու հրատապ հարցերը քննարկվել են կոմկուսակցության համագումարներում, Կենտկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում, որոնց որոշումները չեկիստական ապարատի աշխատանքի քաղաքական հիմքն էին կազմում:

Չեկիստական ապարատի՝ դրա կազմակերպման և գործունեության առաջին իսկ օրերից, կուսակցական ղեկավարման կարևորագույն ձևեր դարձան կուսակցական վերահսկողությունն ու կատարման ստուգումը: Դա արտահայտվում էր ամենից առաջ նրանում, որ Հայաստանի կոմկուսակցությունը սիստեմատիկաբար ստուգում էր չեկիստական մարմինների աշխատանքը, բացահայտում թերությունները, օգնում դրանց վերացմանը, իսկ լուրջ խախտումներ հայտնաբերելու դեպքում պահանջում էր պատժել մեղավորներին:

Կուսակցական կազմակերպությունները չեկիստական մարմիններին մեծ օգնություն ցույց տվեցին Հայաստանում տեղի ունեցած քաղաքացիական պատերազմի ժամանակ, երբ հակահեղափոխության դեմ մղվող պայքարը պահանջում էր մոբիլիզացնել ու միավորել քաղաքի և գյուղի հեղափոխական ողջ մասսաներին: Ներքին ռեակցիայի ակտիվ դիմադրության խնդիրը կուսբջիջներին ստիպեց կազմակերպվել ռազմականորեն, այսինքն՝ ամբողջապես գործել ռազմական ձևով: Այդպես երևան եկան առաջին ռազմականացված կուսակցական ջոկատները, որոնք հետագայում ստացան հատուկ նշանակության զորամասեր (ՀՕՆ)[12] անվանումը: Այդ հատուկ զորամասերի կազմավորումը ոչ մի դժվարություն չէր ներկայացնում, քանի որ Հայաստանի կոմունիստները լայնորեն օգտագործում էին ՌՍՖՍՀ-ում ՀՕՆ-ի կազմակերպման և գործունեության փորձը: Այդ ջոկատները կազմավորվում էին շարքային ծառայության զորամասերի տիպով և ռազմական տեսակետից դժվարին, վտանգավոր պահերին փոխադրվում էին զորանոցային դրության՝ կոնսպիրացիայի խիստ պահպանումով: Կարևոր է նշել, որ այն կոմունիստները, ովքեր ընդունվել էին կուսբջիջներին առընթեր հատուկ նշանակության զորամասերը, ռազմական գործը սովորում էին առանց արտադրությունից կտրվելու և աշխատաժամանակից դուրս:

Հակահեղափոխության դեմ առավել սուր գոտեմարտերի ժամանակամիջոցում ստեղծված ՀՕՆ-երը հետագայում դարձան Հայաստանի երիտասարդ սովետական հանրապետության զինված ուժերի անբաժանելի մասերը, հակահեղափոխության, բանդիտիզմի, լրտեսության, դիվերսիայի, սաբոտաժի և այլնի դեմ մղվող պայքարում չեկիստական մարմինների ակտիվ օգնականը[13]:

Պետական պատասխանատու առաջադրանքների կատարման գործում

[11] ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 500, ցուց. 1, պահպ. միավ. 2, թ. 87:

[12] Հատուկ նշանակության զորամասեր կազմակերպվել են 1922 թ. փետրվարի 28-ին Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշմամբ («Коммунист», Երևան, 1975 թ. սեպտեմբերի 16):

[13] ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի ԿԱ, ֆ. 1, ց. 3, պահպ. միավ. 57, թ. 11:

[14] ՀՍՍՀ ԿՊԱՀՀ, ֆ. 116, ց. 3, պահպ. միավ. 42, թ. 6:

չեկիստական մարմիններին ցույց տալով բազմակողմանի օգնություն և աջակցություն, Հայաստանի կոմկուսակցությունը դրա հետ միասին խստորեն էր վերաբերվում տարբեր կարգի օրինազանցություններին ու տարաձայնություններին, որոնք առաջանում էին, մի կողմից, հեղկոմների, իսկ ավելի ուշ՝ սովետների, և մյուս կողմից՝ չեկիստական մարմինների միջև, ինչպես նաև հանրապետության չեկիստական առանձին ստորաբաժանումների և միլիցիայի մարմինների միջև[14]: Օրինակ, կուսակցությունը շատ խիստ վերաբերվեց այն տարաձայնություններին, որոնք սովետական իշխանության առաջին տարիներին ծագեցին հանրապետության ճանապարհային արտակարգ հանձնաժողովի բաժանմունքի և երկաթգծի միլիցիայի միջև[15], նշված մարմինների վերադաս ատյաններից պահանջվեց՝ պարզություն մտցնել կոնֆլիկտի էության մեջ, երևան հանել մեղավորներին և պատժել խստորեն: Այդպիսի կոնֆլիկտների ծագման հիմնական պատճառը երկաթգծի պահպանության տարբեր հարցերում Չեկայի երկաթուղային բաժնի և երկաթգծի միլիցիայի իրավասության միջև ճշգրիտ սահմանազատման բացակայությունն էր, որը, ինչպես երևում է արխիվային նյութերից, երկու մարմիններին խանգարում էր՝ հաջող պայքար մղելու քրեական հանցագործությունների դեմ[16]:

Այս ամենը կրկին հաստատում է այն անհերքելի փաստը, որ չեկիստական ապարատի աշխատողները կոմկուսակցության առջև ոչ մի արտոնություն չունեին: Չնայած դրան, հայտնի է, որ պատմության բուրժուական կեղծարարները բազմիցս փորձեր են արել դա ապացուցելու: Հայաստանի Չեկան և Պետքաղվարչությունը, լինելով պրոլետարիատի դիկտատուրայի պատժիչ և հետախուզական մարմիններ, հաստատորեն և հետևողականորեն կատարել են կոմկուսակցության և կառավարության առաջադրանքները:

15 Նույն տեղը, ց. 1, պահպ. միավ. 27, թ. 186:

16 Նույն տեղը, ց. 1, պահպ. միավ. 516, թ. 188:



# ՊԱՏՃԱՌԻ ԵՎ ՊԱՅՄԱՆԻ ԿԱՏԵԳՈՐԻԱՆԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Վ. ԱՍԱՏՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՊԱՏՃԱՌԻ ԵՎ ՊԱՅՄԱՆԻ հարաբերակցության պրոբլեմը նոր դարաշրջանի փիլիսոփայության այն բանավիճային հարցերից է, որի շուրջ սուր վեճերը մինչև այժմ էլ չեն դադարում: Փիլիսոփայական բոլոր ուղղությունների ներկայացուցիչների չթուլացող հետաքրքրությունը տվյալ պրոբլեմի նկատմամբ պայմանավորված է նախ՝ մարդկային պրակտիկ գործունեության և տեսական մտքի համար պատճառականության առաջնակարգ նշանակությամբ, և երկրորդ՝ պատճառի գործողության մեջ պայմանների բացառիկ կարևորությամբ:

Պատճառների ստույգ ու լայն իմացության շնորհիվ մարդիկ կարողանում են առաջացնել ցանկալի երևույթներ, կանխել անցանկալին: Կապիտալիզմի օրոք աշխատավորների շահագործման պատճառների խոր ուսումնասիրությունը մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրներին հնարավորություն ընձեռեց հայտնագործելու նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցման ուղիները: Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակը, մեր երկրում սոցիալիստական հասարակության կառուցման փորձը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի պատմական նվաճումները ցայտուն կերպով հաստատում են հասարակության զարգացման ներքին պատճառների, ուստի և շարժիչ ուժերի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթների ճշմարտացիությունը: Շեշտելով մարդկային պրակտիկայի վճռական դերը պատճառականության կատեգորիայի հիմնավորման գործում, Ֆ. Էնգելսը նշել է. «Դրա շնորհիվ, մարդու գործունեության շնորհիվ էլ հենց հիմնավորվում է պատճառականության մասին պատկերացումը, այն բանի պատկերացումը, որ մի շարժումը մյուսի պատճառն է հանդիսանում» (Բնության դիալեկտիկա, «Հայաստան» հրատ., 1969, էջ 234):

Սակայն, որքան էլ մեծ լինի պատճառականության դերը մարդկային գործունեության ոլորտում, մարքսիստական դիալեկտիկան ուսուցանում է, որ այն բնավ էլ չի ընդգրկում համընդհանուր կապի բոլոր ձևերը: «Պատճառականությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ինչպես սովորաբար մենք այն ըմբռնում ենք, տիեզերական կապի փոքրիկ մասնիկն է միայն...» (Երկեր, հ. 38, էջ 192):

Երևույթների համընդհանուր կապի բազմազան ձևերի համակարգում կարևոր տեղ է գրավում պայմանական կապը, որն առանձնապես սերտ հարաբերության մեջ է պատճառականության հետ: Ամեն մի պատճառի գործողություն ծավալվում է որոշակի պայմանների առկայության դեպքում, պայմաններ, որոնք ինքնըստինքյան հետևանքը ծնել չեն կարող, բայց անհրաժեշտ են դրա առաջացման համար:

Պայմանները պատճառի գործողությանը տալիս են կոնկրետ ուղղություն և բովանդակություն: Մարքս-լենինյան տեսության (ինչպես նաև ցանկացած գիտական տեսության) ստեղծագործական կիրառման և զարգացման հիմնական ուղիներից մեկը առկա իրադրության պայմանների վերլուծությունն է և դրանք հաշվի առնելը: Կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծության լենինյան պա-

հանքն առաջին հերթին ուսումնասիրվող իրադրության յուրօրինակ պայմանների վերլուծություն է ենթադրում։ ՍՄԿԿ-ն և եղբայրական կոմունիստական կուսակցությունները մարքս-լենինյան ուսմունքն ստեղծագործաբար զարգացնում են կապիտալիզմից սոցիալիզմին անցման և կոմունիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունների կիրառման արդի դարաշրջանի պայմաններում։ «Այդ ընդհանուր օրինաչափությունների խոր ըմբռնումը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— դրանց վրա հենվելը, զուգակցելով ստեղծագործական մոտեցման հետ և հաշվի առնելով յուրաքանչյուր տվյալ երկրի կոնկրետ պայմանները, եղել են և մնում են մարքսիստ-լենինյանների անկապտելի յուրահատկությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 46)։

Պատճառականությունը փիլիսոփայական իմաստավորման է ենթարկվել նախքան պայմանականությունը։ Դրան օժանդակել են պատճառական կապի երեք կարևորագույն առանձնահատկություններ։ Առաջին, այն պայմանականությունից ավելի նեղ և կոնկրետ կապի ձև է։ Երկրորդ, ծագումնաբանական (գենետիկ) կապերի ամբողջության մեջ այն ամենազորեղն է, ուստի և մյուսներից ավելի ցայտուն է դրսևորվում։ Երրորդ, այն չափազանց սերտորեն է կապված մարդկային գործունեության հետ։ Բնավ պատահական չէ, որ բնական պատճառականության վերաբերյալ վաղ պատկերացումները ձևավորվել են մարդկային ստեղծարար գործունեության նմանության հիման վրա։

Եթե հաշվի չառնենք հին աշխարհի փիլիսոփաների ուսմունքները նախասկզբի ու նախատարրերքի մասին, որոնք, անշուշտ, պարունակում էին պատճառի գաղափարը որպես իրենց տարրերից մեկը, տվյալ գաղափարի հետ մենք առաջին անգամ հանդիպում ենք հին հունական ատոմիստների մոտ։ Դեմոկրիտի ժամանակներից սկսած պատճառի հասկացությունն ստանում է ինքնուրույն գոյության իրավունք և լայնորեն կիրառվում է հետագայի փիլիսոփաների (ինչպես մատերիալիստների, այնպես էլ իդեալիստների) աշխատություններում։ Պատճառի հասկացության մշակման գործում անգնահատելի ավանդ է ներդրել Արիստոտելը։ Ընդհանրապես պատճառականության և չորս տեսակի պատճառների մասին նրա ուսմունքը տվյալ բնագավառում դարձավ անտիկ փիլիսոփայական մտքի գագաթնակետը, որն անբաժան իշխեց Եվրոպայում ողջ միջնադարի ընթացքում։ Ինչ վերաբերում է պայմանական կապին, ապա այն փիլիսոփաների հետաքրքրություններից դուրս էր, պայմանականության որպես կապի հատուկ ձևի մասին նրանց ոչինչ հայտնի չէր։ Համաշխարհային փիլիսոփայության դասականների աշխատությունների տվյալ տեսանկյունից ուշադիր քննումը ցույց է տալիս, որ սկսած փիլիսոփայության ձևավորման ժամանակաշրջանից և մինչև XVIII դարի վերջը պայմանականությունը որպես փիլիսոփայական հասկացություն այնտեղ բացակայում է։ Հին հունական մատերիալիզմի հիմնադիրների՝ Միլետյան դպրոցի փիլիսոփաների և Հերակլիտի մոտ, որքանով պահպանված վկայությունները թույլ են տալիս դատելու, պայմանի հասկացությանն ընդհանրապես չենք հանդիպում։ Դեմոկրիտի ֆրագմենտներում և նրա հետևորդներ Էպիկուրի ու Լուկրեցիուսի աշխատություններում այդ հասկացությունը ծայրահեղորեն հազվադեպ է հոլովվում։ Մինչդեռ նրանք լայնորեն են գործածում պատճառի կատեգորիան։ Սկզբունքորեն նույնն է նկատվում Պլատոնի ու Արիստոտելի, ինչպես նաև ավելի քան երկու հազար տարի անց նոր դարաշրջանի մտածողներ Ֆ. Բեկոնի, Թ. Հոբսի, Ջ. Բերկլու, Դ. Հյումի, Պ. Հոլբախի և Դ. Դիդրոյի մոտ։ Նոր դարաշրջանի մատերիալիստների ու իդեալիստների միջև ամբողջ բանավեճը ծավալվել է պատճառականության պրոբլեմի շուրջը։ Իսկ «պայման» բառի հետ կապված հազվադեպ արտահայտությունները նրանց գործերում, ինչպես և հնադարյան փիլիսոփաների մոտ, հանդես են գալիս որպես առօրեական լեզվի արտահայտություններ։ Դրա հետևանքով փիլիսոփայության զարգացման տվյալ շրջանը կարելի է որակավորել որպես կաուզալության (պատճառականության) տիրապետության շրջան, որի գլխավոր առանձնահատկությունը պատճառականության՝ որպես փիլիսոփայական կատեգորիայի, մշակումն ու լայն կիրառումն է փիլիսոփայական ուսմունքներում։



Կաուզալության տիրապետության ցայտուն դրսևորումն է այն, որ պայմանականության այն ժամանակ հայտնի ձևերը, մասնավորապես նպատակային կապը, արիստոտելյան թելեոլոգիայից սկսած, մեկնաբանվում են որպես պատճառական կապի ձևեր։ Նպատակային կամ, ավելի լայն իմաստով, ինֆորմացիոն կապերը պատճառական կապի տարատեսակ համարող տեսակետը մինչև այժմ տարածված է որոշ մարքսիստ փիլիսոփաների շրջանում, որոնք պնդում են ինֆորմացիոն պատճառականության գոյության մասին (տե՛ս В. Краевский, Пять понятий причинной связи.— «Вопросы философии», 1966, № 7, стр. 111)։ Նրանք անտեսում են, որ ինֆորմացիոն կապերը պատճառականությանը չհանգող շատ ավելի բարդ կապեր են, որ «Դիալեկտիկամատերիալիստական դետերմինիզմի շրջանակներում նպատակահարմարությունը հանդես է գալիս... որպես փոխներգործության յուրահատուկ ձև» (И. Т. Фролов, Причинность и целесообразность в современной биологии.— «Современный детерминизм и наука», т. 2, Новосибирск, 1975, стр. 292)։

Կաուզալության քայքայման պրոցեսն սկսվեց XVII դարում, երբ առաջացավ դասական մեխանիկան։ Բնության մեխանիկական երևույթների հետազոտության մեջ մաթեմատիկական մեթոդների կիրառումը Գալիլեյի ու Նյուտոնի կողմից բնության իմացության պրոցեսում առաջացրեց իր խորությամբ ու մասշտաբներով մի չտեսնված հեղաշրջում. սկսվեց անցումն իմացության որակական փուլից քանակականին։ Պարզվեց, որ մեխանիկական ուժերի-պատճառների գործողության մասին հնարավորին չափ ստույգ տեղեկություններ ստանալու համար անհրաժեշտ է բավարար գիտելիքներ ունենալ դրանց գործողության քանակական օրենքների, դրանց ազդեցությունը կրող մեխանիկական համակարգերի և այն գործոնների մասին, որոնց առկայությամբ ծավալվում է այդ գործողությունը։ Սրա հիման վրա ձևավորվեցին մեխանիկական համակարգերի նախնական վիճակների, նախնական պայմանների և վիճակների կապի վերաբերյալ գիտական պատկերացումները։

Պատճառների, վիճակների կապի և նախնական պայմանների սահմանազատումը բացառիկ նշանակություն ունեցավ ֆիզիկայի, ինչպես նաև ողջ բնագիտության հետագա զարգացման համար։ Այն հնարավորություն ընձեռեց անհամեմատ ավելի լայնորեն ընդգրկելու հետազոտվող օբյեկտները դետերմինավորող գործոնները, տարբերակված մոտեցում ունենալ դրանց նկատմամբ, որի շնորհիվ և ավելի խոր ու ստույգ բացահայտել օբյեկտների դետերմինավորման պրոցեսը, այդ թվում նաև պատճառների գործողությունը։ Սակայն կաուզալության դիրքերը դեռևս չափազանց ամուր էին։ Նախնական վիճակի ու նախնական պայմանների հասկացությունները համարվում էին պատճառականության կատեգորիայից ածանցյալ և օժանդակ հասկացություններ։ Դեռ ավելին՝ որոշ մտածողներ, ինչպես օրինակ, Լապլասը, նույնիսկ նույնացնում էին համակարգերի վիճակների կապը պատճառական կապի հետ։ «Մենք պետք է դիտարկենք,— գրում էր նա,— Տիեզերքի ներկա վիճակը, որպես նախորդ վիճակի հետևանք և հաջորդի պատճառ» (Лаплас, Опыт философии теории вероятностей. М., 1908, стр. 9)։ Իսկ վերջավոր համակարգերի վրա ազդող և դրանց մեջ փոփոխություններ առաջացնող արտաքին ուժերը նա պայմաններ էր համարում։ Լապլասը դրանով պայմանները, ըստ էության, հանգեցնում էր երկրորդական պատճառներին։

Պայմանի հասկացությունը XVIII դարի երկրորդ կեսին բնագիտությունից սկսում է թափանցել փիլիսոփայության մեջ։ Այդ հասկացությունը փիլիսոփայական կատեգորիայի վերածելու գործում մեծ է գերմանական դասական փիլիսոփայության հիմնադիր Կանտի ծառայությունը։ Սկզբում հանդես գալով որպես բնագետ-տեսաբան, Կանտը նկատեց այդ հասկացության կարևորությունը նաև փիլիսոփայական հետազոտության համար։ Հետագայում, իր «քննադատական» շրջանում նա արդեն լայնորեն օգտագործում է պայմանի հասկացությունն իր փիլիսոփայական դատողություններում։ Տվյալ հասկացության նկատմամբ կանտյան մոտեցումը բնորոշվում է

հետևյալ առանձնահատկությամբ։ Կանտը այն չի զետեղում կատեգորիաների իր աղյուսակում, չի քննարկում ինչպես, օրինակ, պատճառականության կատեգորիան, սակայն նրա ուսմունքում այն ունի հիմնարար նշանակություն։ Պարզապես նա վերցնում է պայմանի հասկացությունը որպես նախօրոք տրված և այն համարում իր ուսմունքի հիմնարար հասկացություններից մեկը։

Պայմանի հասկացությունը, որպես մի որևէ բանի հնարավորությունն ապահովող գործոնների տեսական արտացոլում, ըստ Կանտի, օբյեկտիվորեն կարևոր կատեգորիաներից է, որը սուբյեկտիվորեն նա չի գիտակցում։ Բայց և այնպես այդ ժամանակից սկսած փիլիսոփայության մեջ վերջ է տրվում մտածողության կաուզալական եղանակի անբաժան տիրապետությանը։ Դրա հետ մեկտեղ տարածվում է պայմանական կամ կոնդիցիոնալ մտածողությունը։

Պայմանի հասկացության մշակման և այն փիլիսոփայական կատեգորիայի վերածման գործում վճռական քայլը կատարել է Հեգելը։ Արիստոտելի ու Կանտի համեմատ անչափ ընդարձակելով փիլիսոփայական կատեգորիաների սահմանները և ներկայացնելով իր ուսմունքը որպես տրամաբանական կատեգորիաների համապարփակ համակարգ, Հեգելն այդ համակարգում զետեղեց նաև պայմանի կատեգորիան։ Հեգելյան ուսմունքում, ինչպես այն շարադրված է Տրամաբանության գիտություն աշխատության մեջ, պայմանի կատեգորիան տեղադրված է էությանը նվիրված բաժնում։ Ըստ դրա, բացարձակ իդեան, անցում կատարելով կեցությունից դեպի էություն, հաստատում է իրեն որպես հիմունք, որը կազմավորվում է պայմաններից։ Սակայն ոչ բոլոր պայմաններն են մտնում հիմունքի մեջ։ Դրանց որոշ մասը՝ հենց պատահական պայմաններն առնչություն ունեն էության երևույթների հետ, իսկ մյուսները դրանց հիմքն են։ Հարաբերության, ամբողջի և մասի, սուբստանցիայի և ակցիդենցիայի, պատճառի և գործողության, ինչպես նաև փոխազդեցության կատեգորիաները Հեգելը շարադրում է պայմանի կատեգորիայից հետո։ Նա խմբավորում է դրանք այդ կարգով, չնայած չէր կարող չգիտենալ, որ փիլիսոփայական մտքի զարգացման մեջ նշված կատեգորիաները նախորդել են պայմանի կատեգորիային։ Առանց վարանման Հեգելը խախտում է դրանց պատմական հաջորդականությունը, ղեկավարվելով վերացականից կոնկրետին վերընթացի մեթոդի պահանջներով։

Կատեգորիաների համակարգի տրամաբանական ծավալման ընթացքում նա նկատեց, որ պայմանականության, ուստի և պայմանի կատեգորիաները վերոհիշյալ կատեգորիաներից ավելի վերացական են ու բովանդակությամբ աղքատ։ Բոլոր ավելի զարգացած ու կոնկրետ կատեգորիաների պես վերջիններս պարունակում են իրենց մեջ պայմանականությունը, սակայն վերացված ձևով։ Հետագայում, կատեգորիաների համակարգը կատարելագործելով, Հեգելն իր Փոքր տրամաբանությունում կատեգորիաների տվյալ խմբի ստորադասության մեջ մի էական ուղղում է մտցնում՝ հարաբերության կատեգորիան տեղադրում է պայմանից առաջ, որի շնորհիվ դրանց կարգն է՛լ ավելի կուռ է դառնում։ Այժմ անցումը կատարվում է, ընդհանրապես, հարաբերության կատեգորիայից մի շարք կատեգորիաների միջոցով պայմանավորված հարաբերությանը, հետևաբար՝ պայմանին, իսկ սրանից էլ՝ սուբստանցիային ու ակցիդենցիային, պատճառին ու գործողությանը և այլն։

Հեգելյան տրամաբանությունն իր այդ մասով ևս ուժգնորեն ներգործել է մարքսիզմի հիմնադիրների վրա։ Բավական է դիմել մարքսիստական դասական գրականության ամենախոշոր աշխատությանը՝ Կ. Մարքսի Կապիտալին, որպեսզի համոզվենք, որ դրա կատեգորիալ կառուցվածքում պայմանը նույնքան կարևոր է, որքան կարևոր են էությունը, սուբստանցիան, պատճառը և այլն։

Հեգելից հետո և XIX դարի ամբողջ ընթացքում բուրժուական գիտությունն ու փիլիսոփայությունը զարգանում էին կոնդիցիոնալ մտածողության ճնշման ներքո, որն անշեղորեն դուրս էր մղում կաուզալությունը, ավելի ու ավելի սահմանափակելով դրա կիրառման ոլորտը։ Դա օբյեկտիվ ու առաջադիմական պրոցես էր, որովհետև ուղղում էր գիտական հետազոտությունները դեպի պայմանների լայն ընդգրկում և հնարավորություն ընձեռում ստանալու ուսումնասիրվող օբյեկտների դետերմինացիայի, այդ թվում՝ պատճառական դետերմինացիայի ավելի բովանդակալից ու ստույգ պատկերը։



Սակայն բուրժուական իդեալիստական փիլիսոփայությունը, առաջին հերթին պոզիտիվիզմը, փորձում էր աղավաղել տվյալ պրոցեսի էությունը և այն ներկայացնել որպես մի պրոցես, որն ընդհանրապես ուղղված է պատճառականության դեմ։

Մասնավորապես Կոնտն անճանաչելի հայտարարեց երևույթների պատճառները և գիտության նպատակը հանգեցրեց բնության օրենքների իմացությանը, օրենքներ, որոնք նա հյումյան ոգով մեկնաբանում էր որպես զգայությունների կանոնավոր հաջորդականություն, այսինքն՝ որպես պայմանական կապ։ Ջ. Ստ. Միլը պատճառականությունը հանգեցրեց հավասարապես անհրաժեշտ պայմանների միագումարին։ Չնայած դրանով նա պատճառի կատեգորիան չվերացրեց, բայց այն ստացավ նոմինալ նշանակություն և կարող էր հեշտորեն վերացվել։ Այսպիսով, Միլը փաստորեն դրեց կոնդիցիոնալիզմի հիմնաքարը, որն ընդունում է միայն պայմանականությունը և մերժում պատճառականությունը։

Մախիստական փիլիսոփայության մեջ կոնդիցիոնալիզմը արդեն լիովին դուրս է մղում կաուզալությունը։ Ըստ Է. Մախի, բնության մեջ չկա ո՛չ պատճառ, ոչ էլ հետևանք, տարրերի փոխադարձ կախվածությունը միմյանցից շատ ավելի լրիվ ու ստույգ է արտահայտվում ֆունկցիայի հասկացությամբ։

XX դարի սկզբին, շնորհիվ Մ. Ֆերվորնի, կոնդիցիոնալիզմը ստացավ դասական, արմատական ձև։ Նա վճռականորեն հրաժարվեց պատճառականության սկզբունքից, պնդելով, թե, իբր, պայմանների միատեսակ անհրաժեշտությունը և համարժեքությունը պատճառի գաղափարը դարձնում են ավելորդ ու վնասակար։ Հետևաբար, միակողմանի, մետաֆիզիկական կաուզալիզմին Ֆերվորնը հակադրեց նույնքան միակողմանի, մետաֆիզիկական կոնդիցիոնալիզմը։

Մինչդեռ, ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը, պատճառականության հարցը սկզբունքային նշանակություն ունի ցանկացած նորագույն «իզմի» փիլիսոփայական ուղղությունը պարզելու համար (տե՛ս ԵԼԺ, հ. 18, էջ 192)։ Մատերիալիստական փիլիսոփայությունը միշտ էլ ելնում է օբյեկտիվ պատճառականության սկզբունքից։ Դրա հետևանքով պատճառականության նկատմամբ բացասական վերաբերմունքի բոլոր ձևերը բացահայտորեն կամ թաքնված տեսքով իդեալիստական միտում են պարունակում, որը հաստատվում է ինչպես կոնդիցիոնալիստների ընդհանուր փիլիսոփայական հայացքներով, այնպես էլ կոնդիցիոնալիզմից արված իմացաբանական եզրակացություններով։

Բոլոր պայմանների համարժեքության կոնդիցիոնալիստական դրույթը նշանակում է երևույթների պայմանների ամբողջության մեջ պատճառների առանձնացումից հրաժարում, հետևաբար, գիտության բացատրական ֆունկցիայի մերժում, որը հանգեցնում է գիտության նկարագրական ֆունկցիայի բացարձականացմանը և վերջին հաշվով՝ ֆենոմենալիզմին։ Ֆերվորնը գրում էր, որ կոնդիցիոնալիստական մեթոդը լոկ շարադրում է փաստերը՝ դրանք բացատրելու փորձեր չանելով։

Պոզիտիվիստական փիլիսոփայությունն օգտվում էր կոնդիցիոնալիզմից ո՛չ միայն ֆենոմենալիզմը, այլև ինդետերմինիզմը հիմնավորելու համար։ Այդ նպատակով պայմանների համարժեքության վերաբերյալ կոնդիցիոնալիզմի գլխավոր սկզբունքին ավելացվում են պայմանների անվերջության և դրա հետևանքով իրադարձությունների լրիվ կրկնելիության բացակայության դրույթները։ Անհրաժեշտությունն էլ մետաֆիզիկորեն կապվում է իրադարձությունների նման կրկնելիության հետ, և վերջինիս անհնարինությունից հետևցվում է նաև անհրաժեշտության անհնարինությունը։ Դրա հիման վրա հռչակվում է ինդետերմինիզմը, որի համաձայն աշխարհում չկա ո՛չ պատճառականություն, ոչ էլ անհրաժեշտություն, աշխարհում իշխում է զուտ պատահականությունը։

Արդի կոնդիցիոնալիզմը պատճառականության դեմ հանդես չի գալիս այդպիսի արմատական ձևով։ Այժմ գերակշռում են դրա թաքնված ու չափավոր

տարբերակները, որոնք, սակայն, խոր արմատներ են գցել ժամանակակից բուրժուական փիլիսոփայության, մանավանդ գիտության մեթոդաբանության մեջ: Օրինակ, թաքնված կոնդիցիոնալիզմի ակնառու ներկայացուցիչներից մեկը Հ. Ռայխենբախն է, որը ձգտում է ապացուցել պատճառականության հասկացության անկիրառելիությունը միկրոաշխարհի պրոցեսների նկատմամբ և ինդետերմինիզմի իրավացիությունը: Թվում է, թե պատճառականության գոնե մասնակի, այսինքն՝ մակրոաշխարհի շրջանակներում, ընդունումը պետք է որ նշանակի տվյալ սահմաններում նրա կողմից կոնդիցիոնալիզմի մերժում: Սակայն, անդրադառնալով մակրոպատճառականության ռայխենբախյան ըմբռնմանը, անմիջապես նկատում ենք, որ դրա ներքո թաքնված է ոչ այլ ինչ, քան պայմանականությունը: Պատճառականությունը, գրում է նա, կարելի է ձևակերպել որպես բացառություն չճանաչող ընդհանրության օրենք, որպես «միշտ եթե-ապա» հարաբերություն:

Այստեղ նա պատճառականությունը մեկնաբանում է հյումյան ոգով, որպես իրադարձությունների կանոնավոր կրկնության արտահայտություն, և անհնարին է դարձնում մտածել պատճառի ու գործողության կապի գենետիկ բնույթի մասին, այն մասին, որ պատճառը ծնում է գործողություն:

Պոզիտիվիզմի մյուս խոշոր դեմքերից մեկը՝ Ռ. Կառնապը նույնպես հարում է Հյումի տեսակետին: Բայց Ռայխենբախից առաջ անցնելով, նա առաջարկում է պատճառականության հասկացությունն ընդհանրապես փոխարինել գիտական օրենքի հասկացությամբ, որպեսզի գիտությունից վերջնականապես արտաքսվի «պատճառման» գաղափարը, որը ենթադրում է, ըստ նրա, ինչ-որ գործողություններ առաջացնող, մարդուց անկախ գոյություն ունեցող մետաֆիզիկական գործոնների առկայություն:

Չափավոր կոնդիցիոնալիզմը, ի տարբերություն արմատական կոնդիցիոնալիզմի, լիովին չի ժխտում պատճառականությունը, սակայն փորձում է ենթարկել այն իրեն: Տվյալ տեսակետի կողմնակիցները պնդում են. չնայած բոլոր պայմանները համարժեք են, գիտնականը իրավասու է ըստ իր հայեցողության նրանց միջից որպես պատճառներ առանձնացնելու մեկը կամ մի քանիսը:

Չափավոր կոնդիցիոնալիստների պաթոսը լիովին ուղղված է պատճառական կապի օբյեկտիվ բովանդակության մատերիալիստական ըմբռնման դեմ: Նրանք լայն ասպարեզ են բացում ռելյատիվիզմի և դրա միջոցով սուբյեկտիվիզմի համար, որը հանգեցնում է փաստերի կամայական մեկնաբանման և աղավաղման:

Հաղթահարելով կաուզալությունը, դառնալով բուրժուական փիլիսոփայության առաջատար կոնցեպցիաներից մեկը, կոնդիցիոնալիզմն իր տարբեր ձևերով վճռական ազդեցություն ունի բուրժուական գաղափարախոսների լուծելիք ընդհանուր աշխարհայացքային, գիտական ու սոցիալ-քաղաքական կարևորագույն հարցերի վրա: Դրա հետևանքով պատճառականության ու պայմանականության պրոբլեմի դիալեկտիկամատերիալիստական մշակումը ենթադրում է բուրժուական փիլիսոփայության մեջ նրա լուծումների քննական վերլուծություն և հաղթահարում:

Մարքսիստական փիլիսոփայական ու տրամաբանական գրականության մեջ պատճառականության և պայմանականության փոխհարաբերության վերաբերյալ գոյություն ունեն երեք հիմնական տեսակետներ:

Ըստ առաջին տեսակետի, պայմանի ու պատճառի միջև գոյություն ունի մասի ու ամբողջի հարաբերություն: Պատճառը կամ, ավելի ստույգ, լրիվ պատճառը, որն անհրաժեշտ է ու բավարար գործողության առաջացման համար, կազմավորվում է պայմանների ամբողջությունից: Գործողության առաջացման համար յուրաքանչյուր պայման անհրաժեշտ է, բայց բավարար չէ, իսկ լրիվ պատճառը, դրանց հանրագումարը հանդիսանալով, և՛ անհրաժեշտ է, և՛ բավարար:

Նման սահմանումը զերծ չէ էական թերություններից: Նախ, այն հաշվի չի առնում տարբերությունը հարաբերականորեն ակտիվ ու պասիվ գործոնների միջև (տե՛ս Г. А. Свечников, Причинность и связь состояний в физике. М., 1971, стр. 83): Երկրորդ, պայմանները փաստորեն հանգեցվում են մասնակի պատճառներին, որոնց միագումարը մեզ տալիս է լրիվ պատճառը: Երրորդ, պատճառի, որպես պայմանների լրիվ միագումարի, մեկնաբանությունն ստեղծում է անվերջ ռեգրեսի վտանգ, որովհետև ցանկացած երևույթի պայմանների քանակը, ըստ էության, անվերջ է:



Նշված թերություններից զերծ է երկրորդ տեսակետը, որի կողմնակիցները չնայած պատճառն ու պայմանը համարում են մոտիկ, բայց և այնպես տարբեր կատեգորիաներ: Ըստ նրանց, գործողության առաջացման համար անհրաժեշտ են ինչպես պատճառներ, այնպես էլ պայմաններ, որոնք չեն կարող անմիջականորեն ծնել գործողությունը, սակայն ուղեկցելով պատճառներին ու ազդելով դրանց վրա, ապահովում են գործողության ծագման համար վերջիններիս անհրաժեշտ զարգացումը:

Այս տեսակետից պայմաններն այնպիսի պատճառներ են, որոնք ձևափոխում են կամ ծնող պատճառը, կամ էլ դրա գործողությունը, հանդես գալով որպես երկրորդական պատճառներ:

Սակայն նման դեպքում պատճառի կատեգորիան անարդարացիորեն ընդարձակվում է, փաստորեն իր մեջ ընդգրկելով նաև պայմանի կատեգորիան: Պայմանի կատեգորիան, ստանալով միակողմանի, նեղ մեկնաբանություն, բացառում է «պատճառման» սխեմայում չտեղավորվող պայմանական կապի բազմաթիվ ձևեր: Պատճառականության բազմակողմանի վերլուծության ընդհանուր ֆոնի վրա պայմանի նեղ մեկնաբանությունն անտեսում է պայմանականության հիմնական առանձնահատկություններն ու իմացաբանական ֆունկցիաները:

Երրորդ հիմնական տեսակետը, ի հակադրություն առաջինի, ելնում է այն դրույթից, որ պատճառն է բավարար պայմանի մասը կամ տարրը: Տվյալ տեսակետի կողմնակիցները գտնում են, որ պայմանի տակ պետք է հասկանալ շրջապատի երևույթների հետ օբյեկտի ունեցած կապերի ողջ միագումարը, որը գոյություն ունի օբյեկտի առաջացման պահին և ազդում է դրա վրա մի որևէ հարաբերությամբ: Պայմանական կապերի ամբողջության մեջ պատճառական կապերն առանձնանում են որպես ամենախոր, գործողության առաջացման համար որոշիչ նշանակություն ունեցող կապեր:

Ընդհանուր գնահատական տալով այս տեսակետին, հարկ է նշել, որ այստեղ ճշմարիտ է ելակետային դրույթն այն մասին, որ պատճառը պայմանի ձևերից է, բայց ոչ դրույթի կոնկրետ իրագործումը: Գիտնականների մի մասը պատճառները հանգեցնում է արտաքին պայմաններին և ժխտում ներքին պատճառականությունը: Ոմանք էլ պայմանները հանգեցնում են արտաքին միջավայրի գործոններին, իսկ մեկ այլ խումբ ընդունում է արտաքին ու ներքին պայմանականության գոյությունը, սակայն մի կողմ թողնելով համակարգերի վիճակների, ֆունկցիոնալ, նպատակային և այլ կապեր: Մինչդեռ երևույթների վիճակների կապը հնարավոր չէ այլ կերպ ներկայացնել, քան պայմանականության ձևով: Ֆունկցիոնալ կապերը, ինչպես վաղուց է նկատվել, պայմանականության մաթեմատիկական արտահայտությունն են: Նույն բանը կարելի է պնդել նպատակային ու լայն իմաստով ինֆորմացիոն կապերի մասին: Նպատակի կապը իրականության ու մարդկանց պահանջմունքների հետ, դրա իրագործման կախումը միջոցներից, նշանակության կախումը նշանից, ինֆորմացիայինը՝ ազդանշանից և հակառակը— այս բոլորը պայմանականության տարբեր ձևեր են: Ինքնին հասկանալի է, որ նշված կապերի բովանդակությունը պայմանականությամբ չի սպառվում, բայց այն մտնում է դրանց մեջ որպես անհրաժեշտ կողմ:

Հետևաբար, պետք է ելնել պայմանական կապի ու, համապատասխանաբար, պայմանի ու հետևանքի ամենալայն ըմբռնումից, ապա տարբերակել դրանց որակապես բազմազան ձևերը:

Պայմանական կապն արտահայտում է երևույթների փոխկապակցվածությունը, այն, որ ամեն մի երևույթ իր գոյությամբ ամբողջապես կամ առանձին հատկություններով կախված է այլ երևույթներից: Ընդսմին, փոխկապվածության որոշիչ կողմը կոչվում է պայման, իսկ որոշյալ կողմը՝ հետևանք:

գրողների ստեղծած գեղարվեստական կերպարներ: Ինքնին հասկանալի է, որ անհնար է անդրադառնալ բոլոր կերպարներին: Ինչպես հայտնի է, Լենինի աշխատություններում ռուս հեղինակները թվով անհամեմատ ավելի շատ են: Ազատագրական այն պայքարը, որի գլուխ կանգնել էր Լենինը, ավելի քան հարյուրամյա ճանապարհ էր անցել, վերից վար ակոսելով ճորտատիրական Ռուսաստանը: Ռուս գրականության դասականները, անկախ այն բանից, թե քաղաքական ինչ դավանանք ունեին, իրենց գեղարվեստական պրակտիկայում կարողացել են հաղթահարել ժամանակի կնիքը կրող հայացքների սահմանափակությունը և արտացոլել մարդկության առաջընթացին նպաստող ճշմարտություններ: Սկսած «իսկական հայրենասերի»՝ Ռադիշչևի կարոտից և ռուս ժողովրդի սոցիալական մեծ զարթոնքի նկատմամբ խոր հավատից մինչև ո՛չ միայն ռուս ժողովրդին, այլև ողջ մարդկությանը ազատություն ավետող Գորկու հերոսի սոցիալիստական իդեալը, ռուսական իրականության ոլորտում մակընթացություններն ու տեղատվությունները մշտապես հաջորդել են իրար: Ոչ մի այլ երկիր չի ապրել այդպիսի անհանգիստ հարյուրամյակ: Համաշխարհային «ի՞նչ անել» հարցի պատասխանը Ռուսաստանում որոնել են տարբեր մարդիկ, տարբեր մեկնակետերից և տարբեր նպատակներով. ոմանք որոնել են հեղափոխություն, ուրիշները գտել են, որ պետք է անփոփոխ թողնել իրականությունը: Երկու հոսանքների կողմնակիցները գեղարվեստական կերպարներ են դարձել՝ մարմնավորելով ժամանակի ճշմարտությունը: Լենինը չէր կարող անտարբեր մնալ այդ կերպարների նկատմամբ այն պատճառով, որ նրանք հեռու կամ մոտ անցյալից եկել և փորձում էին նորովի պատասխանել իրենց այնքան հուզող «ի՞նչ անել» հարցին:

Վերցնենք, օրինակ, Կռիլովի Փիղն ու շնիկը առակը. ինչո՞ւ է հեղափոխության ժամանակաշրջանում քաղաքական կերպարի ուժ ստանում այս կամ այն երևույթի իրական կրողը. ինչպե՞ս կամ ի՞նչ հնարանքներով է ծընվում այդ նոր ընդհանրացումը, որը մի գլուխ բարձր է և՛ առակի հերոսից, և՛ իրական անհատից: Ինչպես հայտնի է, Կռիլովի առակի շնիկը հաչում է փղի վրա և՛ զարմանքից, և՛, իհարկե, վախից ու ինքնահավանության մարմաջից: Փղի անտարբերությունը նույնպես հասկանալի է: Փիղը հենց նրա համար է փիղ, որ ամեն հաչոցի նշանակություն չի տալիս: Դարերից մեզ հասած այն հին խոսքը, թե փոքրերը միշտ էլ հաչել են մեծերի վրա, Լենինի մոտ բոլորովին այլ կերպ է մեկնաբանվել, թեև չի ժխտվում այդ իմաստության էությունը: Կռիլովի շնիկի և սովետական իրականության կատաղի թշնամիների նմանությունը միայն նրանց հաչելը չէ: Որքան էլ վայրահաչեն հին աշխարհի ջատագովները, պատմական անհրաժեշտությամբ նրանց մշտապես վիճակված է սոսկ զազրախոսել մեծերին. ո՛չ գոռոզամտությունը, ոչ էլ չարությունը երբեք փոքրին մեծ չեն դարձրել: Այսքանով սակայն չի սպառվում Լենինի ասելիքի ենթագիրը: Գեղարվեստական կերպարի և իրական երևույթի նմանությունը շեշտելուց հետո արվում է, թերևս, ամենակարևոր հետևությունը. «Նրանք հենց նրա համար են շնիկներ, որպեսզի հաչեն պրոլետարական փղի վրա: Թո՛ղ, հաչեն: Մենք կգնանք մեր ճանապարհով»:

Սնապարծության բազմապիսի արտահայտություններին հաճախ է անդրադարձել Լենինը, որովհետև դա մարդկության մեծագույն չարիքներից է: Մի դեպքում դա դատարկ տակառի և ժամանակի շաղակրատների հոգեհարազատության շեշտումն է, մի այլ դեպքում՝ այն գորտը, որը ճգնում է փքվելով հավասարվել եզին: Սնապարծությունն արտահայտվում է նաև այն ինքնահավան տգիտությամբ, որ ցուցաբերում է աքաղաղը գոհարի նկատմամբ: Մի այլ դեպքում Լենինը դիմում է երաշտահավին, որն սպառնում է հրդեհել ծովը:

Գոգոլի պոեմի հերոսներից մեկին՝ Մանիլովին կերտելուց տասնամյակներ հետո, հանձին ամեն մի հետադիմական նարոդնիկի, Լենինը տեսնում է այդ տիպին: Բայց ո՞վ է Մանիլովը. մոլի ֆրազաբան, որ երազում էր անտագոնիստական դասակարգերի դարավոր պայքարի կրակը մարելու, ամեն նոր միտք կասեցնելու մասին: Եթե Մանիլովը երազանքի շղարշով քողարկված կեղծիք է, ապա Նոզդրևը ամբողջովին է կեղծիք, նա կարող է նույնիսկ առաքինի խոսքեր շշնջալ: Այդպիսի բացահայտ լկտիությունը ծաղրելը քիչ է: Ահա թե ինչու Լենինը պահանջում էր անարգել և վռնդել նոզդրևներին բանվորական միջավայրից: Նոզդրևյան մի այլ, թերևս առավել հրեշավոր տիպերից է Սոբակևիչը, որը ոչ մի տարբերություն չի դնում մարդու և կոշիկի միջև: Նրա ընկալմամբ երկուսն էլ ճզմելու, տրորելու համար են: Այդպիսի վերաբերմունք ունի նաև Չիչիկովը մեռած և ապրող հոգիների նկատմամբ, որովհետև բոլորին էլ կարելի է գնել: Այդ տիպերի սոցիալական վտանգավորությունն այն է, որ հաճախ հանդես են գալիս հայրենիքի, հայրենասերի անունից և կարողանում են չոր դուրս գալ բոլոր ջրերից: Գոգոլյան տիպերից Խլեստակովը ստախոսի, խաբեբայի և հուդայական «անմեղության» չգերազանցված օրինակ է. պատահական չէ, որ Լենինը դատապարտել է Տրոցկու խլեստակովականությունը: Սրա յուրահատկությունն այն է, որ արտաքուստ ճշմարտանման է թվում, հեղինակավոր ու ծանրակշիռ: Իսկ եթե հաշվի առնենք, որ ամեն մարդ չէ, որ կարող է թափանցել այդպիսի խարդախված արտաքինից ներս և ճանաչել նրա խորքը, ապա պարզ կդառնա, թե ինչու այդքան կարևոր նշանակություն էր տալիս Լենինը խլեստակովականության գաղափարական, քաղաքական և բարոյական պսակազերծմանը՝ սկսած հետադիմական նարոդնիկներից ու էսէռներից մինչև մենշևիկներն ու լիկվիդատորները:

Պատմական նոր պայմաններում մանիլովներին նկատելու համար ո՛չ միայն հեղափոխության ընթացքի և նպատակների մասին ճշմարիտ պատկերացում էր պետք, այլև անհրաժեշտ էր խորապես ճանաչել այդ հեղափոխության թշնամիներին, որոնք նույնպես եկել են անցյալից և առաջադիմության դեմ պայքարելու հարուստ ավանդույթներ ունեն: Ո՞վ է Մանիլովը ըստ Գոգոլի. «Միայն աստված գուցե կարող է ասել, թե ինչ բնավորության տեր էր նա: Կան մի տեսակ մարդիկ, որ հայտնի են այս անուններով. հենց այնպես՝ մարդիկ, ոչ այս, ոչ այն, ոչ հոռ, ոչ մոռ, ինչպես առածն է ասում»: Եվ այդ՝ ոչ այսը և ոչ այնը շաքարի պես քաղցր աչքեր ունի, առաջին հայացքից հաճելի և բարի մարդ է թվում, ցավոտ խոսքեր չի ասում, նույնիսկ երազներ ունի ու պատրանքներ: Լենինը ցույց է տվել մանիլովների պատրանքների վտանգավորությունը, նրանց բարեհոգության ներքին չարությունը, ժողովրդի բարեկամ ներկայանալու նրանց կեղծավորության սոցիալական աստառը: Երազանքն ինքը մարդկային հոգևոր հարստության չափանիշներից է, բայց եթե դրանից օգտվում է նաև կեղծարարը, ապա այն կորցնում է իր մարդկային իմաստը:

Շարժման, գործունեության, այո՛, նաև երազանքների մեջ մարդկանց ճանաչելու լենինյան հանճարեղության վկայություններից մեկն էլ այն է, որ նա գեղարվեստական կերպարների ինքնատիպությունները բացահայտելու հետ մեկտեղ ցույց է տալիս դրանց բոլորի սոցիալական ընդհանրությունը, տարբեր բնավորություններով հետադիմության ընդհանուր գործին ծառայելու միտումը: Մեռած հոգիների Նոզդրևը մեզ վաղուց է հայտնի: Երբեմն թվում է, թե նա այլևս գոյություն չունի, հետևաբար իր կանխատեսության մեջ գուցե սխալվել է Գոգոլը, ասելով՝ «Նոզդրևը դեռ երկար ժամանակ աշխարհից դուրս չի գա, նա ամենուրեք մեր մեջ է և կարող է պատահել, որ մեզ է գալիս ուրիշ կաֆտանով: Բայց թեթևամիտ, անթափանց են մարդիկ, և ուրիշ կաֆտան հագած մարդը նրանց թվում է ուրիշ մարդ»: Այդպես կարծել, սակայն, անհիմն է ու վտանգավոր, որովհետև կաֆտանը չի կարող փոխել մարդու էությունը, որովհետև, ինչպես առածն է ասում, դռնից դուրս գալիս սև կատուն չի կարող իր սևությունը թողնել շեմին: Ձևանքի ու խարդախության այս ճարպիկ միահյուսումը, հարմար առիթին մերթ ժպիտը, մերթ էլ ստորությունը գործի դնելու ունակությամբ օժտված մարդիկ դեռևս չեն վերացել աշխարհից:

Ռեակցիայի դեմ մղած տևական ու անզիջում պայքարում Լենինն ամենից շատ դիմել է Շչեդրինի կերպարներին ու սպանիչ բնութագրումներին:

Ահա Իուդուշկա Գոլովլյովը, որի միջոցով Շչեդրինը մերկացրել է ճորտատիրական Ռուսաստանի ողջ նեխածությունը, միաժամանակ ցույց տալով, որ իր ստեղծածի «անմահությունը» հին աշխարհի դատապարտվածության վըկայությունն է: Հայտնի է, որ Գոլովլյովն ընդունակ է դիմելու նաև իր հարազատների շահամոլական զոհաբերմանը ճիշտ այնպես, ինչպես հետագայում լիբերալները դավաճանեցին հեղափոխությանը, փորձելով դրա զոհաբերմամբ վերականգնել «խաղաղ» ստրկության և «հումանիստական» շահագործման ժամանակները:

Շչեդրինյան ոլորտի բանաստեղծներից մեկը՝ Շչեգլովը, ծաղրելով լիբերալների հանդըգնությունն ու շաղակրատությունը, գրում է, թե նրանց ճառերը կրակոտ էին, բայց զուրկ իշխող չարի դեմ կռվելու կրակից: Շչեգլովի Գովք երգիծական բանաստեղծության մեջ անդրշիրիմյան աշխարհում հանդիպում են Գոգոլը և Շչեդրինը: Առաջինի այն հարցին, թե ինչ եղան Խլեստակովը, Նոզդրևը, Չիչիկովը, արդյոք բոլորն էլ ապրո՞ւմ են, Շչեդրինը պատասխանում է. «Ապրում են. Խլեստակովը քսան ընկերության անդամ է, Չիչիկովը բանկի դիրեկտոր, իսկ քո Դերժիմորդան դարձել է պոմպադուր»:

Պորֆիրի Գոլովլյովին յուրայինները երբեմն Հուդա են կոչում, երբեմն էլ՝ արնախում: Նա մշտապես պարծենում էր, թե ինչպիսի տառապանքով է ձեռք բերել 400 ճորտերին, ափսոսում էր, որ չպիտի կարողանա այդ բոլորին իր հետ գերեզման տանել:

Այս տիպի համար ավելի դյուրին է մի քանի մարդ սպանել, քան երկու կաթիլ արցունք թափել հարազատի մահվան առիթով: Հենց որ հանդիպում է կենդանի մարդու, Գոլովլյովն իսկույն սկսում է մոլորեցնել նրան անկապ բառերի տարափով, որից անհնար է որևէ բան հասկանալ, բայց որն անտանելի ծանր է դարձնում ապրելը: Իրականում Գոլովլյովը ոչ թե զրուցում, այլ բարոյապես խոշտանգում է մարդկանց, ամեն վայրկյան պատրաստ է

վրեժ լուծել ապրողից ու մեռածից և բոլոր ողբերգությունները գնահատել իր շահի տեսանկյունից: Թվում է, թե այդպիսի դահիճը պետք է զուրկ լիներ երևակայությունից, բավարարվեր կենդանի հակառակորդներով: Բայց նա գիտե նաև հակառակորդներ հորինել և պայքարել նրանց դեմ: Ահա թե ինչու նրան նաև հողմաղաց էին անվանում: Գոլովլյովի էությունն այդքանով չի սպառվում: Սովորաբար դահիճը նաև գոռոզ է լինում և ամբարտավան: Բայց այս տիպը գտնում է, որ բոլորի դժբախտությունը հպարտության հետևանք է: «Ո՞վ եմ ես, որ հպարտանամ,— ասում է նա,— ինչ-որ ճիճու: Աստված տեսավ ինձ, խղճաց և այսպիսի կյանք պարգևեց»: Մի առիթով Գոլովլյովն սկսում է երազել, թե ինչ գնով կարող է վաճառել կաթը, եթե գավառում բոլոր կովերը սատկեն: Ահա այս նողկալի երևակայությամբ է թևավորված նաև Չեխովի Ռոտշիլդի ջութակը պատմվածքի հերոս Յակով Իվանովը:Սա դագաղագործ է և ամեն անգամ գերագույն հրճվանք է ապրում, երբ մարդ է մահանում, տխրում է, երբ ուշ են աշխարհին հրաժեշտ տալիս: Ապրողները նրան մշտապես զայրույթ են պատճառում: Եվ ահա զայրույթի այդ պահերին նա երազում է գտնել բոլոր ապրողների հասակը չափելու հնարը, որպեսզի կարողանա նախապես դագաղներ պատրաստել, ինչպես վարվել է իր կնոջ հետ: Կինը դեռ ապրում էր, բայց Յակով Իվանովն արդեն պատրաստել էր դագաղը, գինն էլ գրել վրան. 2 ռ. 40 կոպեկ: Եվ այսպես, մեռելների սիրահար Չիչիկովը տարիներ հետո Գոլովլյով է դառնում, սա էլ հյուրընկալվում է Յակով Իվանովի հարկի տակ և կատաղի մի հետադիմությամբ ձեռք մեկնում Կլիմ Սամգինին, որն իր նվիրական զգացումների մարմնացումը տեսնում էր վեխովականների հետևյալ խոստովանության մեջ. «Մենք պետք է շնորհակալություն հայտնենք կառավարությանը այն բանի համար, որ նա սվիններով պաշտպանում է մեզ ժողովրդական ցասումից»:

Հանգամանքների բերումով Լենինը Գոլովլյովի և անսկզբունք Բալալայկինի մեջ տեսել է Տրոցկուն, ինքնակալությանը քծնող Բելիկովի մեջ՝ Կաուցկուն, Մոլչալինի մեջ՝ ժամանակի ստրկամիտներին ու ծառայամիտներին, Ռեպետիլովի մեջ՝ արկածախնդիրներին և գոռոզամիտներին, բոլոր նրանց, ովքեր դեռ չէին մաշել նոր կոշիկները, բայց արդեն դավանանում էին իրենց համոզմունքներին, և նրանց, որ պատմության մեջ մնալու համար պատրաստ են դահճի փառք վաստակել: Հեղափոխության թշնամիների բոլոր այս քաղաքական խորամանկումներն ու գաղափարական երկերեսանիության հնարանքները մերկացնելու համար Լենինը հաճախ է անդրադարձել Օբլոմովի կերպարին: Վերջինս կարողանում էր ամեն մարդու, նույնիսկ իր հակառակորդի բնավորության մեջ ինչ-որ ապահով նեղք գտնել՝ իր ծուլությունն ու անտարբերությունն անվրդով պահելու համար, մի կերպար, որ վայելել է կյանքը, բնավ չմտածելով, թե ինչ բան է այն, ինչի համար է տրված մարդուն, մի կերպար, որ հենց ծննդյան օրից վախենում էր շարժումից, առաջ գնալուց, որովհետև առաջ գնալ նշանակում էր դեն նետել խալաթը ո՛չ միայն իր ուսերից, այլև հոգուց, իր մտքից, սրբել փոշին ու սարդոստայնը ո՛չ միայն պատից, այլև իր աչքերից ու տեսնել աշխարհը: Ահա մտքի հենց այս պայծառացումից էր սարսափում Օբլոմովը: Եվ պատահական չէ, որ ամեն անգամ, երբ որևէ մեկը հյուր էր գալիս, նա մշտապես զգուշացնում էր.

— Մի՛ մոտեցեք, մի՛ մոտեցեք, դուք ցրտից եք գալիս,— ասում էր ու փաթաթվում վերմակի մեջ: Արտաքին այդ անշարժության մեջ Լենինը տեսնում էր ահավոր մի մակաբուծություն, որի գոյության արդարացումը Օբլոմովը գտել էր հետևյալ իմաստության մեջ. «Եթե ես աշխատեմ, բա ե՞րբ պիտի ապրեմ»: Օբլոմովը վախենում է կյանքից. սարսափում է իրականության հետ իր երազանքի առնչումից: Իսկ վախը, սարսափը նույնպես գործում, շարժվում են: Օրինակ, Օբլոմովը կարող է ոտքով խփել իր ծառա Զախարի դեմքին և հպարտանալ, որ ինքը շարժվում է, 300 զախարներ պահել բարոյական ստրկության մեջ և մտածել, որ գործ է անում: Օբլոմովի անշարժությունը նման է սարդոստայնի, որի մեջ ընկնողը որքան ճգնում է դուրս փախչել, այնքան մոտենում է գիշատչին:

Կան կերպարներ, որոնք վտանգավոր են իրենց արարքով, ուրիշները՝ իրենց ոչինչ չանելը դատարկ փրազաբանությամբ քողարկելով, բայց կան նաև այնպիսիք, որոնց ամբողջ հոգսը սեփական արատները ուրիշներին վերագրելն է, խղճի խայթից իսպառ զերծ լինելը: Խոսքը Տուրգենևի Ապրելու վարքականոն արձակ բանաստեղծության խաբեբայի մասին է. նրա «բարոյական» սկզբունքներն այսպիսին են. «Եթե դուք ցանկանում եք մի լավ դաղել և նույնիսկ վնաս հասցնել ձեր հակառակորդին, ապա կշտամբեք նրան այն բացերի կամ արատի համար, որոնցով օժտված եք դուք: Զայրացեք և կշտամբեք: Այդպիսով, դուք կստիպեք ուրիշներին կարծել, թե դուք նման արատներ չունեք: Ձեր զայրույթը կարող է նույնիսկ անկեղծ լինել, դուք կարող եք խղճի խայթ էլ զգալ: Իսկ եթե դուք ռենեգատ եք, հակառակորդին կշտամբեք համոզմունքներից զուրկ լինելու մեջ, եթե հոգով ծառայամիտ եք, ձեր հակառակորդին կշտամբեք, որ նա ստրուքարշ է»: Տուրգենևյան այդ զառամյալ, բայց բավականին եռանդուն խարդախին Լենինը համեմատել է Տրոցկու, Մարտովի, Ստրուվեի, Ավենարիուսի, Մասլովի՝ «գրականության այդ մենշևիկյան գեներալների հետ»: Տուրգենևի խաբեբան շարունակում է ապրել մեր օրերում, նույնիսկ պրեզիդենտի կերպարանքով: Բավական է հիշել, թե ով է այսօր աշխարհով մեկ աղմկում մարդու իրավունքների պաշտպանության մասին, միաժամանակ ժողովուրդների ստրկացման նավատորմ պահում աշխարհի բոլոր օվկիանոսներում, ո՛վ է աղմկում արդարության անունից, աշխարհի բոլոր մեծ ու փոքր դահիճներին սիրով ապաստանելով իր հարկի տակ: Եվ, վերջապես, ո՛ւմ բռունցքն է թավշյա ձեռնոցի մեջ:

Գեղարվեստական կերպարների լենինյան ըմբռնումից ու մեկնությունից, իրականության հետ նրանց շփման կետերի բազմազանությունից հանգում ենք մի շատ կարևոր հետևության. պատմական կոնկրետ պայմաններում այդ կերպարներից յուրաքանչյուրի կյանք մտնելը բնավ պայմանավորված չէ մի անգամ և ընդմիշտ «սեփականված» այն արատով, որի խտացումն է հանդիսանում նա: Իրականության մեջ գեղարվեստական կերպարների գործունեության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ խաբեբան կարող է դառնալ նաև դահիճ, դահիճը՝ ստրկամիտ, ստրկամիտը՝ կատաղի խավարամոլ, խավարամոլը՝ քծնող, քծնողը՝ դավաճան և այսպես անվերջ: Դա ցույց է տալիս, որ մարդկային արատները, որքան էլ տարբեր ու բազմապիսի լինեն, իրենց կաշկանդող շրջանակները հեղքելու և ստորության նոր տարածքներ նվաճելու հատկություն ունեն: Գրական կերպարի այդ վերազգեստավորումը նկատելու համար անհրաժեշտ էր ճանաչել կյանքը և իրական մարդկանց, անհրաժեշտ էր պարզել ոչ թե այն, թե ինչ է ասվում, այլ այն, թե ում է ձեռնտու ասվածը: Եվ քանի որ Լենինը խորապես ճանաչում էր հեղափոխության առաջատար ուժերին, նույնքան անսքող մերկացնում էր նրանց հակառակորդներին, պատենավոր և անպատյան տիպերին:

Կան հակասություններ, որոնք առաջանում են ժամանակի կենսական հարցերի ճշմարիտ գիտակցումից և դրանց լուծման ուղիների սխալ ընտրությունից, իրականության անբանական լինելու համոզմունքից և դրա վերափոխման գաղափարների դեմ ըմբոստանալուց, տիրող բարքերի անմարդկայնության դեմ բողոքի և այդ բողոքին հեղափոխական ուղղություն հաղորդելու սարսափից: Լենինը ուսուցանում է նման դեպքերում հրաժարվել անցյալի խոշոր արվեստագետների ու մտածողների ոչ թե ամբողջ ժառանգությունից, այլ այն ամենից, ինչ պատկանում է անցյալին, ինչ չի դիմացել ժամանակի քննությանը, ինչ աղաղակող հակասության մեջ է հենց իրենց՝ առաջադեմ գաղափարների հետ: Չէ՛ որ եղել են մարդիկ, որոնք ճշմարտության տառապալից որոնումների ճանապարհին երբեմն ստիպված են եղել երկու քայլ առաջ գնալ, մի քայլ ետ: Չի կարելի մոռացության մատնել հենց այդ մի քայլը, որ նպաստել է մարդկության առաջընթացին: Միաժամանակ եղել են անհատներ, որոնք առաջ գնալու պատրանք են ստեղծել, կատարելով մեկ քայլ առաջ, երկու քայլ ետ: Ահա այդ խարդախված առաջխաղացումը, որ առավել վտանգավոր է, քան բացահայտ հետադիմությունը, մերժելի է: Հետևաբար, լենինիզմը օրինական ժառանգորդն է նաև այն արվեստագետների, որոնք ժամանակի կենսական հարցերը շոշափել են, բայց չեն կարողացել գտնել դրանց ճշմարիտ պատասխանը: Հիշենք Տոլստոյի հանճարեղության լենինյան բնորոշումը. «Եթե մեր առջև, իրոք, մեծ գեղագետ է, ապա նա պետք է իր երկերի մեջ արտացոլեր հեղափոխության էական կողմերից գոնե մի քանիսը»: Եվ սա ասված է մի գրողի մասին, որ չի ըմբռնել հեղափոխությունը, ավելին՝ մերժել է այն: Ռուս հանճարի այս խոր հակասությունների մեջ Լենինը կարողացավ տեսնել ճորտատիրական իրականության անողոք մերկացնողին, ռուս գյուղացիության ծով տառապանքներն արտացոլողին: Այդ նույն չափանիշով է Լենինը գնահատել նաև Գերցենի, Տուրգենևի և շատ ու շատ ուրիշ արվեստագետների ստեղծագործությունը:

Մենք գերազանցապես անդրադարձանք այն կերպարներին, որոնք ներկայացնում էին նախառեֆորմյան Ռուսաստանը: Բայց կար նաև մի այլ Ռուսաստան՝ Գերցենի և Չերնիշևսկու Ռուսաստանը, որի ընդերքից մտքի հսկաներ են ծնվել, անձնուրացությամբ ծառայելով ազգի ինքնագիտակցության զարթոնքի գործին: Այդպիսի ռահվիրաներից է Չերնիշևսկու Ինչ անել վեպի Ռախմետովը, որի հեղափոխական պայքարի դպրոցից դուրս են եկել համաշխարհային անուն ու փառք վաստակած բազմաթիվ հայրենասերներ և մասնակցել «դարաշրջանի շարժմանը»: Քիչ են նրանք, այդ ռախմետովները,— խոստովանել է Չերնիշևսկին,— բայց նրանցով է ծաղկում բոլորի կյանքը: Առանց ռախմետովների՝ կյանքը կխամրեր ու կթթվեր: Քիչ են նրանք, բայց բոլոր մարդկանց շնչելու հնարավորություն են տալիս: Առանց այդպիսիների՝ մարդիկ շնչահեղձ կլինեին... Ռախմետովները Ռուսաստանի «լավագույն մարդկանց ծաղիկն են»: Լենինը Ռախմետովի

սերնդի մեջ տեսել է այն նոր մարդկանց, որոնք իրենց հասարակական վիճակի թելադրանքով կոչված էին տապալելու հինը և ստեղծելու նորը: Այդ սերնդի մեջ է նա տեսել «մասսաների վրա հենվող և հեղափոխական մեծ ուժ դարձած» գաղափարակիրներին: Լենինի սիրած հերոսների համար «աշխարհում և ոչ մի տեղ չկա միջինը: Ազատության և ստրկության միջինը դավաճանությունն է, ճշմարտության և կեղծիքի միջինը՝ երեսպաշտությունը, «այո»-ի և «ոչ»-ի միջինը՝ բարոյական նեխումը»: Ահա այն արատները, որոնցով օժտված են հեղափոխության և ազատության բոլոր գույնի ու տեսակի թշնամիները: Դեռևս Բելինսկին է դատապարտել այն մարդկանց, որոնք ջանում էին համոզել և՛ իրենց, և՛ ուրիշներին, թե քարացածությունը լավ է շարժումից, թե այն շարժումն է ընդունելի, որ ետ է տանում պատմությունը: Ինչպես տեսնում ենք, ռուսական իրականությունն ալեկոծած «ինչ անել»-ին հակադրվում էր քարացածությունը, այսինքն՝ «ինչ չանելու» ստրկամիտ բարոյականությունը, ճորտատերերի անիծյալ Ռուսաստանն անփոփոխ թողնելու ձգտումը, ամեն ինչ կեղծիքի իշխանության տակ պահելը: Ի դեպ, այդպիսի մարդիկ սարսափում են մերկացումից, ամեն կերպ աշխատում են քողարկել իրենց իսկական հոգին:

XIX դարի վերջին երեք տասնամյակում Չերնիշևսկու Ռախմետովը հեղափոխական խիզախության ու գաղափարական անընկճելիության օրինակ էր: Թե որքանով էր մեծ նրա ազդեցությունը, երևում է Պլեխանովի հետևյալ գնահատականից. «Թող ցույց տան մեզ ռուս գրականության որևէ փայլուն գեղարվեստական երկ, որը երկրի բարոյական ու մտավոր զարգացման վրա իր ազդեցությամբ կարողանար համեմատվել Ինչ անել վեպի (հետևաբար նաև Ռախմետովի) հետ: Ոչ ոք չի կարող ցույց տալ: Չի կարող, որովհետև այդպիսի երկ չի եղել, չկա և, երևի, չի էլ լինելու»: Պլեխանովի ոգեշունչ գնահատականն անվիճելի է: Ժամանակը սրբագրեց այդ կանխատեսումը. XX դարի սկզբներին երևան եկավ Մաքսիմ Գորկու Մայրը վեպը, որի հերոս Պավել Վլասովը դարասկզբին առաջինը հպարտորեն բարձրացրեց կուսակցության դրոշը, առաջինը հայտարարեց ի լուր շահագործողների աշխարհի. «Դուք մարդուն կտրել եք կյանքից և խորտակել նրան: Սոցիալիզմը ձեր խորտակած աշխարհը մի մեծ ամբողջություն է դարձնում: Եվ դա լինելու է»: Լենինը բարձր է գնահատել այդ վեպը, որի ընթերցումով բանվոր դասակարգը ճանաչեց իրեն ու աշխարհը, գիտակցեց իր ուժերի հզորությունը և անհաշտ պայքարի ելավ դարավոր խավարի ու ստրկության թագավորության դեմ:

Պրոլետարիատի առաջնորդն իր ամենօրյա հեղափոխական պայքարում չէր կարող հաշվի չառնել նաև մարդկության ստեղծած առաջավոր գրականության ավանդները: Լենինյան աշխատություններում հանդիպում ենք այնպիսի անունների (Հոմերոս, Դեֆո, Սերվանտես, Դիկենս, Մոլիեր, Շիլլեր, Գյոթե, Հայնե, Զոլա, Պոտիե, Բարբյուս...), որոնց ասույթներն ու կերտած կերպարները նույնպես սատարում են հեղափոխությանը, մարդկության լավագույն ապագայի հաղթանակին:

Հոդվածի շրջանակները թույլ չեն տալիս խոսելու բոլոր կերպարների մասին, բայց մենք կուզենայինք հատկապես շեշտել մի շարք մտքեր, որոնք ամենից շատ են մոտ եղել Լենինի սրտին ու մտքին: Լենինը հաճախ է օգտագործել Գյոթեի այն իմաստությունը, թե «Չոր է, բարեկա՛մ, ամեն տեսություն, Կյանքի ծառն է միշտ դալար ու սիրուն», կոչ անելով բանվորներին կենդանի իրականություն դարձնել այդ տեսությունը, այսինքն՝ խոսքը գործ դարձնել: Մի այլ դեպքում Լենինը Հայնեի քնարական բանաստեղծության «անիծյալ հարցերին տուր ուղղամիտ պատասխան» տողերն ուղղում է Մարտովի, Պոտրեսովի և մյուս մենշևիկների դեմ, որոնք ամեն կերպ խուսափում էին շիտակ պատասխան տալ ժամանակի հուզող հարցերին: Շիլլերի Պիկոլոմինի երկի համանուն հերոսի այն խոսքերը, թե «Չարը հենց նրանով է նաև ահավոր, իմ Մաքս, որ մշտապես չարիք է ծնում», Լենինն ուղղում է այն մարդկանց դեմ, որոնց միակ արժանիքը կեղծիքն է, շանտաժն ու սպառնալիքը:

Այն պրոբլեմը, որի արդիական կարևորությունը փորձեցինք նշել, շատ է բազմաբովանդակ: Եթե ընդունենք, որ գեղարվեստական խոշոր, դարակազմիկ կերպարները ժամանակի հետ ոչ թե խամրում, այլ ավելի են հարստանում, ապա լենինյան ասույթները գրականության մասին, գեղարվեստական կերպարների ուժն ու նշանակությունը իրականության մեջ ստուգելու և նրանց բնավորության կենսունակ գծերը հայտաբերելու գիտական, բարոյական ու գեղագիտական սկզբունքները մեզ համար կյանքում ճիշտ կողմնորոշվելու և մարդկանց անսխալ ճանաչելու ուսանելի ավանդույթներ են: Այն, ինչ Պոլ Լաֆարգը ասել է Մարքսի մասին, լիովին վերաբերում է նաև Լենինին. պահանջվում էր մտքի անօրինակ ուժ՝ այդքան խոր հասկանալու համար իրականությունը և պահանջվում էր ոչ պակաս հազվադեպ արվեստ՝ հաղորդելու համար այն, ինչ տեսել և ցանկացել է ցույց տալ:

# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԻՐԱԿԱՆՈՒՄ

**Բ. Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ԿԱՊԻՏԱԼԻ ՎԱՐՁՈՒ ՋԱՏԱԳՈՎՆԵՐԸ ձգտում են ժխտել դեմոկրատիայի դասակարգային բնույթը: Նրանք, ինչպես նախկինում, շարունակում են «անդասակարգային դեմոկրատիայի» մասին առասպելներ հորինել, փառաբանելով բուրժուական դեմոկրատիան՝ որպես քաղաքական և իրավական օրինակելի սիստեմի միակ արդարացի, հնարավոր ու կատարյալ ձև: Նրանք պնդում են, թե, իբր, բուրժուադեմոկրատական քաղաքական, պետական և իրավական հաստատությունները վերդասակարգային են, իսկ բուրժուական պետությունը հավասարապես պաշտպանում է բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի շահերը:*

*Դեմոկրատիայի մարքս-լենինյան ըմբռնումը անժխտելիորեն ապացուցում է ամեն մի քաղաքական-պետական և իրավական սիստեմի դասակարգային բնույթը: Եթե ծաղրելու չլինենք ողջախոհությունն ու պատմությունը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ապա պարզ է, որ չի կարելի խոսել «զուտ դեմոկրատիայի» մասին, քանի դեռ գոյություն ունեն տարբեր* դասակարգեր, *այլ կարելի է խոսել միայն* դասակարգային *դեմոկրատիայի մասին (տե՛ս Երկեր, հ. 28, էջ 302): Ինչ վերաբերում է բուրժուական պետությանը, որը բուրժուական գաղափարախոսները ներկայացնում են որպես «համընդհանուր բարօրության պետություն», ապա ինչքան էլ որ այն դեմոկրատական լինի իր բազմազան ձևերով հանդերձ, վերջին հաշվով, անպայման բուրժուազիայի դիկտատուրա է:*

*Վ. Ի. Լենինը, մերկացնելով Կ. Կաուցկուն բուրժուական ու պրոլետարական դեմոկրատիայի փոխհարաբերության պրոբլեմը խճճելու համար, գրում էր. «Բուրժուական դեմոկրատիան, պատմական մեծ առաջադիմություն լինելով միջնադարի հետ համեմատած, միշտ մնում է,— և կապիտալիզմի օրով չի կարող չմնալ,— նեղ, թերատ, կեղծ, խաբեական, հարուստների համար՝ դրախտ, շահագործվողների, չքավորների համար՝ թակարդ ու խաբեություն»* (Երկեր, *հ. 28, էջ 303—304):*

*Մարքս-լենինյան գաղափարախոսության և բուրժուական, ռևիզիոնիստական ու ռեֆորմիստական տեսությունների միջև պայքարի առանցքը մարդկանց ձևական և ռեալ իրավունքների, հետևաբար՝ ձևական և ռեալ դեմոկրատիայի միջև տարբերության հարցն է: Բուրժուական դեմոկրատիայի ջատագովները փորձում են շրջանցել մարդու իրավունքների պրոբլեմի սոցիալ-տնտեսական ասպեկտը՝ միակողմանիորեն սրելով անհատական ազատության և անձի անձեռնմխելիության հարցերը: Մատնացույց անելով իրենց սահմանադրություններում արձանագրված անձի այս կամ այն իրավունքն ու ազատությունը, նրանք ամենևին չեն շոշափում կենսականորեն անհրաժեշտ այնպիսի հիմնարար իրավունք, ինչպիսին աշխատանքի իրավունքն է, որը ո՛չ միայն չի երաշխավորվում, այլև նույնիսկ չի էլ հռչակվում: Ընդսմին, վկայակոչվում է իրավահավասարության սկզբունքը, որը բուրժուական դեմոկրատիայի ավանդական սկզբունքների մեջ գլխավորն է:*

*Իրոք, համընդհանուր իրավահավասարության լոզունգով էր բուրժուազիան պայքարում ֆեոդալական կարգերի դեմ: Պատմական առաջին փաստաթղթերը, որոնցում նա հռչակում էր իրավահավասարության սկզբունքն ու դրանից բխող*

կյանքի, ազատության, երջանկության իրավունքները, XVIII դարի ամերիկյան Անկախության ու ֆրանսիական Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիաներն էին։ ԱՄՆ-ի սահմանադրության մեջ, մասնավորապես, արձանագրված է. «Մենք ակնհայտ ենք համարում հետևյալ ճշմարտությունները. մարդիկ ստեղծված են հավասար, և նրանք բոլորն Արարչի կողմից օժտված են որոշ անկապտելի իրավունքներով, որոնցից են կյանքը, ազատությունն ու երջանկության ձգտումը։ Այդ իրավունքների ապահովման համար ստեղծված են կառավարություններ, որոնք իրենց արդարացի իշխանությունն իրականացնում են կառավարվողների համաձայնությամբ։ Եվ, եթե կառավարության տվյալ ձևը կործանարար է դառնում այդ նպատակի համար, ապա ժողովրդի իրավունքն է փոխել կամ ոչնչացնել այն և ստեղծել նոր կառավարություն՝ խարսխված այնպիսի սկզբունքների և իշխանության այնպիսի կազմակերպման վրա, որոնք, ժողովրդի կարծիքով, առավել չափով են նպաստում իր անվտանգությանն ու երջանկությանը»։

Հռչակելով քաղաքացիների քաղաքական և անձնական իրավահավասարությունն ու իրավունքները, բուրժուադեմոկրատական սահմանադրությունները դրանք դարձնում էին ձևական, քանի որ միաժամանակ վավերագրում էին մասնավոր սեփականության «սրբազան» իրավունքը։ Ահա թե ինչու էր Ֆ. Էնգելսը նշում, որ դրանք մարդու «յուրահատուկ բուրժուական իրավունքներ» էին (տե՛ս К. Маркс и Ф Энгельс. Соч., т. 20, стр. 107)։ Մարքսիզմ-լենինիզմը ցույց տվեց, որ բուրժուան ու աշխատավորը չէին կարող իրավահավասար լինել և որ այդ անիրավահավասարությունը դրսևորվում է, ամենից առաջ, բուրժուական հասարակության սոցիալ-տնտեսական ոլորտում։ Օրենքի առջև բոլորին հայտարարելով հավասար, բուրժուազիան այդ հավասարությունը ի չիք է դարձնում ուրիշի աշխատանքը շահագործելու սեփական իրավունքով, տնտեսապես ուժեղի իր իրավունքով։

Նշելով բուրժուական իրավունքի ձևական լինելը, Վ. Ի. Լենինը գրում էր, որ կապիտալիզմի օրոք բոլոր քաղաքացիներն օրենքի առջև հավասար են համարվում «անկախ նրանից, թե ո՛վ ի՛նչ կապիտալ ունի— արդյոք հո՞ղ՝ մասնավոր սեփականության իրավունքով, թե՞ դա մի տկլոր մարդ է, որն ունի սոսկ աշխատող ձեռքեր,— բոլորն օրենքի առջև հավասար են։ Օրենքը միատեսակ պաշտպանում է բոլորին, պաշտպանում է սեփականությունը, ով որ ունի այն, սեփականության դեմ ուղղված ոտնձգություններից այն մասսայի կողմից, որը, չունենալով սեփականություն, չունենալով ոչինչ, բացի իր ձեռքերից, հետզհետե աղքատանում է, սնանկանում և պրոլետարների փոխարկվում։ Այդպիսին է կապիտալիստական հասարակությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 595—596)։

Դեմոկրատիայի իր ըմբռնմամբ բուրժուազիան ի սկզբանե ձգտել և այժմ էլ ձգտում է հիմնավորել բանվոր դասակարգի, աշխատավոր մարդու շահագործման, նրա հիմնական սոցիալ-տնտեսական իրավունքների ոտնահարման համար համապատասխան քաղաքական և իրավական պայմանների «բնական» ու «հավերժական» բնույթը։ Պատահական չէ, որ բուրժուական սահմանադրությունները չեն երաշխավորում և չեն էլ կարող երաշխավորել աշխատավոր մարդու իրավունքները՝ չնայած հռչակվում է, թե բուրժուական «վերդասակարգային» պետության ու քաղաքական հաստատությունների գործունեության միտումն է «ընդհանրապես» մարդու իրավունքների, ազատությունների պաշտպանությունը։ Ներկայումս զարգացած կապիտալիստական երկրներում գործազուրկ է 17 միլիոն մարդ։ Ըստ պաշտոնական վիճակագրության, աշխարհի ամենահարուստ կապիտալիստական պետությունը՝ ԱՄՆ-ը, օրինակ, այսօր իր աշխատունակ քաղաքացիների 5,8 տոկոսին չի ապահովում աշխատանքով։

Բուրժուայի ըմբռնմամբ՝ ազատությունը վարձու աշխատանքի միանգամայն ազատ շահագործման իրավունք է, մրցակցային պայքարում թույլին խեղդելու ազատություն, մոնոպոլիաների շահերին համապատասխան պետության գործունեության ազատություն։ Դիմելով բուրժուական դեմոկրատիայի ջատագովներին, Վ. Ի. Լենինը գրում էր. «...դուք ձեր պետությունն անվանում եք ազատ, սակայն իրականում, քանի դեռ կա մասնավոր սեփականատիրություն,



ձեր պետությունը, թեկուզ այն դեմոկրատական հանրապետություն լինի, ոչ այլ ինչ է, եթե ոչ մի մեքենա կապիտալիստների ձեռքին՝ բանվորներին ճնշելու համար, և որքան ավելի է ազատ պետությունը, այնքան ավելի պարզ է արտահայտվում այդ» (Երկեր, հ. 29, էջ 602)։ Ինչ վերաբերում է աշխատավորներին, ապա վերջիններիս պայքարն իրենց իրավունքների ու ազատությունների համար պայքար է բուրժուազիայի իրավունքների և ազատությունների սահմանափակման համար։

Բուրժուական պրոպագանդան պնդում է, թե անհատի քաղաքական ազատությունները, քաղաքական վարքագծի նրա ազատ ընտրությունը հնարավոր են միայն Արևմուտքի կապիտալիստական պետություններին հատուկ դեմոկրատիայի «պլյուրալիստական մոդելի» պայմաններում։

«Պլյուրալիստական դեմոկրատիայի» ջատագովները, փորձելով քողարկել կապիտալիզմի քաղաքական կարգի դասակարգային էությունը, այն փաստը, որ քաղաքական իշխանությունն արդի բուրժուական երկրներում անվերապահորեն պատկանում է մոնոպոլիստական կապիտալին, պնդում են, թե ցանկացած քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի գլխավոր չափանիշը իշխանության համար պայքարող մրցակցող կուսակցությունների, միմյանց հակադրվող քաղաքական գործիչների, «օպոզիցիայի» պարտադիր առկայությունն է։

Պլյուրալիստների տեսական մարզանքները ո՛չ միայն չեն համապատասխանում իրականությանը, այլև, բախվելով վերջինիս հետ, ավելի ցայտուն են դրսևորում բուրժուական դեմոկրատիայի ձևական բնույթը։

Նյու Յորքի համալսարանի տնտեսագիտության և սոցիոլոգիայի պրոֆեսոր Ֆ. Լանդբերգը փաստական հարուստ նյութ պարունակող իր **Հարուստներ ու գերհարուստներ** գրքում խոստովանում է, որ մոնոպոլիստական կապիտալը քաղաքական կուսակցությունների ու պրեզիդենտության դրանց թեկնածուների քաղաքական վարքի վրա «վճռական ազդեցություն է գործում», և որ արդի կապիտալիզմի քաղաքական սիստեմը ոչ այլ ինչ է, եթե ոչ «ֆինանսա-քաղաքական միության վրա հիմնված կայսրություն» (Ф. Ландберг. Богачи и сверхбогачи, М., 1975, стр. 388)։

Մարդու իրավունքների ու ազատությունների բուրժուական պաշտպանների այն պնդումները, թե բուրժուական դեմոկրատիան ապահովում է անհատի քաղաքական ընտրության ազատությունը, քննադատության չեն դիմանում։ Նույնիսկ բուրժուական սոցիոլոգիայի և քաղաքական գիտության այն ներկայացուցիչները, որոնք իրենց ուսումնասիրություններում փորձում են օբյեկտիվ լինել, չեն կարող չհերքել ազատության պլյուրալիստական ըմբռնումը։ Ֆրանսիական հայտնի քաղաքագետ և իրավաբան Մորիս Դյուվերժեն, բացահայտելով ընտրողների դասակարգային ու քաղաքական պատկանելության և նրանց քվեարկության արդյունքների միջև գոյություն ունեցող կապը, հանգում է այն եզրակացության, որ, նախ, քաղաքական սիստեմի գիտական վերլուծությունն անհնար է առանց դասակարգերի ու դասակարգային պայքարի մարքսիստական ըմբռնման, և երկրորդ՝ բուրժուական դեմոկրատիայի պայմաններում չկան «բոլորի շահերը պաշտպանող ունիվերսալ կուսակցություններ»։ Ինչ վերաբերում է, օրինակ, ամերիկյան երկկուսակցական սիստեմին, ապա այն «համապատասխանում է իրերի դրությանը, քանի որ քաղաքական ընտրությունը սովորաբար ստանում է երկընտրանքների միջև ընտրության ձև»։ Կուսակցական ճարտասանները, ուռճացնելով այդ տարբերությունները, ստիպում են քվեարկել եթե ոչ այս կամ այն կուսակցության օգտին, ապա նրա դեմ։ Այս տեսակետից «չարյաց փոքրագույնը» ընտրելու սկզբունքն ընտրություններին մասնակցելու գլխավոր շարժառիթն է։ Այսպիսով, լիովին հասկանալի է, թե ինչու է անշեղորեն նվազում բնակչության քաղաքական ակտիվությունը։ 1976 թ. ընտրված պրեզիդենտ Քարտերի օգտին քվեարկել է ընտրողների ընդամենը 27,2 տոկոսը (ընտրություններին մասնակցածների ընդհանուր թիվը՝ 53,3 տոկոս)։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ կապիտալիզմի պայմաններում թերթերը դառնում են «կապիտալիստական ձեռնարկություններ, հարուստների հարստանա-

լու... աշխատավոր մասսաներին խաբելու և հիմարացնելու գործիք» (Երկեր, հ. 32, էջ 150): Արդի կապիտալիզմի պայմաններում բուրժուական մամուլի այդ ֆունկցիան ավելի ակնհայտ է դառնում շնորհիվ նրա մոնոպոլիստական կենտրոնացման: Այս փաստն ընդունում են նաև իրենք՝ բուրժուական լրագրողները: Ֆրանսիական «Ֆիգարո» թերթում երկար տարիներ աշխատած լրագրող Դ. Դավիլը, փաստարկված քննադատության ենթարկելով նրանց, ովքեր պնդում են բուրժուական մամուլի «ազատության» մասին, իր Մամուլի ազատությունը չի վաճառվում գրքում գրում է, որ ֆրանսիական հեղափոխության հռչակած «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիայի» 11-րդ հոդվածում ձևակերպված «ազատ ինֆորմացիայի իրավունքը», որպես «մարդու հիմնական իրավունքներից մեկը, բոլոր ազատությունների չափանիշ և դեմոկրատիայի բանալի», բուրժուական հասարակության մեջ դարձել է մարդկանց խաբելու և հիմարացնելու շահութաբեր իրավունք:

Բուրժուական «ազատ մամուլի» դերը հատկապես մեծանում է ընտրական կամպանիաների ժամանակ, երբ բուրժուական քաղաքական կուսակցությունները այդ «ազատությունը» գնելու համար հսկայական դրամական միջոցներ են ծախսում:

Ինչ վերաբերում է պլյուրալիստների գովաբանած ընտրական սիստեմին, ապա ամերիկյան կոնգրեսի աչքի ընկնող գործիչներից մեկը՝ սենատոր Մենսֆիլդը, բնութագրելով մասնավորապես ԱՄՆ-ի ընտրական սիստեմը, խոստովանել է. «...ֆինանսական գործոնը սկսում է հետին պլան մղել մյուս բոլոր նկատառումներն այն ժամանակ, երբ լուծվում է այս կամ այն պետական պաշտոնի թեկնածուի հարցը... Հսկայական հարստությունն այդ տիպի հարցերի լուծման գլխավոր դատավորն է դառնում... քաղաքականությունը՝ հարուստների սպորտային խաղ»: Եվ որքան ավելի է «զարգանում» ամերիկյան դեմոկրատիան, այնքան ավելի է ֆինանսական գործոնի դերը մեծանում: Եթե, օրինակ, Ա. Լինկոլնը 1860 թ. պրեզիդենտական ընտրական կամպանիայի վրա ծախսել էր 100 հազար դոլար, ապա այժմ «խաղագումարը» հասնում է տասնյակ միլիոնների: Ըստ ամերիկյան հետազոտող Ջ. Ուիթքովերի, 1976 թ. հանրապետական և դեմոկրատական կուսակցությունները պրեզիդենտության իրենց թեկնածուների կամպանիաների ֆինանսավորման համար ծախսել են ավելի քան 545 միլիոն դոլար: Այս իմաստով բնական է, ինչպես գրում է Ուիթքովերը, որ պայքարը ԱՄՆ-ի պրեզիդենտի պաշտոնի համար դարձել է այժմ «ոչ այնքան գաղափարների քննարկում և թեկնածուների ընդունակությունների վերհանում, որքան ուժի վրա հիմնված քաղաքական կազմակերպությունների կողմից օգտագործվող... տեխնիկական ու ֆինանսական հսկայական միջոցների մրցակցություն»:

Նման պայմաններում, իհարկե, հնարավոր են «քաղաքական ընտրության ազատությունն» ու «հնարավորությունների հավասարությունը» բայց միայն այն կուսակցությունների ու անձանց համար, որոնք մտնում են բուրժուական դիկտատուրայի սիստեմի մեջ: Ինչ վերաբերում է իսկապես օպոզիցիոն քաղաքական կուսակցություններին, ձախ արհմիություններին, այն կազմակերպություններին ու միություններին, որոնք չեն մտնում բուրժուական դիկտատուրայի սիստեմի մեջ և կոչված են պաշտպանելու աշխատավոր մարդկանց իրավունքներն ու ազատությունները, ապա այդ կուսակցություններն ու կազմակերպությունները, հակառակ ազատության ու դեմոկրատիայի մասին պլյուրալիզմի ջատագովների ֆրազների, ենթարկվում են հետապնդումների ու հալածանքների: Նրանց նպատակները, տեսական դրույթները, քաղաքական պայքարի մեթոդները վարկաբեկելու համար լայնորեն օգտագործվում են «ազատ» մամուլը, կապիտալիստների ձեռքում եղած պրոպագանդայի հզոր միջոցները: Բուրժուազիան անում է ամեն բան, որպեսզի աշխատավորական զանգվածներին ու վերջիններիս շահերը պաշտպանող կազմակերպություններին թույլ չտա մասնակցելու պետական կառավարմանը: Այդ մասին է վկայում, վերջապես, ամերիկյան օրենսդիր բարձրագույն մարմնի՝ կոնգրեսի սոցիալական կազմի վերլուծությունը: Կոնգրեսականների 83 տոկոսը բանկիրներ և արդյունաբերող-



ներ են, 16 տոկոսը՝ բժիշկներ, պրոֆեսորներ, ինժեներներ և ընդամենը 1 տոկոսը՝ բանվորներ ու ֆերմերներ: Եվ դա այն դեպքում, երբ վերջիններս կազմում են ԱՄՆ-ի ազգաբնակչության 75 տոկոսը: Պատահական չէ, որ իրենք՝ ամերիկացիները, սենատն անվանում են «միլիոնատերերի ակումբ»:

Իր դիկտատուրան պահպանելու համար բուրժուազիան գաղափարախոսական ազդեցության միջոցները զուգակցում է սոցիալական վերահսկողության սիստեմի և բյուրոկրատական-ռեպրեսիվ ապարատի այնպիսի լծակների հետ, ինչպիսիք են ռազմականացված, տեխնիկայի վերջին խոսքով զինված հատուկ ծառայությունները, ռասիստական բնույթի կազմակերպությունները, արդարադատությունը: Վերջիններս կոչված են հետապնդելու, պատժելու իրենց սոցիալ-քաղաքական իրավունքների ու ազատությունների համար պայքարող ռասայական ու ազգային փոքրամասնություններին, բոլոր այն քաղաքացիներին, որոնց քաղաքական համոզմունքները, գործունեությունը չեն համապատասխանում ընդունված ստանդարտներին: ԱՄՆ-ում, ինչպես ի լուր աշխարհի ստիպված էր հայտարարել ՄԱԿ-ում այդ երկրի նախկին մշտական ներկայացուցիչ Է. Յանգը, կան հազարավոր քաղաքական բանտարկյալներ: ԳՖՀ-ում, չնայած դեմոկրատական հասարակայնության բողոքին, երկար տարիներ գործում է, այսպես կոչված, «մասնագիտություններ արգելող» օրենքը, ըստ որի իշխանություններն ու հետադիմական ուժերը «սահմանադրությանը թշնամաբար վերաբերվելու» մեղադրանք են հարուցում բոլոր նրանց դեմ, ում քաղաքական համոզմունքները թեկուզ և փոքր-ինչ չեն համապատասխանում պաշտոնական կուրսին: Հիշյալ օրենքի զոհն են դառնում ո՛չ միայն կոմունիստները, այլև սոցիալ-դեմոկրատները, դեմոկրատական մտավորականության անկուսակցական ներկայացուցիչները (տե՛ս В. Е. Гулиев, Н. Н. Деев. Кризис современной буржуазной демократии. М., 1978, стр. 39):

Հանրահայտ է, որ այնպիսի համաշխարհային-պատմական մի պրոցես, ինչպիսին արդի գիտատեխնիկական հեղափոխությունն է, հետզհետե ավելի ու ավելի մեծ ազդեցություն է գործում անհատի և հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտների, մասնավորապես, սոցիալ-քաղաքական պրոցեսների բնույթի և ընթացքի, պետական կառավարման ֆունկցիաների իրականացման ձևերի վրա: Տվյալ հասարակարգի դեմոկրատիզմի կարևորագույն ցուցանիշներից մեկն էլ այն է, թե սոցիալ-քաղաքական առումով ինչպե՞ս են օգտագործվում գիտության ու տեխնիկայի հաստումները, արդյոք ծառայո՞ւմ են մարդուն, ընդլայնո՞ւմ են նրա ազատության շրջանակները:

Արևմուտքի դեմոկրատական հասարակայնությունը լրջորեն մտահոգված է այն փաստով, որ պետական մոնոպոլիստական կապիտալիզմը յուրովի է կիրառում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները՝ վերջիններս ի սպաս դնելով բյուրոկրատիզմին, անձի և ազատության ճնշմանը: Ըստ ամերիկյան լրագրողներից մեկի, Միացյալ Նահանգների քաղաքացիները դարձել են «էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով հագեցած քաղաքական սիստեմի պասիվ բնակիչներ», «բյուրոկրատական ձեռնարկությունների առարկա»: Էլեկտրոնային-հաշվիչ մեքենաների օգնությամբ իշխանությունները, հատուկ ծառայությունները «թափանցում են» մարդկանց կյանքի ամենախնտիմ անկյունները, հետևում նրանց ամեն մի քայլին: Մարդիկ դառնում են «սանրված սոցիալական միջավայրի բնակիչներ, որտեղ չի կարելի ապրել՝ առանց հետք թողնելու»: ԱՄՆ-ի հետաքննությունների ֆեդերալ բյուրոն ունի ավտոմատացված միասնական ինֆորմացիոն համակարգ, որի օգնությամբ անսահմանափակ քանակությամբ հավաքվում, պահպանվում և անհրաժեշտության դեպքում օգտագործվում են ամերիկյան ցանկացած քաղաքացուն վարկաբեկող տվյալներ: Ըստ վերոհիշյալ հանձնաժողովի հաշվետվության, հետաքննությունների ֆեդերալ բյուրոյի միայն կենտրոնական ցանցում կուտակված է ավելի քան 500 հազար գործ՝ ամենատարբեր քաղաքական խմբերի ու անձանց վերաբերյալ, որոնց երբևէ կասկածել են «քաղաքականապես լոյալ չլինելու» մեջ:

Ինչպես նշվում է ԱՄՆ-ում մարդու իրավունքների դրության վերաբերյալ ամերիկյան կոմկուսի հայտարարության մեջ, «Միացյալ Նահանգների ֆեդե-

րալ հասարակությունները հրեշավոր կերպով ոտնահարում են սահմանադրու-
թյամբ հռչակված մարդու քաղաքացիական իրավունքները՝ խոսքի, մամուլի,
ժողովների ազատությունը, անձի անձեռնմխելիության իրավունքը, բնակարա-
նի, նամակագրության, անհիմն ոտնձգություններից ունեցվածքի պահպանման
իրավունքը»:

Սակայն գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները ԱՄՆ-ի կա-
ռավարող շրջաններն օգտագործում են մարդու իրավունքներն ու ազատություն-
ները ոտնահարող առավել հրեշավոր ու հեռուն գնացող նպատակների համար:
Դեռևս քառասնական թվականներից հետախուզական վարչությունների գիտու-
թյամբ և ցուցումով Միացյալ Նահանգների մի շարք գիտական կենտրոններում
ոչինչ չկասկածող քաղաքացիների վրա փորձեր են կատարվել, որոնց նպա-
տակն էր քիմիական ու բիոքիմիական միջոցների օգնությամբ ազդել մարդ-
կանց ուղեղի ֆունկցիաների և վարքի վրա: Այստեղից հասկանալի է դառնում,
թե ինչու է «մարդու իրավունքների ջատագով» հակակոմունիստ Զ. Բժեզինսկին
«տեխնոտրոն հասարակության» իր սոցիալական իդեալի բնորոշ գիծը համա-
րում «մարդկանց ուղեղի ֆունկցիաների և վարքի վրա» նորագույն գիտության
միջոցներով ազդելու «գայթակղությունն ու հնարավորությունը»:

Կապիտալիստական հասարակարգում մարդու իրավունքների ոտնահար-
ման, ազատությունների ճնշման բազմաթիվ փաստերը վկայում են, որ բուր-
ժուական դեմոկրատիայի ջատագովները ոչ մի ռեալ կոչան չեն կարող հակա-
դրել սոցիալիզմի իդեալներին ու իրականությանը: Եվ «...ի՞նչ կարող են հա-
կադրել,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— զարգացած սոցիալիզմի... ռեալ նվաճում-
ներին կապիտալիստական կարգերի ջատագովները... Տասնյակ միլիոնավոր
մարդկանց գործազրկության «իրավո՞ւնքը», թե՞ հիվանդների «իրավունքը»
յոլա գնալու առանց բուժօգնության, որը հսկայական փող արժե: Թե՞ աշխա-
տանքում և կրթության բնագավառում, կենցաղում և քաղաքական կյանքում
ստորացուցիչ խտրականության ենթարկվելու ազգային փոքրամասնություն-
ների «իրավունքը»: Կամ գուցե կազմակերպված ամենազոր հանցագործ աշ-
խարհի հանդեպ միշտ ահ ու սարսափի մեջ ապրելու և այն ամենը տեսնելու
«իրավո՞ւնքը», թե՞ ինչպես մամուլն ու կինոն, հեռուստատեսությունն ու ռա-
դիոն ամեն բան անում են երիտասարդ սերնդին դաստիարակելու եսամոլու-
թյան, դաժանության ու բռնության ոգով» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 673):

Արդի բուրժուական գաղափարախոսները չեն կարող մատնանշել ռեալ
դեմոկրատիայի և ոչ մի էական դրսևորում, քանի որ այդպիսին գոյություն
չունի այդ հասարակարգի ո՛չ տնտեսական, ո՛չ քաղաքական ոլորտներում: Կա-
պիտալիզմի երդվյալ պաշտպան Դ. Բելը ստիպված է խոստովանել, որ բուր-
ժուական իրավունքներից ու ազատություններից շատերը, ըստ էության, ձևա-
կան են, և որ «կապիտալիզմ» ու «դեմոկրատիա» հասկացությունները դարձել
են անհամատեղելի:

Մարքսիստական գրականության մեջ իրավամբ նշվում է, որ մեր օրերում
դեմոկրատիզմի և ռեալ հումանիզմի կարևորագույն չափանիշ է տվյալ հասա-
րակարգի վերաբերմունքը պատերազմի ու խաղաղության, միջազգային լար-
վածության թուլացման հարցերի նկատմամբ: Մարդկային հասարակության
ապագան և դեմոկրատիայի ճակատագիրը էապես պայմանավորված են ար-
դիականության հիմնական հարցի՝ պատերազմի ու խաղաղության խնդրի լուծ-
մամբ, ժողովուրդների անվտանգության ապահովմամբ:

ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց. «...եթե ռեալ սպառնալիք է ծագում
մոնոպոլիստական կապիտալի և նրա քաղաքական դրածոների տիրապետու-
թյան համար, իմպերիալիզմը դիմում է ամեն ինչի՝ դեն նետելով որևէ դեմո-
կրատիայի ամեն մի երևութականություն: Նա պատրաստ է ոտնահարելու թե՛
պետությունների սուվերենությունը և թե ամեն մի օրինականություն, չխոսելով
արդեն մարդասիրության մասին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 45):
Այդ են ապացուցում Վիետնամի, Չիլիի, Նիկարագուայի, Իրանի, Աֆղանստա-
նի, Սալվադորի, ինչպես նաև բազմաթիվ այլ երկրների օրինակները: Եվ պա-
տահական չէ, որ իմպերիալիստական պետություններից շատերը չեն միացել



մարդու իրավունքների վերաբերյալ ՄԱԿ-ի ընդունած, ինչպես նաև միջազգային
այլ համաձայնագրերի, որոնց հիմքում ընկած են հումանիստական այնպիսի
սկզբունքներ ու գաղափարներ, ինչպիսիք են ժողովուրդների ու ազգերի ինքնո-
րոշումը, պատերազմի պրոպագանդան և ժողովուրդների միջև ատելություն
սերմանելու պրակտիկան դատապարտելն ու կանխելը: Այդ համաձայնագրերից
շատերն ընդունվել են ՍՍՀՄ-ի, սոցիալիստական համագործակցության երկր-
ների ու խաղաղասեր մյուս պետությունների համառ ջանքերի շնորհիվ՝ իմպե-
րիալիստական պետությունների դիմադրության պայմաններում:

Մասսայական ոչնչացման զինատեսակների առկայության և իմպերիալիզ-
մի ագրեսիվ նկրտումներն իրականացնելու համար դրանց կիրառման հավա-
նականության պայմաններում խաղաղության, դեմոկրատիայի, մարդու իրա-
վունքների պրոբլեմի լուծման գործում հսկայական դեր ունեն սոցիալիստական
երկրների նախաձեռնությամբ 1975 թ. Հելսինկիում կայացած համաեվրոպա-
կան խորհրդակցության արդյունքները, ինչպես նաև ՍՄԿԿ ու սովետական պե-
տության նախաձեռնությամբ 70-ական թվականներին ԱՄՆ-ի հետ կնքված
ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ հա-
մաձայնագրերը: Սովետական պետությունը ո՛չ միայն խստիվ պահպանում
է մարդու խաղաղ կյանքի իրավունքը պաշտպանող բոլոր պայմանագրերը,
այլև միջազգային ասպարեզում ակտիվորեն հանդես է գալիս հումանիստական
նորանոր նախաձեռնություններով: Դրա վկայությունն է աշխատավորների ար-
մատական շահերին սոցիալիստական պետության ինչպես ներքին, այնպես էլ
արտաքին քաղաքականության լրիվ համապատասխանությունը: Այս տեսա-
կետից հսկայական միջազգային նշանակություն ունեն ՍՍՀՄ նոր սահմանա-
դրությունում տեղ գտած միջպետական հարաբերությունների այն տասը հիմ-
նարար սկզբունքները, որոնք վավերագրված են Հելսինկիի խորհրդակցության
եզրափակիչ փաստաթղթում: Սա օրենսդրական պրակտիկայի համաշխարհա-
յին առումով եզակի փաստ է: 80-ական թվականների շեմին ՍՍՀՄ-ն ու
սոցիալիստական մյուս երկրները, ղեկավարվելով երկրագնդի վրա կայուն խա-
ղաղության ու վստահության մթնոլորտ ստեղծելու, սպառազինությունների
անմիտ մրցավազքը սանձահարելու ազնիվ, մարդասիրական մղումներով,
հանդես եկան ժողովուրդների արմատական շահերից բխող նոր կոնստրուկտիվ
առաջարկություններով:

Ամերիկյան իմպերիալիզմի գաղափարախոսներն այժմ արդեն, հավանա-
բար, այնքան էլ ուրախ չպետք է լինեն, որ ռեալ սոցիալիզմի ու կոմունիզմի
դեմ պայքարի ճակատ ընտրեցին մարդու իրավունքների պրոբլեմը: Վերջինիս
շուրջ ծավալված գաղափարախոսական պայքարը աներկբայորեն ցույց տվեց,
որ հենց կապիտալիզմն է ամեն օր ու ամեն ժամ կոպիտ կերպով ոտնահարում
աշխատավոր մարդու, ժողովրդական լայն զանգվածների դեմոկրատական
իրավունքներն ու ազատությունները: Հրապարակորեն դնելով արդիականու-
թյան հրատապ դեմոկրատական-հումանիստական, բարոյագաղափարախոսա-
կան պրոբլեմները, հակակոմունիզմը, բուրժուական պրոպագանդան կարճա-
տեսորեն հաշվի չառան այդ ակցիայի հեռուն գնացող հետևանքներն իրենց իսկ
համար: Այդ մասին են վկայում նրանցից ոմանց խոստովանությունները: Արև-
մտյան հակակոմունիստական կենտրոններից մեկի՝ Սովետական Միության
և Արևելյան Եվրոպայի ուսումնասիրությունների ինստիտուտի դիրեկտոր Ալեք
Նոուվը նկատել է. «...պրեզիդենտ Քարտերի քաղաքականությունը մարդու
իրավունքների հարցում պարզապես փակուղու առաջ է կանգնեցնում արևմտյան
շատ պետական գործիչների... իբրև լուրջ և ընդունելի քաղաքականություն այն
կասկած է հարուցում»:

Հակակոմունիզմն ու հակասովետիզմը միշտ էլ աչքի են ընկել դեմոկրա-
տիայի հետ ընդհանուր ոչինչ չունեցող իրենց անպատկառ սոցիալական երկե-
րեսանիությամբ, փաստերի ու իրադարձությունների ռեալ իմաստը նենգափո-
խելու իրենց միտումով: Նրանցում ողջախոհությունը գնալով ավելի ու ավելի
է իր տեղը զիջում նեղ դասակարգային բնազդներին: Այս հանգամանքը հատ-
կապես ցցուն կերպով է դրսևորվում ամբողջովին նախընտրական ամիսաժով

պայմանավորված Քարտերի վարչակազմի վարած ներկայիս քաղաքականության մեջ։ Ըստ վերջինիս «տրամաբանության», ստացվում է, որ, օրինակ, միջազգային անվտանգության ապահովումը պահանջում է Է՛լ ավելի խթանել սպառազինությունների մրցավազքը, իսկ լարվածության թուլացումն ու զինաթափումը, ընդհակառակը, անհարիր է ժողովուրդների անվտանգությանը։ Ինչ վերաբերում է ազգային անկախության համար ժողովուրդների մղած պայքարին, ապա դա հակասում է նրանց սոցիալական առաջընթացին, քանի որ հակասում է Միացյալ Նահանգների «կենսական» շահերին (վերջիններիս տակ հասկացվում են տարազգային մոնոպոլիաների շահերը)։

Նախընտրական այդ աժիոտաժին նվիրված իր վերջին հոդվածներից մեկում ամերիկյան հայտնի քաղաքական մեկնաբան Ջեյմս Ռեստոնը խոստովանում է, որ պրեզիդենտության թեկնածուներից և ոչ մեկը ըստ էության «չի ձևակերպում այն լուրջ պրոբլեմները, որոնք առաջիկա տարիներին իրենց լուծումն են պահանջում. ինչպես վերահսկել ինֆլյացիան, կրճատել գործազուրկների թիվը, սանձահարել սպառազինությունների մրցավազքը... ինչպես կրթել մեր երեխաներին և հաղթահարել մեր անձնական ու ընտանեկան կյանքի բարոյական զազրելիությունը»։ Կարելի է միայն ավելացնել, որ այդ «զազրելի» բառերով են ներթափանցված ոչ միայն բուրժուական անձնական ու ընտանեկան, այլև ողջ հասարակական քաղաքական կյանքը։

Ժողովուրդները համոզվում են, որ խաղաղության համար պայքարը հռչակելով իբրև իր արտաքին քաղաքականության գլխավոր նպատակ, սոցիալիզմն անշեղորեն հետևում է այդ կուրսին, որ սոցիալիզմն ու խաղաղությունը անբաժանելի են, և որ մեր ժամանակներում մարդու գլխավոր իրավունքի՝ խաղաղ կյանքի իրավունքի երաշխիքը ռեալ սոցիալիզմի գոյությունն է։

«Մենք,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— հիմքեր չունենք խույս տալու մարդու իրավունքների մասին լուրջ խոսակցությունից։ Մեր հեղափոխությունը, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակը ո՛չ միայն հռչակել, այլև ռեալ կերպով ապահովել են ամեն մի ազգության պատկանող աշխատավոր մարդու իրավունքները, աշխատավորների միլիոնավոր մասսաների իրավունքներն այնպես, ինչպես այդ չի կարողացել անել կապիտալիզմը աշխարհի ոչ մի երկրում» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 447)։ Մարդու իրավունքների պաշտպանության բնագավառում սովետական սոցիալիստական պետության օրինակը ոգեշնչում և մոբիլիզացնում է բոլոր երկրների աշխատավորներին դեմոկրատիայի և հասարակական առաջընթացի համար նրանց պայքարում։

---

Հաշվետվություններն և ընտրությունները կուսակազմակերպություններում

# ԳԼԽԱՎՈՐ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ

**Ռ. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ

ԱՎԱՐՏԻՆ Է ՄՈՏԵՆՈՒՄ տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին, ի մի են բերվում կուսակցության XXV համագումարի վիթխարածավալ ծրագրերի իրականացման արդյունքները, լայն թափ է ստանում ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստությունը։ Կոմունիստական կուսակցությունն իր մեծ համաժողովին ընդառաջ է գնում որպես միաձույլ հասարակական-քաղաքական հզոր մի ուժ, որի ազդեցությունը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում, հիրավի, հսկայական է։ Կուսակցության հերթական համագումարի նախապատրաստությունն աշխատավորական կոլեկտիվների ակտիվության բարձրացման հզոր լծակ է։ Այն պատասխանատու շրջան է յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի կյանքում։

Համագումարի նախապատրաստությանը նախորդում են սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները։ Այդ ժողովներում կոմունիստները հանրագումարի են բերում իրենց գործունեության արդյունքները, ընդհանրացնում լավն ու ուսանելին, սկզբունքային քննադատության գիրքերից բացահայտում աշխատանքի տարբեր տեղամասերում եղած թերությունները ու թերացումները, նշում դրանց վերացման գործնական և արդյունավետ ուղիներ։

Հաշվետու ժամանակաշրջանում մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների գործունեությունը նպատակամղված է եղել ՍՄԿԿ XXV համագումարի ծրագրային որոշումների հետևողական կենսագործմանը, տասներորդ հնգամյակի լարված պլանների իրականացմանը։ Կուսկազմակերպությունները մոբիլիզացրել են աշխատավորական կոլեկտիվների ջանքերը՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում նոր նվաճումներ ձեռք բերելու համար։

Հնգամյակի անցած տարիներին մեր հանրապետությունում լուծվել են սոցիալ-տնտեսական բազմաթիվ էական խնդիրներ։ Ժողովրդական տնտեսության պլանները հաջողությամբ կատարելու և համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու համար Սովետական Հայաստանը չորս անգամ նվաճել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։

Հաջողությամբ են իրականացվում նաև հնգամյակի վերջին տարվա ծրագրերը։ Դրան մեծապես խթանում է ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել

գործերով դիմավորելու համար սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Ներգրավվելով համամիութենական սոցմրցության մեջ՝ հանրապետության աշխատավորական կոլեկտիվները կանգնել են նախահամագումարյան հերթափոխի։ Նրանք ստանձնում են բարձր պարտավորություններ և պատրաստակամություն են հայտնում կատարել ու գերակատարել տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի պետական պլանները, ամուր հիմք ստեղծել նոր հնգամյակը հաջողությամբ սկսելու համար։ Հանրապետության արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատավորական կոլեկտիվներում լայն տարածում է գտել «ՍՄԿԿ XXVI համագումարին՝ 26 հարվածային շաբաթ» հայրենասիրական շարժումը։

Հանրապետության աշխատավորները հայ ժողովրդի ազգային վերածննդի մեծ տոնը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման ու Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյա հոբելյանը դիմավորում են աշխատանքային ու քաղաքական վիթխարի վերելքի պայմաններում։

Խորհրդանշական է, որ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, որոնց անցկացումը զուգադիպում է պատմական տարելիցի նախապատրաստությանը, կոմունիստները, ձեռք բերված հաջողությունները տվյալ հաշվետու ժամանակաշրջանի տեսանկյունով գնահատելով հանդերձ, օրինական հպարտության զգացումով ընդհանրացնում են վեց տասնամյակների ստեղծագործ աշխատանքի արդյունքները, նշում այն բախտորոշ դերը, որ հայ ժողովրդի ազգային վերածննդի գործում խաղաց սովետական իշխանությունը։

ՍՄԿԿ XXV համագումարը բարձր գնահատեց սկզբնական կուսակցական կազմակերպությունների տեղն ու դերը։ Կուսակցական կազմակերպությունները, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «...իրենց ամբողջ աշխատանքով ակտիվորեն նպաստում են կուսակցության քաղաքականության միահյուսմանը մասսաների կենդանի ստեղծագործության հետ, տնտեսական-քաղաքական և գաղափարադաստիարակչական խնդիրների հաջող լուծմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 100)։ Ահա թե ինչու հսկայական կարևորություն ունի սկզբնական կուսկազմակերպության, նրա ներքին օղակների՝ կուսխմբերի ու արտադրամասային կազմակերպությունների մարտունակության բարձրացումը։ Գտնվելով տնտեսական ու կուլտուրական շինարարության առաջին բնագծում, այնտեղ, ուր փաստորեն վճռվում է մեր պլանների բախտը, այդ օղակներն իրենց գործունեությամբ որոշիչ ազդեցություն են ունենում կուսակցության առաջադրած կարևորագույն խնդրի՝ որակի և արդյունավետության անշեղ բարձրացման, կոմունիստական իդեալների ոգով մարդկանց դաստիարակության խնդրի հաջող լուծման վրա։ Տասներորդ հնգամյակի մեր նվաճումները հիմնականում արդյունք են այն բանի, որ սկզբնական կուսկազմակերպությունները էապես կատարելագործել են իրենց աշխատանքի ոճը, բարձրացրել քաղաքական-մասսայական աշխատանքի մակարդակը։ Կոմունիստները համակված են այն բանի հստակ գիտակցությամբ, որ կուսակցական ամենափոքր օղակում անգամ վճռվում են կարևոր հարցեր, որ յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի ջանքերի միաձուլումից են ստեղծվում մեծ հաջողությունները։ Կուսկազմակերպությունները, մարտական ծրագիր ունենալով ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումները, սկզբունքային պայքար ծավալեցին ժողովրդատնտեսական խնդիրները լուծելու, գաղափարական-քաղաքական աշխատանքը արմատապես բարելավելու, թերություններն ու թերացումները վերացնելու համար։

Հաշվետվություններն ու ընտրությունները, որ անցկացվում են ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1980 թ.) պլենումի որոշմամբ և ըստ կուսակցության կանոնադրության, արդեն ավարտվել են ներքին օղակներում՝ կուսակցական խմբերում և արտադրամասային կուսկազմակերպություններում։ Դրանք անցել են բարձր կազմակերպվածությամբ, կոմունիստների ակտիվության մթնոլորտում։

Ի՞նչն է բնորոշ արդեն ավարտված կուսակցական խմբերի և արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին։ Նախ և առաջ՝



կազմակերպվածությունը, գաղափարաքաղաքական բարձր մակարդակը, կոմունիստների մեծ ակտիվությունը։ Այդ ժողովներին մասնակցել են առավելագույն թվով կոմունիստներ՝ նրանց ընդհանուր թվի 98 տոկոսը, իսկ հաշվետու զեկուցումների շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը՝ շուրջ 36,5 տոկոսը։

Ժողովները ցույց տվեցին, որ նկատելիորեն բարձրացել է կոմունիստների ավանգարդային դերը։ Կատարելով կուսակցության XXV համագումարի որոշումները, նրանք զգալիորեն բարելավել են կազմակերպական, գաղափարաքաղաքական աշխատանքները։ Բարձրացել է կուսակցության յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը այն ամենի համար, ինչ կատարվում է տվյալ ձեռնարկությունում կամ տնտեսությունում։ Կոմունիստը դառնում է օրինակելի կազմակերպիչ, կոլեկտիվում իր օրինակի ուժով դաստիարակում է գործընկերներին, շրջապատի մարդկանց։

Հաշվետու-ընտրական ժողովներում խորությամբ ու համակողմանի վերլուծվեց յուրաքանչյուր կուսակցական խմբի, արտադրամասային և սկզբնական յուրաքանչյուր կազմակերպության, ամեն մի կոմունիստի գործունեությունը՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում առաջ քաշված խնդիրների լուծման ասպարեզում։

Հաշվետու-ընտրական ժողովներում համակողմանիորեն քննարկվում են տվյալ ձեռնարկության կամ տնտեսության կոմունիստների համար կենսական նշանակություն ունեցող բազմազան հարցեր։ Սահմանվում են կոմունիստների խնդիրները առաջիկա ժամանակահատվածի համար։ Իսկ դա նշանակում է՝ ավելի ու ավելի բարձրացնել սկզբնական օղակի, յուրաքանչյուր կոմունիստի դերն ու պատասխանատվությունը աշխատանքի վերջնական արդյունքի ստացման գործում, բարելավել ընդունած որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումը։

Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստության ողջ ընթացքը նպաստեց այն բանին, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ դրսևորի կոմունիստին հատուկ այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են՝ հարվածայնությունը, գործնական հայրենասիրությունը, ինտերնացիոնալիզմը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, պարտքի բարձր գիտակցումը կոլեկտիվի, նրա գործերի համար։

Նախապատրաստվել հաշվետու-ընտրական ժողովի՝ նշանակում է բարելավել կուսակցական տվյալ օղակի գործունեությունը, ծավալել ներկուսակցական դեմոկրատիան, կարողանալ քննադատաբար, ընկերական մթնոլորտում վերլուծել արդյունքները, տալ սեփական գործունեության ճիշտ գնահատականը՝ ելնելով այն նոր խնդիրներից, որ ներկա փուլում առաջադրել է կուսակցությունը։

Հաշվետու-ընտրական ժողովների հաջողության գլխավոր պայմանը քաղաքական ու կազմակերպական բարձր մակարդակով դրանց անցկացումն է։ Իսկ դա նշանակում է, ելնելով կուսակցության պահանջներից, խնամքով ու անթերի նախապատրաստել ժողովը, դրան ակտիվորեն մասնակից դարձնել բոլոր կոմունիստներին, հասնել այն բանին, որ նրանք գործնական ելույթներ ունենան հաշվետու զեկուցման շուրջ, խորությամբ վերլուծեն կուսկազմակերպության, նրա բյուրոյի, կոմունիստ ընկերների աշխատանքը, տարբեր տեղամասերի գործերի վիճակը։

Հանրապետությունում հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստության ընթացքը և անցկացումը ամենուրեք եղել են կուսակցության քաղկոմ-շրջկոմների ուշադրության կենտրոնում։ Նրանց բյուրոների նիստերում քննարկվել են ժողովների անցկացմանն առնչվող բազմաթիվ հարցեր, անցկացվել են հրահանգչական խորհրդակցություններ, քարտուղարների սեմինարպարապմունքներ։

Հաշվետու-ընտրական ժողովի հաջողությունը պայմանավորված է նաև այն բանով, թե հաշվետու զեկուցումը ինչպես է կազմված՝ կոլեկտիվ ուժերո՞վ, թե՞ միայն քարտուղարի ջանքերով, քննարկվե՞լ է այն, արդյոք, բյուրոների ու կոմիտեների նիստերում, պատասխան տալի՞ս է կոմունիստներին հուզող հար-

ցերին, կոնկրե՞տ է, գրված է քննադատական ոգո՞վ, թե՞ շրջանցում է սուր հարցերը, հուզո՞ւմ է կոմունիստներին, հարուցո՞ւմ է մտքեր փոխանակելու ցանկություն...

Հաշվետու-ընտրական ժողովը կոմունիստների քաղաքական հասունության քննությունն է, աշխատանքային հաջողությունների ստուգատեսը, պատասխան է տալիս այն հարցին, թե արդյոք յուրաքանչյուր կոմունիստ իր տեղամասում կարողանո՞ւմ է հասնել աշխատանքի ամենաբարձր արտադրողականության, գիտակցո՞ւմ է որակի և արդյունավետության բարձրացման համար մղվող պայքարի կարևորությունը, ինչպիսի ավանդ է ներդնում կուսակցության կուրսի իրականացման գործում: Կոմունիստը պարտավոր է պայքարել խնայողության խստագույն ռեժիմի կիրառման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար, քայլել մրցության առաջին շարքերում:

Այնտեղ, որտեղ ամուր հիմքերի վրա է աշխատանքային, քաղաքական, բարոյական դաստիարակության գործը, մեծ են հաջողությունները թե՛ անձնական և թե կոլեկտիվ պլանների կատարման ասպարեզում: Հետևաբար, կուսակցության քաղկոմ-շրջկոմները, կուսակցական կոմիտեները պետք է ամբողջ կամպանիայի ընթացքում հսկողություն իրականացնեն հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման ու անցկացման նկատմամբ, ելնելով արդի փուլում կուսակցության առաջադրած խնդիրներից և նրա կանոնադրական պահանջներից:

Հաշվետու-ընտրական ժողովները հիմնականում անցնում են գործարար մթնոլորտում, քննադատության և ինքնաքննադատության պայմաններում: Ուշադրությունը հիմնականում բևեռվել է չլուծված հարցերի վրա, միջոցներ են ձեռնարկվել՝ կատարելու ՍՄԿԿ անդամների ելույթներում առաջ քաշված դիտողություններն ու առաջարկությունները: Այսպես, հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում միայն կուսակցական խմբերում արվել են 5983 քննադատական դիտողություններ. կարճ ժամանակամիջոցում դրանցից շուրջ 2552-ին ընթացք է տրվել: Արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում արվել են շուրջ 3432 քննադատական դիտողություններ, որոնցից 1285-ին ընթացք է տրվել, իսկ սկզբնական կազմակերպություններում առաջ քաշված 2412 հարցերից լուծվել է 929-ը: Կոմունիստները ժողովներում արծարծում են այնպիսի հարցեր, որոնք վերաբերում են արտադրության կատարելագործմանը, արտադրանքի որակի բարձրացմանը, կուսակցության ագրարային քաղաքականության իրականացմանը, խնայողության ռեժիմի կիրառմանը: Այսպես, Հայաստանի կոմկուսի Երևանի կազմակերպության Սովետականի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում առաջադրված 177 հարցերից 105-ը կենսագործվել է:

Ղափանի սկզբնական կուսակցական կազմակերպություններում տեղի ունեցած ժողովներում առաջ քաշված հարցերը հիմնականում վերաբերել են արտադրության արդյունավետության բարձրացմանը, աշխատանքի և արտադրանքի որակի բարելավմանը, երիտասարդության ուժերի արդյունավետ օգտագործմանը, օբյեկտների ժամանակին գործարկմանը, գյուղատնտեսության բնագավառում՝ ոռոգելի հողատարածությունների ավելացմանը և այլն: Մի շարք կազմակերպությունների ժողովներում խստորեն քննադատվել են սպասարկման ոլորտում դեռևս տեղ գտած լուրջ թերությունները: Հասկանալի է, քննադատությունը, որն արված է գործերի վիճակի շտկման մտահոգությամբ և ամենայն սրտացավությամբ, պետք է արագորեն ընթացք ստանա:

Նախաձեռնությունը սովորաբար ծնվում է ներքին օղակում, այնտեղ, որտեղ ուժեղ են արտադրամասային կուսկազմակերպությունը, կուսակցական խումբը: Ահա թե ինչու Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մշտապես հոգ է տանում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության բարելավման մասին, կատարելագործում նրանց աշխատանքը: Միաժամանակ քաղկոմ-շրջկոմների ուշադրությունը բևեռվում է այն խնդրի վրա, թե ինչ պրոցեսներ են տեղի ունենում սկզբնական օղակներում, նրանց աշխատանքի բարելավման ինչպիսի դրական փորձ է կուտակվել:

Կուսակցական կոմիտեների առջև խնդիր է դրված՝ կատարելագործել



սկզբնական օղակների հետ տարվող աշխատանքը, որպեսզի դրանք բոլորն էլ ղեկավարվեն հեռանկարային պլանով, որը նախապես պետք է քննարկվի սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների նիստերում՝ խմբերի կամ արտադրամասերի ղեկավարների մասնակցությամբ: Կուսշրջկոմներն ու քաղկոմները, կուսակցական կոմիտեները պետք է պրակտիկ օգնություն ցույց տան կուսակցական նորընտիր աշխատողներին, բարձրացնեն ժողովների հեղինակությունը ներքին օղակներում: Անհրաժեշտ է արդյունավետ կերպով կազմակերպել խմբերի և արտադրամասային կուսկազմակերպությունների ղեկավարների ուսուցումը՝ մշտական գործող դասընթացներում, նրանց հաղորդել առաջավոր օղակներում կուտակած փորձը:

Էական խնդիր է արտադրամասային կուսակցական կազմակերպության և կուսխմբերի ազդեցության ուժեղացումը արտադրության արդյունավետության բարձրացման և աշխատանքի որակի բարելավման գործում:

Նախահամագումարյան սոցիալիստական մրցությանը տոն են տալիս կոմունիստները: Բայց և շատ կարևոր է ղեկավարի դերը աշխատանքի կազմակերպման, մրցությունը լայնորեն ծավալելու գործում: Եվ այն բանով, թե ո՞վ է ղեկավարում կուսակցական խումբը, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունը, պայմանավորված է ընդհանուր գործի հաջողությունը: Ահա թե ինչու կուսակցական կոմիտեները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն կադրերի ընտրության և ուսուցման հարցերին:

Ծավալելով աշխատանքային լարված գործունեություն՝ կոմունիստներն ուշադրությամբ առանձնացնում են այն գլխավորը, որ ձեռք են բերել կուսակցական խմբերը, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունները ամբողջ հնգամյակի ընթացքում: Ի՞նչը պետք է կիրառում գտնի նոր հնգամյակի տարիներին, ինչի՞ց պետք է հրաժարվեն կոմունիստները՝ ահա հարցեր, որոնց լուծումով են պայմանավորված ապագա ձեռքբերումները:

Վերջին շրջանում լայն տեղաշարժեր են կատարվել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ, բարձրացել են նրանց հեղինակությունն ու մարտունակությունը: Նրանք ամրապնդվել են քաղաքականապես ու կազմակերպչորեն, դրանով իսկ աճել է նրանց դերը հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում: Կուսակցական կազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել սոցիալիստական մրցության ձևերի կատարելագործմամբ, ավելի հետևողականորեն են կիրառում առաջավոր փորձը: Այդ ամենի շնորհիվ ռեալ հիմքերի վրա են դրված ստանձնած պարտավորությունների ընդունումն ու դրանց կենսագործումը: Միաժամանակ ուժեղացել է պայքարը տեղ գտած թերությունների վերացման համար. սկզբնական կուսկազմակերպություններն ակտիվորեն պայքարում են անտնտեսավարության, չարաշահումների դրսևորումների դեմ:

Այժմ կուսակցական ներքին օղակների համար գլխավորը ՍՄԿԿ XXVI համագումարին նախապատրաստվելն է: Բոլոր կուսխմբերի, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում ընդունվել են լրացուցիչ սոցիալիստական պարտավորություններ՝ կուսակցության մեծ համաժողովն արժանավայել դիմավորելու համար: Այժմ հարկ է ուշադրությամբ հետևել, թե ինչպես է ծավալվում ու զարգանում այդ մրցությունը, միաժամանակ, անհրաժեշտության դեպքում, այդ հարցերը քննարկել սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովներում:

Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «...հաշվետու ընտրական կամպանիան մեզ պարտավորեցնում է դարձյալ ու դարձյալ համակողմանի վերլուծել կուսակցության XXV համագումարի որոշումների կատարման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների աշխատանքը: Նոր համագումարի նախապատրաստությունը ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների քաղաքական և աշխատանքային ակտիվության վերելքի հզոր լծակ է»:

Կուսակցությունը պահանջում է առավելագույն եռանդ ներդնել՝ հաջողությամբ ավարտելու տասներորդ հնգամյակը, կայուն նախադրյալներ ստեղծել

տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա համար, է՛լ ավելի լայնորեն ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցումը: Այս ամենը կուսակցական կոմիտեներից, բոլոր կոմունիստներից պահանջում է լարված աշխատանք և եռանդուն ջանքեր: Ինչպես միշտ, կոմունիստները կգլխավորեն աշխատավորության նախահամագումարյան հարվածային հերթափոխը, ամեն ինչ կանեն հնգամյակի պլաններն ամբողջությամբ կատարելու համար:

Հոկտեմբերի 1-ից քաղաքներում և 15-ից՝ գյուղական վայրերում սկսվեց կուսակցական քաղաքական լուսավորության ցանցի նոր ուսումնական տարին: Կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում հանգամանորեն քննարկվում են ոչ միայն անցած ուսումնական տարվա արդյունքները, այլև նոր ուսումնական տարվա նախապատրաստման և առաջին պարապմունքների անցկացման հետ առնչվող հարցերը: Հաշվետու զեկուցումներում և ժողովների մասնակիցների ելույթներում շեշտը դրվում է քաղխմբակների և տեսական սեմինարների պարապմունքների քաղաքական մակարդակի բարձրացման, կոմունիստների գաղափարական կոփման անհրաժեշտության վրա: Ընդունված որոշումներում մեծ տեղ է հատկացվել կուսակցական քաղաքական լուսավորության ցանցի աշխատանքների բարելավման խնդիրներին:

Հանրապետության աշխատավորների համար 1980 թվականը հոբելյանական է. շուտով նշվելու է Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակը: Դրանից ընդամենը մոտ երկու ամիս անց՝ 1981 թ. հունվարին տեղի կունենա Հայաստանի կոմկուսի հերթական՝ XXVII համագումարը, որը կամփոփի կատարված աշխատանքի արդյունքները, կնշի հանրապետության տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման խնդիրները: Այդ նշանակալից իրադարձությունները հանրապետության աշխատավորները դիմավորում են տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր ոլորտներում ձեռք բերած տպավորիչ հաջողություններով, իրենց շարքերի ամուր համախմբվածությամբ, կուսակցության նշած խնդիրների իրականացման պատրաստակամությամբ:

Կուսակցական հաշվետու-ընտրական կամպանիան թևակոխում է իր ավարտական փուլը: Դա նշանակում է, որ հետզհետե նրա ոլորտի մեջ են ներգրավվում ավելի ու ավելի խոշոր կուսակցական ստորաբաժանումներ, ավելի ու ավելի են ընդլայնվում քննարկվող հարցերի մասշտաբներն ու շրջանակները: Խնդիրն այն է, որպեսզի ամեն մի կոնկրետ դեպքում առավելագույն գործիմացությամբ ու ճշգրտությամբ որոշվեն տվյալ տնտեսության, հիմնարկ-ձեռնարկության, միավորման, շրջանային ու քաղաքային կուսկազմակերպության անելիքները, հարցերի այն խումբը, որոնց լուծմանը ժամանակի տվյալ հատվածում պետք է նպատակամղվեն այս կամ այն աշխատավորական կոլեկտիվի ջանքերը:

---

# ՏՐԻԿՈՏԱԺԱԳՈՐԾՆԵՐԻ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

**ՃԵՐՄԱ՛Կ-ՃԵՐՄԱ՛Կ** թելիկներն ահա լույսի շողքերի պես ճառագայթում են դեպի վեր, ապա հավաքվում թմբկաձև սարքի եզրերին ու, ճնարամիտ մեքենայի ներսում միալար պտըտվելով, դառնում են նուրբ գործվածք: Մեքենաների անտառի մեջ այդ լուսե թելիկների ընթացքին ուշի-ուշով հետևում են ճերմա՛կ-ճերմա՛կ արտահագուստով կանայք: Հետևում են, որ հանկարծ թելիկներից մեկն ու մեկը չկտըրվի, շողքերից մեկը չպակասի...

Ափսոսում եմ, որ բանաստեղծ չեմ. թե չէ հենց այստեղ, այս ընդարձակ, լուսավոր սրահում, այս ջահել, սիրուն, աշխատասեր կանանց ու նրանց ազնիվ գործի մասին մի ջերմ ոտանավոր կգրեի...

— Սա մեր գործող արտադրամասն է:

Սթափվեցի հանելի գեղումից. ես տարվել էի աշխատանքի հոգեպարար հմայքով ու մի պահ մոռացել իմ ուղեկցին՝ մայրաքաղաքի Ալ. Մյասնիկյանի անվան № 1 տրիկոտաժի միավորման կուսբյուրոյի քարտուղար Դանիել Զարիկյանին, որի հետ ծանոթացել էի ընդամենը մեկ ժամ առաջ: Նախապես պայմանավորվել էինք հեռախոսով ու այդ օրը գնացի միավորման գլխամասային փաբրիկա: Զարիկյանն իր աշխատասենյակում չէր:

— Գնացել է արտադրամաս,— ասաց քարտուղարուհին,— հիմա կտեղեկացնեմ ձեր մասին:

Սպասեցի ընդունարանում: Քիչ անց ընդունարան մտավ միջահասակ, բարեկազմ մի տղամարդ և, ձեռքը մեկնելով ինձ, տվեց իմ ազգանունը:

— Չեք սխալվել,— ասացի ու մտանք պարզ ու համեստ կահավորված աշխատասենյակը: Բացատրեցի իմ այցելության նպատակը.

— Վաղը՝ սեպտեմբերի 16-ին, ձեր կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովն է, և ահա ես եկել եմ նախապես ծանոթանալու:

— Հաշվետու զեկուցումն արդեն պատրաստ է,— ասաց իմ զրուցակիցը և թղթապանակից հանեց մեքենագրված օրինակը:

— Չէ՛,— ասացի,— ես նախ ուզում եմ ծանոթանալ ձեզ հետ: Հետո կշրջենք փաբրիկայում, կտեսնենք, թե որտեղ և ում հետ են աշխատում ձեր կոմունիստները:

Թեև դա մեր առաջին հանդիպումն էր, բայց սրտաբաց զրույց ծավալվեց մեր միջև: Ես շատ ու շատ հարցեր ունեի պարզելու... Նախ իմացա, որ Դանիել Զարիկյանը կուսակցական աշխատանքի բավական մեծ փորձ ունի. բազմիցս ընտրվել է կուսբյուրոյի քարտուղար: Նրա աշխատանքային կենսագրությունը սկիզբ է առել այս փաբրիկայում, ուր և մինչև օրս աշխատում է:

1948 թվականին, երբ ընդամենը 15 տարեկան էր, ենթավարպետի աշակերտ էր, հետո դարձավ ենթավարպետ, իսկ հիմա գործող արտադրամասի նորոգող վարպետ է:

Նրա տարերքը մեքենաներն են, նորարարությունը: Հարյուրից ավելի ռացիոնալիզատորական առաջարկների հեղինակ է: Զարիկյանը հաջողությամբ է զուգակցում մասնագիտությունը կուսակցական աշխատանքի հետ: Երբ առաջին անգամ նա ընտրվեց կազմակերպության քարտուղար, այն բաղկացած էր ընդամենը 15 հոգուց, այժմ կազմակերպությունը տասնապատիկ մեծացել է: Ներկայումս փաբրիկան մասնաճյուղեր ունի Մասիսի շրջանի Արգավանդ գյուղում, Հրազդան քաղաքում, Անաստասավանում, Արագածի շրջկենտրոնում՝ Ծաղկահովտում: Կամոյի մասնաճյուղը աճեց, մեծացավ ու, անջատվելով միավորումից, դարձավ ինքնուրույն փաբրիկա:

Միավորումը մասնագիտացված է տրիկոտաժե սպիտակեղենի արտադրության մեջ: Հիմնական սպառողները Երևանի հանրախանութն է, «Մանկական աշխարհը», «Հայհագուստառի» բազան: Մեծ քանակությամբ սպիտակեղեն է ուղարկվում նաև Ռուսաստանյան Ֆեդերացիայի մոտ 80 առևտրական բազաներ:

...Տեքստիլ գործի վարպետ էր Դանիել Զարիկյանի հայրը: Վարպետ Բարսեղը 1932 թվականին Հունաստանից ընտանիքով տեղափոխվել է մայր հայրենիք և որպես մեխանիկ աշխատել Լենինականի տեքստիլ կոմբինատում: Հետո, երբ հիմնվել է այս փաբրիկան, նշանակվել է ձեռնարկության գլխավոր մեխանիկ: Դանիելի մայրն էլ էր տեքստիլագործ, իսկ այժմ՝ եղբայրները, իսկ նրանք հինգն են, իրենց ընտանիքներով, նրանց ողջ գերդաստանն է այստեղ:

Աշխատանքին զուգընթաց Դանիելը սովորել է բաներիտ դպրոցում, ավարտել: Արդեն 1949-

ին Զարիկյանը ընդունվել է կոմերիտմիության շարքերը, իսկ 1958 թվականից ՍՄԿԿ անդամ է: Այժմ նա Երևանի քաղսովետի դեպուտատ է, քանիցս ընտրվել է կուսակցության Երևանի քաղաքային կազմակերպության կոնֆերանսի պատգամավոր:

Դանիել Զարիկյանի հետ եղանք ֆաբրիկայի արտադրամասերում, տեսանք, թե բամբակե նուրբ թելերը որտեղից են սկսում իրենց ճանապարհորդությունը և որտեղ ավարտում այն: Այդ ամենը երեկ էր, իսկ այսօր նուրբ ու բարդ մեքենաները սպասարկող մարդիկ հավաքվել են ֆաբրիկայի ընդարձակ դահլիճ՝ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովի: Եվ նա՝ բանվորական գերդաստանի անդամներից մեկը, նորոգող վարպետ Դանիել Զարիկյանն ահա կանգնած է ամբիոնի մոտ ու հանդես է գալիս կուսբյուրոյի հաշվետվությամբ:

Ես փորձում եմ սղագրել Դանիել Զարիկյանի զեկուցման առանձին կտորներ, և դա ինձ մասամբ հաջողվում է: Ահա նա ասում է.

— Կուսբյուրոն և միավորման արտադրամասային կուսկազմակերպությունները մասսայական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը նպատակամղել են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած պատմական խնդիրները լուծելու և տասներորդ հնգամյակի պետական պլանները ու սոցիալիստական բարձր պարտավորությունները հաջողությամբ կատարելու նպատակին: Կուսկազմակերպությունը սոցմրցության մեջ բանվորներին ներգրավում է այն հաշվով, որ նրանցից յուրաքանչյուրը բարձր արտադրողական ու անձնվեր աշխատանքով ծանրակշիռ ավանդ մուծի արտադրական ծրագրերի և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում: Եվ ահա արդյունքը. միավորման կոլեկտիվն այս տարվա ապրիլի 19-ին, Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի նախօրյակին, ժամկետից ավելի քան ութ ամիս շուտ, կատարեց հնգամյա պլանը:

Մինչ կուսբյուրոյի քարտուղարը շարունակում էր զեկուցումը, մտաբերեցի միավորման արտադրամասերում և այլ տեղերում փակցված կարմիր պաստառները՝ «Արտադրական նվաճումներով դեպի ՍՄԿԿ XXVI համագումար», «Հարվածային աշխատանքով նշանավորենք մրցության յուրաքանչյուր օրը» և այլ կոչերով: Ապա նորից իմ ուշադրությունը բևեռվեց հաշվետու զեկուցմանը, ու ես սղագրեցի. «Յուրիկ Գրիգորյանի, Վահան Պետրոսյանի, Սուրեն Ադիխանյանի, Կիմա Եղիազարյանի, Ծուշիկ Խաչատրյանի ղեկավարած և մի շարք այլ բրիգադներ, ջերմորեն արձագանքելով «ՍՄԿԿ XXVI համագումարին՝ 26 հարվածային շաբաթ» համաժողովրդական շարժմանը, ստանձնել են ավելի բարձր պարտավորություններ. առաջիկա վեց ամսում կատարել մեկ տարվա առաջադրանքը: Իսկ ամբողջ միավորումը պարտավորվել է մինչև համագումար պլանից ավելի թողարկել մեկ միլիոն ռուբլու արտադրանք»:

Պերճախոս էին թվերը, և դժվար չէր չնկատել ժողովականների դեմքերին հպարտության ու գոհունակության ժպիտը: Ես գրի եմ առնում այդ թվերից ընդամենը մի քանիսը. անցած տարի գլխամասային ֆաբրիկան ապրանքային արտադրանքի թողարկման ծրագիրը կատարել է 117,5 տոկոսով, իրացմանը՝ 115,5, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 107,7 տոկոսով: Արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ ստացվել է 257 հազար ռուբլու արտապլանային օգուտ:

Իսկ ընթացիկ տարվա ցուցանիշնե՞րը: Ես դրանք գրի չեմ առնում: Եվ ահա թե ինչու. եթե հնգամյակի ծրագիրը կատարվել է տակավին ապրիլին, նշանակում է միավորումն աշխատում է ոչ թե այս տարվա, այլ 1981 թվականի հաշվին...

Հանկարծ դահլիճում տիրում է անսովոր լռություն: Եվ զեկուցողի ձայնն էլ հնչում է ուրիշ տեսակ՝ ինչ-որ սառը, չոր, անհաշտ: Լարումը վարակում է նաև ինձ, ու ես շարունակում եմ սղագրել:

— Ներկող արտադրամասում,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— առայժմ բավարար չէ մշակման որակը: Հաճախ խախտվում են խոնավաջերմային ու մեխանիկական մշակման և պահպանման ռեժիմները: Մեծ քանակով գործվածքներ վերադարձվում են վատ ներկման ու յուղոտված լինելու հետևանքով...

Երեկ, երբ Դանիել Զարիկյանի հետ շրջում էինք ֆաբրիկայի արտադրամասերում, եղանք նաև ներկատանը: Ու այնտեղ մենք տեսանք, որ ներկերի մի մասը պարզապես ցածրորակ է. խամրած, թոշնած, չունի պայծառ գունագեղություն: Ու մտածեցի, որ քիմիական արդյունաբերության համապատասխան ձեռնարկությունների թողարկած վատ ներկերի պատճառով այստեղ գործված ապրանքները երբեմն զրկվում են հաճելի, աչք շոյող տեսքից: Այն ժամանակ ես Դանիել Զարիկյանին հարցրի.

— Մի՞թե բողոքները միայն ներկերի պատճառով են. չէ՞ որ միավորումը մեծ մասամբ թողարկում է սպիտակ ներքնազգեստ:

— Սպիտակն էլ գույն է,— սրամտեց կուսբյուրոյի քարտուղարը: Մենք գործվածքն անպայման վերամշակում, նրան սպիտակ գույն ենք տալիս: Իհարկե, միշտ չէ, որ գույների կամ ցածր որակի պատճառով են բողոքներ լինում: Հաճախ դա տեղի է ունենում մեր առանձին մարդկանց անհոգության, անփութության պատճառով: Առաքման տոփի մեջ առաջին տեսակի հետ, մեկ էլ տեսար, մերոնք խցկել են նաև երկրորդ տեսակի ապրանք: Կամ՝ փաստաթղթում նշված է մի արտադրանք, սակայն պարկերի մեջ հայտնվում է նաև մեկ ուրիշը: Այդպիսի դեպքերում առևտրական կազմակերպությունները ապրանքը ետ են ուղարկում:

Եվ ահա կուսբյուրոյի քարտուղարը զեկուցում է. «1980 թվականի անցած ութ ամսում ֆաբրիկան առևտրական կազմակերպություններին վճարել է 14 հազար ռուբլի տուգանք՝ 76 բողոքի դիմաց: Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում եղել է 86 բողոք և վճարվել է 17 հազար ռուբլի տուգանք: Այս տարի առևտրական կազմակերպություններից ետ է վերադարձվել 32 հազար հատ արտադրանք՝ 60 հազար ռուբլու արժողությամբ»:

Մտածում եմ՝ կարելի՞ է, արդյոք, հասնել այն բանին, որ ամենևին տուգանքներ չլինեն և չեմ կարողանում կողմնորոշվել. արդյոք շա՞տ է այդ 14 հազար ռուբլին, թե՞ միավորման համար մեծ բան չէ: Եվ դիմում եմ միավորման դիրեկտորի տեղակալ Հովսեփ Մեսրոպյանին:

— Մենք ձգտում ենք դա հասցնել նվազագույնի,— ասաց Մեսրոպյանը,— սակայն առանց տուգանքի առայժմ չի ստացվում: Ինչ վերաբերում է վնասի չափին, ապա դա մեծ գումար չէ: Դատեցեք ինքներդ. տարեկան մենք թողարկում ենք ավելի քան 90 միլիոն ռուբլու սպիտակեղեն: 90 միլիոնի մեջ 14 հազարը, իրոք, շատ չնչին է: Այնուամենայնիվ, որքան էլ չնչին, հաճելի երևույթ չէ:

Զեկուցման մեջ խոսք եղավ նաև այլ թերությունների մասին ու արվեց եզրակացություն. «Կարևոր հարցը բարձր որակի ապահովումն է, նոր արտադրատեսակների ստեղծումն ու ներդրումը: Որքան լավ արտադրատեսակ, այնքան շատ իրացում ու այնքան քիչ բողոքներ»: Եվ ավելեց, որ այս տարվա առաջին կիսամյակում թողարկվող սպիտակեղենի և վերնազգեստի 20,3 տոկոսը նորացվել է: Հիմա միավորումը 32 արտադրատեսակ թողարկում է պետական որականիշով:

Իմ ծոցատետրը լցվում է հետաքրքրական փաստերով ու թվերով: Եվ դրանք վերաբերում են ոչ միայն արտադրությանը, այլ նաև՝ միավորման բանվոր-ծառայողների սոցիալական կյանքին: Գլխամասային ֆաբրիկայի 110 աշխատողներ հաշվետու տարում եղել են առողջարաններում, հանգստյան տներում, շրջագայել տուրիստական երթուղիներով: 70 երեխաներ ամռանը հանգստացել են պիոներական ճամբարներում: Բանվոր-ծառայողների համար 17 անգամ կազմակերպվել են էքսկուրսիաներ մեր հանրապետությունում ու նրա սահմաններից դուրս...

Գլխամասային ֆաբրիկան ունի ժողովրդական համալսարան, տնտեսագիտական, գեղարվեստական ինքնագործունեության, մարզական խմբակներ: 40 երիտասարդներ, առանց արտադրությունից կտրվելու, սովորում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում:

Կոմունիստները տեղեկացան նաև, որ միավորումը ստանձնել է մայրաքաղաքի № 89 միջնակարգ դպրոցի շեֆությունը. աշակերտների համար կազմակերպվել են էքսկուրսիաներ, խմբային կինոդիտումներ, նրանց ծանոթացրել են ֆաբրիկայի գործունեությանը, իսկ ամռանը բարձր դասարանների 45 աշակերտներ, լավագույն վարպետների հսկողությամբ, ֆաբրիկայում մասնագիտություն են սովորել: Նրանցից շատերը, դպրոցն ավարտելուց հետո, կգան ֆաբրիկա՝ մշտական աշխատանքի:

Երբ Դանիել Զարիկյանն ավարտեց իր զեկուցումը, դահլիճում թնդացին ծափերը: Ես մտածեցի, որ այդ ծափերը վերաբերում էին ոչ միայն կուսբյուրոյին ու նրա քարտուղարին, այլև ամբողջ կուսկազմակերպությանը, միավորման կոլեկտիվին:

Ժողովները հետաքրքրական ու գործնական են դառնում ոչ միայն զեկուցումներով, այլ, գուցե առավելապես՝ խելացի, սկզբունքային ելույթներով: Ահա ամբիոնին է մոտենում գործող արտադրամասի ենթավարպետ, կոմունիստ Յուրա Գրիգորյանը: Նա պատմում է շուրջ 30 տարվա աշխատանքի փորձ ու հմտություն ունեցող բանվորներ Վահան Պետրոսյանի, Հակոբ Զարիկյանի, Նվարդ Փանոսյանի, Ռոզա Սահակյանի, Հեղուշ Քոսյանի, Գարուն Հանեյանի և ուրիշների անձնվեր աշխատանքի մասին ու հետո անդրադառնում իրենց հոգսերին:

— Համարյա տասը տարի է,— ասաց Յուրա Գրիգորյանը,— որ ոչ մի պահեստամաս չենք ստացել. հետաքրքիր է, թե մեր մինիստրության համապատասխան բաժինները ի՞նչ են մտածում այդ մասին: Ասեղները ժամանակին չենք ստանում: Չէ՞ որ դա խանգարում է մեր համաչափ աշխատանքին: Առիթից օգտվելով, որ մեր ժողովին մասնակցում է թեթև արդյունաբերության մինիստրի տեղակալ ընկեր Նըռանյանը, խնդրում ենք՝ օգնել Լենինականից ստացվող թելի որակը լավացնելու և պահեստամասերն ու ասեղները ժամանակին ստանալու հարցում:

Գլխամասային ֆաբրիկայի № 1 արտադրամասի հիանալի գործերի մասին պատմեց կոմունիստ Ելենա Ղազարյանը: Շարունակելով իր

խոսքը, նա ասաց. «Մեր տեղամասը արտադրում է 24 տեսակի սպիտակեղեն, դրանցից յուրաքանչյուր ամիս տալիս ենք 345 հազար հատ: Տեղամասի բոլոր բրիգադներում սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել կուսակցության XXVI համագումարն արժանավայել նվերներով դիմավորելու համար: Բրիգադներն ամեն մի հերթափոխ ավարտում են 2—3 տոկոսով առաջադրանքները գերակատարած: Աշխատանքի հիանալի օրինակ են տալիս Ռիտա Մարությանը, Ամալյա Մակարյանը, Գրետա Իսպիրյանը, Աղավնի Տարախչյանը, Վիկտորյա Չեփչյանը և շատ ուրիշներ, որոնք արդեն աշխատում են տասնմեկերորդ հնգամյակի հաշվին: Կան նաև թերություններ. վերամշակման ուղարկվող արտադրանքը մեծ չափերի է հասնում պաստառի ցածրորակության պատճառով: Շատ են անհարգելի բացակայությունները, ուշացողների թիվը դեռևս մեծ է»:

Կոմունիստների ելույթները հաջորդում են միմյանց: Ահա ձայն է խնդրում № 1 կարող արտադրամասի բրիգադավար Շուշիկ Խաչատրյանը: Պետք էր տեսնել, թե նա ինչպիսի սիրով էր խոսում կարող բանվորուհի Մելանյա Մովսիսյանի մասին: Իմ կողքին նստած ընկերը, տեսնելով, որ նշումներ եմ անում, ինձ կամացուկ ասաց.

— Սքանչելի աղջիկ է Մելանյան, իր գործի հանճար:

Այդ միջոցին բրիգադավար Շուշիկ Խաչատրյանը շարունակում էր. «Բանվորուհի Մելանյա Մովսիսյանը «ՍՄԿԿ XXVI համագումարին՝ 26 հարվածային շաբաթ» մրցության ավանգարդում է և այսօր բարի օրինակ է ծառայում ինչպես մեր արտադրամասի, այնպես էլ միավորման բոլոր բանվորների համար»:

Սոցմրցության կազմակերպման ընթացքի և արդյունքների շուրջ ելույթ ունեցավ միավորման արհկոմի նախագահ Էմմա Հակոբյանը: Նա մասնավորապես ասաց. «Մրցության արդյունքներն ամփոփող հանձնաժողովը, որը ղեկավարում է միավորման դիրեկտոր, կոմունիստ Ռիմա Բեկիրսկան, ամեն ամիս, յուրաքանչյուր եռամսյակ ներկայացնում է մրցության արդյունքների ամփոփագիր, որի հիման վրա մրցության հաղթողները պարգևատրվում են, խրախուսվում նյութապես: Այդ նպատակի համար այս տարվա ութ ամսում հատկացվել է 15.096 ռուբլի: Մեր միավորումն անցյալ տարի և այս տարվա առաջին կիսամյակում թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների միջև ծավալված մրցությունում բազմիցս արժանացել է առաջին, երկրորդ, երրորդ մրցանակների, փոխանցիկ կարմիր դրոշների և ստացել 33.128 ռուբլի պարգև: Միավորումում լայն թափ են ստացել «Ոչ մի ետ մնացող քո կողքին», «Միայն բարձր որակի արտադրանք», «Մանկական տեսականու՝ որակի նշան» հայրենասիրական շարժումները: Արտադրամասերում անցկացված ժողովներում ու միտինգներում ծնունդ առավ «Մինչև համագումարի բացումը՝ կրկնակի արտադրանք» նախաձեռնությունը:

Հաշվետու-ընտրական ժողովում ելույթ ունեցան նաև թեթև արդյունաբերության մինիստրի տեղակալ Վարդան Նռանյանը, № 1 տրիկոտաժի միավորման դիրեկտոր Ռիմա Բեկիրսկան: Մինիստրի տեղակալը գլխամասային ֆաբրիկայի կոմունիստներին տեղեկացրեց մինիստրության ձեռնարկությունների գործունեության մասին և նշեց, որ № 1 տրիկոտաժի միավորումն ունի բոլոր հնարավորությունները գալիք հնգամյակում մրցություն ծավալելու ոչ թե հանրապետական, այլ միութենական չափանիշով:

— Այսօր,— ասաց միավորման դիրեկտոր Ռիմա Բեկիրսկան, երբ մենք հետադարձ հայացք ենք ձգում մեր անցած մեկ տարվա ճանապարհին, ես, որպես կուսկազմակերպության անդամ, մի ներքին հպարտությամբ ինձ լավ եմ զգում այն բանի համար, որ կոլեկտիվի հետ մեկտեղ մեր կուսկազմակերպությունը քայլել է հանրապետության առաջավոր կազմակերպությունների և կոլեկտիվների շարքում: Անշեղորեն կատարել ենք ինչպես ՍՄԿԿ XXV, ՀԿԿ XXVI համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, այնպես էլ մեր՝ թեթև արդյունաբերության մինիստրության ու վերադաս այլ մարմինների որոշումները և լուծել մեր առջև ծառացած խնդիրները:

Երբ հաշվետու-ընտրական ժողովը կուսբյուրոյի կատարած աշխատանքը միաձայն գնահատեց «բավարար» ու անցավ բյուրոյի նոր կազմի ու ՀԿԿ Շահումյանի շրջանային կազմակերպության կոնֆերանսի պատգամավորների ընտրություններին, ես սկսեցի կարգի բերել իմ ծոցատետրում արված գրառումները: Կլանված իմ գործով՝ չէի նկատել, թե որքան ժամանակ է անցել ու զարմացա, երբ ինձ մոտեցավ արհկոմի նախագահ Էմմա Հակոբյանը և որպես թարմ լուր հաղորդեց.

— Նորընտիր բյուրոյի առաջին նիստն ավարտվեց, կարող եք Դանիել Զարիկյանին շնորհավորել. նա նորից ընտրվեց կուսբյուրոյի քարտուղար:

**ԽԱՉԱՏՈՒՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ



# ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՇԱՐՔՈՒՄ

**Պ. Պ. ԳՐԻՇԿՅԱՎԻՉՈՒՍ**
Լիտվայի կոմունիստական կուսակցության
Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ պլենումի (1980 թ.) որոշումներից, ընկեր Լ. Ի. Բրեժնևի բովանդակալից զեկուցումից բխող քաղաքական ու աշխատանքային մեծ վերելքի պայմաններում Լիտվայի ժողովուրդը տոնում է նշանակալից մի տարելից՝ Լիտվայում սովետական իշխանության վերականգնման քառասնամյակը: Ինչպես ողջ սովետական ժողովուրդը, Լիտվայի աշխատավորները ևս ապրում են միասնական մի ձգտումով— ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը դիմավորել նոր մեծագործություններով կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում:*

*Սովետական Լիտվայի երևելի տարեդարձը մենք հանդիսավորությամբ նշում ենք որպես մեծ, ուրախ տոն, Լիտվայի ժողովրդի պատմության ամենանշանավոր իրադարձությունը: Սովետական կյանքի տարիները ամենապայծառ, ամենաարգասալի տարիներն են Լիտվայի տնտեսական, սոցիալական ու հասարակական զարգացման ողջ ընթացքում: Այդ են վկայում տպավորիչ, ողջ պատմական դարաշրջանին համազոր հաջողությունները, որոնց հասել են հանրապետության աշխատավորները ողջ սովետական ժողովրդի հետ մեկտեղ, ընթանալով մեծ Լենինի նշած ուղիով:*

*Քառասուն տարին դա հասունության տարիք է: Եվ Սովետական Լիտվան իր հոբելյանն է նշում առնականացած, ծաղկած ուժերով, լինելով համահավասար անդամը զարգացած սոցիալիզմի հասարակության, բոլոր եղբայրական հանրապետությունների հետ միասին լուծելով կոմունիզմի կառուցման հոյակապ խնդիրները: Այդ նվաճումներն առավել թանկ են մեզ համար, որովհետև նվաճված են համատեղ աշխատանքով, համատեղ ջանքերով, դրանց ճանապարհը հարթվել է ժողովրդի երկարամյա անձնուրաց հեղափոխական պայքարով, որը ղեկավարում էր կոմունիստական կուսակցությունը:*

*Հանուն նոր, լուսավոր կյանքի, հանուն սոցիալական ու ազգային ազատագրման մարտնչել են Լիտվայի հեղափոխականները՝ բոլշևիկների լենինյան կուսակցության վետերանները: Դրա համար իրենց հազարավոր հետևորդների հետ նրանք կռվում էին Մեծ հոկտեմբերի մարտերում, ստեղծում Լիտվայի կոմունիստական կուսակցությունը, 1918—1919 թվականներին ժողովրդական մասսաներին անձնվիրաբար կռվի էին տանում հանուն սոցիալիստական հեղափոխության, հանուն սովետական իշխանության, հանուն նոր, սոցիալիստական, սովետական հիմքի վրա Լիտվայի պետականության վերականգնման: Այդ ժամանակաշրջանում Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետության հռչակումը նշանակում էր, որ մեր երկրամասի աշխատավորները կանգնեցին Վ. Ի. Լենինի նշած սոցիալիստական զարգացման ուղու վրա:*

Սովետական իշխանության առաջին քայլերը Լիտվայում հանդիսացան նոր կյանքի նախերգը։ Քաղաքական, տնտեսական, սոցիալական վերափոխումների նպատակն էր աշխատավորության բարեկեցության բարելավումը, սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը։ Այդ վերափոխումներն արժանացան ժողովրդական լայն զանգվածների հավանությանը, որոնք անձնուրաց պայքարում էին դրանց իրականացման համար։

Օտարերկրյա ինտերվենտների ու տեղական բուրժուազիայի միավորված հակահեղափոխական ուժերին այն ժամանակ հաջողվեց կասեցնել հեղափոխության երթը Լիտվայում։ Ավելի քան երկու տասնամյակ մեր երկրամասում տիրեց բուրժուական դիկտատուրան, որը փաստորեն Լիտվան հանձնեց իմպերիալիստական պետություններին։

Սակայն Լիտվայում կարճ գոյատևած սովետական կարգը աշխատավորներին ակնբախ ցույց տվեց, թե ինչ է տալիս այն ժողովրդին, ինչպես է հոգում նրա պահանջների, բարօրության համար, ցույց տվեց, որ սովետական իշխանությունը, իրոք, աշխատավոր ժողովրդի իշխանություն է։

Բուրժուազիայի գերիշխանության տարիները աշխատավորության համառ հեղափոխական պայքարի տարիներ էին։ Բուրժուազիան ի վիճակի չէր զսպելու հեղափոխական շարժումը։ Պայքարը չընդհատվեց նույնիսկ այն բանից հետո, երբ բուրժուազիան իրականացրեց ֆաշիստական պետական հեղաշրջում, որի առաջին զոհերը դարձան Լիտվայի կոմունիստական կուսակցության ականավոր գործիչները։ Ժողովրդական մասսաների պայքարը չկարողացավ ճնշել բուրժուազիայի գերիշխանության համարյա ողջ ժամանակամիջոցում գործող ռազմական դրությունը։ Մի՞թե սա համոզիչ վկայությունը չէ այն բանի, որ բուրժուազիայի դիրքերն այնքան էլ ամուր չէին, ինչպես ինքն էր փորձում պատկերել դա։ Բանվորների, գյուղացիների մասսայական գործադուլները, տարբեր ձևերով դրսևորվող աշխատավորության հեղափոխական շարժումը ավելի ու ավելի էին ցնցում ատելի շահագործողական ռեժիմը, արթնացնում սոցիալիստական կարգի վերականգնման հույսեր։

Բուրժուազիայի գերիշխանության ողջ ժամանակամիջոցում հեղափոխական գործունեությունը հերոսաբար ղեկավարում էր Լիտվայի կոմունիստական կուսակցությունը՝ աշխատավորության շահերի միակ հետևողական պաշտպանը, որն ամուր կանգնած էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերում, միակ քաղաքական կուսակցությունը Լիտվայում, որը բուրժուազիայի դիկտատուրայի պայմաններում աշխատավորության անձնուրացաբար մղում էր մարտերի ընդդեմ կապիտալիստական շահագործման, քաղաքական ճնշման, իր շուրջը համախմբելով բանվորներին, աշխատավոր գյուղացիությանը, առաջադեմ մտավորականությանը, բոլոր հակաֆաշիստական ուժերին։ Եվ այդ պայքարը կոմունիստներից պահանջում էր մեծ զոհեր։

Կոմունիստներն իրենք, անշեղորեն ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, հանդիսացան այն ուժը, որը չընկրկելով ամենադաժան փորձություններից, գործով ապացուցեց իր անսահման նվիրվածությունը մեծ Լենինի գաղափարներին, աշխատավորներին, Լիտվայի ժողովրդին ցույց տվեց նոր կյանքի համար մղվող պայքարի իրական ուղիները։ Դասակարգային ահեղ կռիվներում կոփված մարտիկները, որոնց գլխավորում էին Վ. Կապսուկասը, Զ. Անգարետիսը, Կ. Պոժելան, Ա. Սնեչկուսը և ուրիշներ, իրենց անձնվեր գործունեությամբ մոտեցնում էին լուսավոր կյանքի օրերը։ Ժողովրդական լայն մասսաների շրջանում կոմունիստները տարածում էին Լենինի անմահ գաղափարները, տարածում ճշմարիտ խոսք Հոկտեմբերի մեծ հայրենիքի՝ սովետների երկրի մասին։

Գործելով ընդհատակում՝ Լիտվայի կոմունիստական կուսակցությունն ամեն կերպ կատարելացնում է իր գործունեության ձևերն ու մեթոդները, ամրապնդում կապը բանվորների, գյուղացիների, մտավորականության, ժողովրդական լայն զանգվածների հետ։ Հետևողականորեն ղեկավարվելով մարքս-լենինյան ուսմունքով՝ Լիտվայի կոմունիստներն այն ժամանակվա պատմական պարագաներում մշակեցին ու կատարելագործեցին իրենց գործունեության ստրատեգիան ու տակտիկան, հասարակայնության լայն խավերին համախմբեցին հակաֆաշիստական ժողովրդական ֆրոնտում, որն ստեղծվել էր ընդհանուր բանվորական ճակատի հիման վրա։ Նույնիսկ բուրժուազիան ստիպված էր խոստովանել, որ կոմունիզմի գաղափարներն ավելի ու ավելի են համակում աշխատավորներին։



Լիտվայի կոմունիստական կուսակցությունը միավորում, կոփում ու դաստիարակում էր անվեհեր հեղափոխականներ։ Հենվելով բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի, պրոգրեսիվ մտավորականության վրա, նա կարողացավ աշխատավոր ժողովրդի ջանքերը միավորել ու ծառայեցնել բուրժուական կարգի, ֆաշիստական դիկտատուրայի տապալման համար մղվող պայքարին։

Ֆաշիստական կառավարությունը կեղծավորաբար պնդում էր, իբր, Լիտվան «երջանիկ կղզի է» ճգնաժամի մոլեգնող ծովում։ Սակայն փաստերն այլ բան էին վկայում։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, սրելով նրա բոլոր հակասությունները, ներառել էր և Լիտվան, որի էկոնոմիկան զարգացման ցածր մակարդակի պատճառով ամբողջովին կախված էր օտարերկրյա մոնոպոլիաներից։ Անընդհատ աճում էին գործազրկությունը, աշխատավորության շահագործումը, աղքատությունը, նվազում էր աշխատավարձը։ Այսպես, 1930-ից մինչ 1939 թվականը բանվորների աշխատավարձը միջին չափով պակասել էր 34,3 տոկոսով։ Դա հաստատված է այն ժամանակվա պաշտոնական վիճակագրությամբ։ Իսկ կապիտալիստների շահույթներն անշեղ աճել էին։ Այն ժամանակվա հայտանիշներն էին, մի կողմից՝ աղքատությունից ու շահագործումից ճնշված ժողովուրդը, մյուս կողմից՝ ճոխության մեջ հղփացած բուրժուազիան։ Նման բևեռացումն ավելի էր ուժգնացնում ժողովրդի լայն խավերի ատելությունը ֆաշիստական կառավարության նկատմամբ, ամրապնդում նրանց հեղափոխական վճռականությունը։

1939—1940 թվականներին Լիտվայում դրսևորվեցին համազգային ճգնաժամի ու հեղափոխական իրադրության բոլոր հայտանիշները։ Ֆաշիստական կառավարությունը ձգտում էր բոլոր միջոցներով արգելակել հեղափոխական պրոցեսը, ուժեղացնում էր ռեպրեսիաները։ Սակայն ոչ մի բան արդեն չէր կարող կասեցնել հեղափոխական պայքարն ընդդեմ ատելի ֆաշիստական դիկտատուրայի։ Այդ պայքարում վճռաբար հանդես եկան աշխատավորական լայն մասսաները, ուր ավելի ակտիվորեն ներգրավվեցին առաջադիմական, դեմոկրատական ու հայրենասիրական բոլոր ուժերը։ Ռադիկալ փոփոխություններ էին տեղի ունենում և բուրժուական բանակում, ուր զինվորների մեծամասնությունը բանվորների ու գյուղացիների զավակներն էին։ Հակաֆաշիստորեն տրամադրված և ժողովրդին հավատարիմ սպաների շրջանում ևս հասունում էր համոզմունքն այն բանի, որ ՍՍՀՄ-ի հետ բարեկամությունն ու դաշինքը ամրապնդելով միայն՝ Լիտվայի ժողովուրդը կարող է պահպանել իր ազգային անկախությունն ու ազատությունը։ Այդ ամենը վկայում էր, որ երկրամասի համար վտանգավոր պահին նրանք հանդես կգան հօգուտ ժողովրդի։

1939 թվականին Լիտվայի և ՍՍՀՄ-ի միջև ստորագրված փոխադարձ օգնության պայմանագիրը, պայմանագրի համաձայն սովետական բանակի զորամասերի տեղաբաշխումը Լիտվայում և 1940 թվականի հունիսին այդ զորամասերի համալրումը խանգարեցին հիտլերյան Գերմանիային և ցանկացած իմպերիալիստական հակահեղափոխական ինտերվենցիային՝ ճնշելու Լիտվայում հասունացող հեղափոխությունը։ Լիտվական բուրժուազիան, զրկվելով Արևմուտքի իմպերիալիստների օգնությունից, անկարող էր կանխելու ֆաշիստական ռեժիմի կործանումը։

Լիտվայի միջազգային դրությունն այն ժամանակ, հակասությունները իմպերիալիզմի ճամբարում, ՍՍՀՄ-ի ինտերնացիոնալ աջակցությունը ստեղծում էին բարենպաստ պայմաններ հեղափոխության հաղթանակի համար։ Լիտվայի անկման հասած տնտեսությունը, գործազրկության արագ աճը, աղքատությունը, աշխատավորության անընդհատ վատթարացող տնտեսական դրությունը, բուրժուազիայի ներքին հակասությունները, իշխող վերնախավի ճգնաժամն ստեղծում էին ներքին նախադրյալներ հեղափոխության համար։ Ռեակցիան

զրկվեց հեղափոխական շարժման ճանապարհն արգելակելու հնարավորությունից։

Մասսաների ատելությունից ահաբեկված ֆաշիստական դիկտատոր Ա. Սմետոնան 1940 թվականի հունիսի 15-ին փախավ Գերմանիա։ Բուրժուական կառավարության գործունեությունը ջլատվեց, պետական ապարատն ապակողմնորոշվեց, բանակը փաստորեն անցավ ժողովրդի կողմը։ Տապալվեց ֆաշիստական ռեժիմը։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ բուրժուազիայի դիկտատուրայի դեմ մղվող աշխատավորության պայքարն ավարտվեց հաղթանակով։ 1940 թվականի հունիսի 15-ին Լիտվայի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն համայն աշխատավորներին ուղղված իր կոչում պահանջեց՝ ստեղծել իսկական ժողովրդական կառավարություն, ազատել քաղաքական բանտարկյալներին, լեգալացնել կոմունիստական կուսակցությունը, արհմիությունները, ինչպես և ժողովրդին վերադարձնել նրա դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները։ Լիտվայի կոմկուսի Կենտկոմի քարտուղարությունը հանգեց այն եզրակացության, որ ստեղծվել են բարենպաստ արտաքին պայմանները, կան բավականաչափ ներքին ուժեր՝ խաղաղ ճանապարհով լիկվիդացնելու ֆաշիստական կարգը, քննարկվեցին նաև նոր կառավարության ստեղծման ու նրա կազմի հարցերը։ Հունիսի 17-ին, համաձայն այն ժամանակ գործող սահմանադրության, հաստատվեց նոր, ժողովրդական կառավարության կազմը։ Նրա նախագահը դարձավ Յու. Պալեցկիսը։

Աշխատավորները խանդավառությամբ ընդունեցին ֆաշիստական դիկտատուրայի տապալման և ժողովրդական կառավարության ստեղծման լուրը։ Ժողովներում, միտինգներում ու ցույցերում ողջունում էին կառավարությանը, առաջադրելով երկրամասի դեմոկրատական վերափոխման հիմնական, սոցիալիստական հեղափոխության խնդիրներից բխող պահանջները։

Բուրժուական կառավարության տապալման առաջին իսկ օրերից Լիտվայի կոմունիստական կուսակցությունը բոլոր վերափոխումների ու ձեռնարկումների նախաձեռնողն էր, կազմակերպիչն ու ղեկավարը։ Նա դարձավ կառավարող կուսակցություն, վարելով հանրապետության ողջ կյանքը։ Լիտվայի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, որը գլխավորում էր Ա. Սնեչկուսը, ձեռնամուխ եղավ բոլոր պատմական վերափոխումների իրականացման մեծ ու ծավալուն աշխատանքին։ Եռանդով էին լուծվում հիմնական հասարակական պրոբլեմները, դեմոկրատական զարգացման անհետաձգելի խնդիրները։

Ժողովրդական սեյմի ընտրությունները, որոնք կայացան 1940 թվականի հուլիսի 14—15-ին, ցույց տվին աշխատավորների մեծ ակտիվությունը, քաղաքական հասունությունը։ Ընտրություններին մասնակցեց ձայնի իրավունք ունեցողների 95,51 տոկոսը, որոնցից 99,19 տոկոսը քվեարկեց Լիտվայի Աշխատավոր ժողովրդի միության թեկնածուների օգտին։ Ընտրություններում Լիտվայի Աշխատավոր ժողովրդի միության հաղթանակը միաժամանակ հանդիսացավ կոմունիստական կուսակցության հաղթանակը, ապացույցն այն բանի, որ աշխատավորները վստահում են նրան։ Աշխատավորների այդ վստահությունը դրսևորվեց քաղաքներում, ավաններում ու գյուղերում տեղի ունեցած բազմամարդ միտինգներում, ուր ողջունում էին ժողովրդական սեյմի ներկայացուցիչներին։ Աշխատավորները պահանջում էին Լիտվական Սոցիալիստական Հանրապետության հռչակում, նրա ընդգրկում ՍՍՀՄ կազմում, Լիտվայում սովետական սահմանադրության ընդունում, ֆաբրիկաների ազգայնացում, հողի հանրայնացում, հետևաբար՝ կապիտալիզմի լիակատար վերացում Լիտվայում։

1940 թվականի հուլիսի 21-ին Կաունասում սկսված ժողովրդական սեյմի առաջին նստաշրջանը ձեռնամուխ եղավ պատմական նշանակության հարցերի լուծման։ Գլխավորներից էր Լիտվայի ապագա կարգի վերաբերյալ հարցը։ «Ժողովրդական սեյմը, արտահայտելով Լիտվայի ազատ աշխատավոր ժողովրդի միասնական կամքը,— ասված էր պետական կարգի մասին դեկլարացիայում,— հռչակում է Լիտվայում սովետական կարգի հաստատումը»։

Հուլիսի 21-ը դարձավ Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետության ծննդյան օրը։



Ժողովրդական սեյմի ընդունած դեկլարացիայում, որով հռչակվում էր Լիտվայի մուտքը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմի մեջ, նշվում էր, որ սովետական հանրապետությունների համագործակցությունը պայմաններ է ստեղծել էկոնոմիկայի ու կուլտուրայի աննախադեպ ծաղկման, վիթխարի վերելքի համար, որին հանրապետությունները չէին կարող հասնել իրարից անջատ։ Դեկլարացիայում նշվում էր, որ լիտվական ժողովուրդը խորապես համոզված է, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հետ սերտ մերձեցմամբ է պայմանավորված նրա լավագույն ապագան։

Լիտվայի ժողովրդական սեյմը համոզված է, ասված էր դեկլարացիայում, որ միայն մուտքը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմում կապահովի լիտվական պետության իսկական ինքնիշխանությունը, արդյունաբերության ու գյուղատնտեսության իսկական վերելքը, ազգային կուլտուրայի իսկական ծաղկումը, ժողովրդի նյութական ու հոգևոր ուժերի լիակատար զարգացումը։

Ժողովրդական սեյմը որոշեց խնդրել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Սովետին Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունն ընդունել ՍՍՀՄ կազմում այն հիմունքներով, ինչ հիմունքներով այնտեղ մտնում են միութենական հանրապետությունները։

Ժողովրդական սեյմն ընդունեց նաև դեկլարացիա, որով հողը հռչակվում էր պետության սեփականություն, ինչպես և դեկլարացիա բանկերի ու խոշոր արդյունաբերության ազգայնացման մասին։ Բնական բոլոր հարստությունները և արտադրության հիմնական միջոցները դարձան ժողովրդի սեփականությունը։

Ժողովրդական սեյմի ընդունած դեկլարացիաները նոր, նշանակալի էջ բացեցին լիտվական ժողովրդի պատմության մեջ, նշանավորեցին արմատական բեկում նրա ճակատագրում։

1940 թվականի օգոստոսի 3-ին ՍՍՀՄ Գերագույն սովետը, լսելով Լիտվական սեյմի լիազորված հանձնաժողովի դիմումը, որոշեց բավարարել Լիտվայի ժողովրդական սեյմի խնդրանքը և Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունն ընդունել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմում՝ որպես համահավասար միութենական Սովետական Սոցիալիստական Հանրապետություն։ Այդ ժամանակվանից լիտվական ժողովուրդն իր կյանքն է կերտում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում։

1940 թվականի հոկտեմբերի 8-ին Լիտվայի կոմունիստական կուսակցությունն ընդունվեց ՍՄԿԿ փառապանծ շարքերը։ Լիտվայի կոմունիստական կուսակցությունը դարձավ ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը, այդ առավել բարձրացրեց հանրապետության ամեն մի կոմունիստի պարտքն ու պատասխանատվությունը նոր կյանքի կառուցման խնդիրների լուծման գործում, մոբիլիզացնելու աշխատավորական լայն մասսաներին՝ կենսագործելու դրանք։

Լիտվայի կոմկուսին հարկ եղավ մեծ աշխատանք կատարել նոր սովետական պետական ապարատ ստեղծելու համար, նրա գործունեության ոլորտը ներգրավելով բանվորների, աշխատավոր գյուղացիության, առաջադեմ մտավորականության լավագույն ներկայացուցիչներին, կարճ ժամանակամիջոցում սոցիալիստաբար վերակերտելու ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերը, վերակազմավորելու արդյունաբերությունը, իրականացնելու հողային ռեֆորմը, ընդլայնելու կուլտուրական շինարարությունը։ Նոր հեղափոխական վերափոխումները ժողովրդի մեջ առաջացրին հեղափոխական եռանդի հզոր վերելք։

1941 թվականի փետրվարի 5-ից 9-ը Կաունասում կայացած Լիտվայի կոմկուսի V համագումարն ընդհանրացրեց կատարված աշխատանքի արդյունքները, սահմանեց հանրապետությունում սոցիալիզմի կառուցման հետագա ուղենիշները։ Այն մեծ դեր խաղաց հանրապետության կուսակցական կազմակերպության ամրապնդման, Սովետական Լիտվայում իրականացվող սոցիալիզմի կառուցման կուսակցական ղեկավարությունը բարելավելու գործում։

Համագումարի առաջադրած խնդիրները հանրապետության ինդուստրացման,
գյուղատնտեսության, ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի
զարգացման ասպարեզում դարձան բոլոր կուսակցական կազմակերպություն-
ների, բոլոր աշխատավորների գործունեության ծրագիրը։

Սոցիալիզմի կառուցման առաջին տարին Լիտվայում հեշտ չէր։ Նոր կյանքի
ստեղծումը տեղի էր ունենում դասակարգային սուր պայքարի պայմաններում,
հաղթահարելով դասակարգային թշնամու դիմադրությունը, որը փորձում էր
խոչընդոտել երկրամասի սոցիալիստական վերափոխումը։ Սակայն Սովետա-
կան Լիտվայի աշխատավորության ակտիվ մասնակցությունը սոցիալիզմի կա-
ռուցման բոլոր տեղամասերում, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական օգնությու-
նը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ու սովետական կառավարության մշտական
հոգատարությունը հանրապետության հանդեպ հնարավորություն ընձեռեցին
կարճ ժամանակամիջոցում հասնելու պատմական հաջողությունների։ Այդ հա-
ջողությունները համոզիչ ցույց տվեցին, որ սովետական իշխանությունը ժողո-
վրդի իշխանություն է, քանի որ այն աշխատավորների առջև բացել է լայն
հնարավորություններ ակտիվ մասնակցելու պետության կառավարմանը, ար-
տադրական ու հասարակական գործերին, ստեղծել է բոլոր պայմանները ար-
տադրաուժերի զարգացման, ժողովրդի բարեկեցության անշեղ աճի, նոր կյանքի
կառուցման ճանապարհին վստահ առաջխաղացման համար։

Լիտվական ժողովրդին վիճակվեց վերապրել դաժան փորձություններ, երբ
հիտլերյան Գերմանիան հարձակվեց սովետների երկրի վրա։ Լիտվայի աշխա-
տավորները, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը ոտքի ելան պաշտպանելու
սոցիալիստական հայրենիքը։ Սովետական բանակի շարքերում, պարտիզանա-
կան ջոկատներում նրանք արիաբար մարտնչում էին դաժան թշնամու դեմ։ Եր-
բեք չեն մոռացվի Հայրենական մեծ պատերազմում սովետական մարտիկների
սխրանքները։ Հաղթանակի 35-րդ տարեդարձը, որ մենք վերջերս տոնեցինք,
կրկին վկայում է սովետական մարդկանց անսահման նվիրվածությունը սո-
ցիալիստական հայրենիքին, համախմբվածությունը Լենինի փառապանծ կու-
սակցության շուրջը, վճռականությունը՝ ամրապնդելու սովետների երկրի տըն-
տեսական ու պաշտպանական հզորությունը։

Հանրահայտ է, թե մենք որքան դժվարություններ ենք հաղթահարել հետ-
պատերազմյան տարիներին։ Պատերազմից ավերված տնտեսությունը վերա-
կանգնելիս լիտվական ժողովուրդը միայնակ չէր։ Մեզ օգնում էր սովետական
ժողովուրդների համերաշխ ընտանիքը, և հանրապետության ժողովրդական
տնտեսությունը փաստորեն վերականգնվեց մի քանի տարում։

Այսօր Սովետական Լիտվան բարձր զարգացած արդյունաբերության, գյու-
ղատնտեսության, ծաղկող գիտության ու արվեստի երկրամաս է։ Հայացք ձգե-
լով անցած ուղուն՝ մենք ակնբախորեն համոզվում ենք, թե ինչպիսի հսկայա-
կան փոփոխություններ են կատարվել մեր երկրամասում շնորհիվ սոցիալիս-
տական կարգի։ Սովետական երկրի տնտեսական հզորությունը, նրա հսկայա-
կան ռեսուրսները, սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը և
սերտ համագործակցությունը, մեր հանրապետության ժողովրդի անձնվեր աշ-
խատանքը հնարավոր դարձրին պատմական կարճ ժամանակամիջոցում հաղ-
թահարել հետամնացությունը և դուրս գալ ծաղկման լայն ճանապարհ։

«...Ակնբախ օրինակը մերձբալթյան հանրապետություններն են՝ Լիտվան,
Լատվիան և Էստոնիան։— Նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Ինչպես հայտնի է,
Միության կազմի մեջ մտնելու պահին նրանց չէր կարելի դասել հետամնաց
ազգային ծայրամասերի թվին։ Բայց, բռնելով սոցիալիստական ուղին, նրանք
ցույց տվեցին Միության մեջ զարգացման ամենաարագ տեմպեր... Այսպիսի
ապշեցուցիչ աճը հնարավոր եղավ Միության մյուս հանրապետությունների
հետ այդ հանրապետությունների միավորման ճանապարհին միայն» (Լ. Ի.
Բրեժնև. Լենինյան կուրսով, հ. 4, էջ 75)։

ՍՍՀՄ կազմի մեջ մտնելու ժամանակից իսկ Սովետական Լիտվայի էկոնո-
միկան զարգանում է որպես երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպ-
լեքսի օրգանական մաս։ Սովետական իշխանության տարիների մեր երկրամասի
վճռական նվաճումներից են ինդուստրացման բարձր տեմպերը, որը հնարա-



վորություն ընձեռեց հասնելու արդյունաբերության մեծ վերելքի, որն ապահո-
վեց ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աճը։

Հանրապետության ժողովրդական տնտեսության պլանային զարգացումը
նպաստեց էկոնոմիկայի արդյունավետ կառավարմանը, օպտիմալ հաշվեկշիռ-
ների սահմանմանը, ռացիոնալ տեղաբաշխելու արտադրաուժերը։ Հետպատե-
րազմյան ողջ ժամանակաշրջանում Սովետական Լիտվայում արդյունաբերական
արտադրանքի արտադրությունն ամեն տարի աճել է ավելի քան 13 տոկոսով։
1979 թվականին հանրապետության արդյունաբերությունը թողարկել է 56,3
անգամ ավելի արտադրանք, քան 1940 թվականին։ Այլ խոսքով՝ այժմ Լիտվա-
յում ոչ լրիվ շաբաթում (6,5 օր) թողարկվում է նույնքան արդյունաբերական
արտադրանք, որքան ողջ 1940 թվականի ընթացքում։ Հետպատերազմյան տա-
րիներին հանրապետությունում կառուցված կամ արմատապես վերակառուց-
ված է 222 խոշոր արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկություն։

Հանրապետությունը հասել է արդյունաբերական արտադրության ավելաց-
ման այդպիսի բարձր տեմպերի շնորհիվ այն բանի, որ կարողացավ հենվել ողջ
երկրի նյութատեխնիկական հզոր բազայի, սոցիալիստական հանրապետու-
թյունների փորձի վրա, շնորհիվ այն բանի, որ սովետական իշխանությունը
հանրապետության բնակչության առջև բացեց լայն հնարավորություններ
ստեղծագործական աշխատանքի համար, և աշխատավորությունն իրոք զգաց,
որ ինքը իր երկրամասի իսկական տերն է։

Հանրապետության տնտեսական պոտենցիալը, նյութատեխնիկական բա-
զան կանխորոշում են էներգետիկայի, հաստոցաշինության ու սարքաշինու-
թյան, էլեկտրոնիկայի, մետաղամշակման, ռադիոտեխնիկական, էլեկտրա-
տեխնիկական, քիմիական արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը։
Հանրապետության ողջ ժողովրդական տնտեսության համար հատուկ նշանա-
կություն ունի վերստին ստեղծվող նավթավերամշակման արդյունաբերությու-
նը և ատոմային էներգետիկան։ Անճանաչելի փոխվել ու աճել են թեթև, սննդի,
մսի ու կաթի, կահույքի արդյունաբերության ավանդական ճյուղերը։ Նորովի
է զարգանում ձկնարդյունաբերությունը, որը հագեցվել է ժամանակակից ձըկ-
նորսանավերով, տեխնիկայով ու կադրերով։

Հանրապետության արդյունաբերությունն այսօր փառաբանվում է ո՛չ
միայն մետաղահատ հաստոցներով, էներգետիկ ու քիմիական ձեռնարկություն-
ների արտադրանքով, այլև էլեկտրոնային հաշվիչ մեքենաներով, հեռուստա-
ցույցներով, զոդման ապրեգատներով, գյուղատնտեսական մեքենաներով, կեն-
ցաղային սառնարաններով, ծովային ձկնորսանավերով և այլ բարդ արտա-
դրանքով, որ նա սկսել է թողարկել միայն սովետական տարիներին։ Մեր ար-
դյունաբերության արտադրանքի բարձր մակարդակի մասին է վկայում և այն
հանգամանքը, որ դրանք արտահանվում են աշխարհի ավելի քան 80 երկրներ։
Հատկանշական է, որ հանրապետության ողջ արդյունաբերական արտադրան-
քում ժողովրդական սպառման ապրանքները կազմում են 40 տոկոս։

Հանրապետության ինդուստրացումը վիթխարի ազդեցություն ունեցավ
սոցիալ-տնտեսական տեղաշարժերի վրա, որոնց շնորհիվ նշանակալի չափով
ավելացել է ազգային եկամտի ծավալը, բարելավվել է բնակչության զբաղվա-
ծության կառուցվածքը, բարձրացել է ժողովրդի նյութական ու կուլտուրական
բարեկեցությունը, ստեղծվել են ամենաբարենպաստ պայմանները անհատի
զարգացման համար։

Արդյունաբերության աճը, նոր ձեռնարկությունների շինարարությունը
հնարավորություն ընձեռեցին՝ հասարակական արտադրության մեջ լրացուցիչ
ներգրավելու զգալի աշխատանքային ռեսուրսներ, ապահովելու բնակչության
լրիվ զբաղվածությունը։ Այսպես, արդյունաբերական-արտադրական անձնա-
կազմը հանրապետությունում ավելացել է մի քանի անգամ։

Բանվոր դասակարգն աճել է ո՛չ միայն քանակապես։ Բարձրացել է նրա
հանրակրթական, մասնագիտական ու կուլտուրական մակարդակը։ Այժմ բան-
վորների ավելի քան մեկ երրորդն ունի միջնակարգ ու բարձրագույն կրթություն,
զգալիորեն բարձրացել են նրանց մասնագիտական որակն ու հմտությունը։ Ար-
դյունաբերության մեջ անընդհատ նվազում է ոչ որակյալ ու ծանր ֆիզիկական

աշխատանքի տեսակարար կշիռը։ Այժմ արդյունաբերության բնագավառում աշխատող միայն բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվն ավելի մեծ է, քան բանվորներինը բուրժուազիայի տիրապետության ժամանակ։

Հանրապետության ինդուստրացումը պայմանավորեց նրա արագ ուրբանիզացիան։ 1980 թվականի սկզբին քաղաքներում ապրում էին ողջ բնակչության 61,6 տոկոսը (1939 թվականին՝ 22,9 տոկոսը)։ Առավել արագ ուրբանիզացիան կատարվեց վերջին քսան տարում, երբ քաղաքային բնակչության թիվը համարյա կրկնապատկվեց։ Վիլնյուսի, Կաունասի, Կլայպեդայի, Շյաուլյայի ու Պանևեժիսի հետ մեկտեղ նոր կարևոր ռեգիոնալ կենտրոններ դարձան Ալիտուսը, Կապսուկասը, Իոնավան, Կեդայնյայը, Մաժեյկյայը, Ուտենան։

Մեր ներկան անհնար է պատկերացնել առանց կառույցների։ Սովետական իշխանության տարիներին շինարարության մասշտաբները դարձել են, հիրավի, վիթխարի։ Մեր երկրամասի որ անկյունում էլ լինես, որ շրջանն էլ այցելես, ամենուր կտեսնես բարձրացած կամ բարձրացող նոր արդյունաբերական, կենցաղային, առևտրի ձեռնարկությունների շենքեր, կուլտուրայի կամ սպորտի օբյեկտներ, բնակելի թաղամասեր։ Կապիտալ շինարարության տեմպերը հանրապետությունում հետպատերազմյան ողջ ժամանակամիջոցում շատ բարձր են եղել։ Այդ են վկայում և՛ արդյունաբերության նոր հսկաները, և՛ խոշոր գյուղատնտեսական օբյեկտները։ Այդ ժամանակահատվածում կառուցվել են ավելի քան 700 հազար բնակարան՝ 36,7 միլիոն քմ բնակելի տարածությամբ։ Լիտվայի բնակչության մոտավորապես 70 տոկոսն այժմ ապրում է սովետական իշխանության տարիներին կառուցված բնակարաններում։ Հանրապետության շինարարների, ճարտարապետների աշխատանքն արժանացել է համամիութենական ճանաչման։ Հայտաբերվում ու կենսագործվում են նոր լուծումներ, որպեսզի մարդիկ հարմար ու հարմարավետ ապրեն, որպեսզի կառուցեն արագ ու էժան։

Հսկայական շինարարական հրապարակ է դարձել և մեր գյուղը։ Հանրապետության գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի զարգացման (արտադրական և ոչ արտադրական նպատակով) հետպատերազմյան տարիներին ֆինանսավորման բոլոր աղբյուրներից երկարաժամկետ ներդրված են 8 մլրդ ռուբ. կապիտալ միջոցներ, կամ հանրապետության բոլոր ներդրումների 36 տոկոսը։ Արտադրական օբյեկտների շինարարությանը զուգընթաց, արագ աճում են գյուղական ավանները, ուր խուտորներից վերաբնակվում են ավելի ու ավելի շատ հողագործներ։ Մեր հանրապետությունում կա մոտ 280 հազար խուտոր։ Պետության օգնությամբ ավաններում բնակեցվել են ավելի քան 79 հազար խուտորների բնակիչներ։ Վերաբնակեցումն ավաններում այդ սոսկ ապրելակերպի փոփոխում չէ։ Այդ երկրագործների կենսապայմանների բարելավման վիթխարի վերափոխում է։

Սովետական Լիտվայում մեծ աշխատանք է տարված երկաթուղային, ավտոմոբիլային, գետային, ծովային ու օդային տրանսպորտի, կապի համակարգի զարգացման ասպարեզում։ Այդ ճյուղերն արտակարգ կարևոր դեր են խաղում մեր ողջ տնտեսական ու սոցիալական կյանքում։

Սովետական իշխանության տարիները սոցիալիստական հիմունքներով վերակերտված մեր գյուղատնտեսության պատմական փոփոխությունների տարիներ են։ Կոլեկտիվացումը գյուղի առջև բացեց զարգացման ու ծաղկման լայն հեռանկարներ։ Կոլտնտեսային գյուղում համարյա հետք չմնաց կապիտալիստական ծանր անցյալից։ Սովետական Լիտվայի գյուղատնտեսությունը վերածվել է սոցիալիստական ժողովրդական տնտեսության ինդուստրիալ, գիտականորեն կառավարվող ճյուղի։ Դյուրին չի եղել ներկայիս բարձրունքների ուղին, ուստի և ավելի արժեքավոր են ձեռք բերված հաջողությունները։

Լիտվայի սոցիալիստական գյուղատնտեսությունը բոլոր ուղղություններով առաջ է ընթացել։ Գյուղատնտեսական արտադրանքի համախառն ծավալը նույնիսկ անբարենպաստ 1979 թվականին ավելի քան երկու անգամ գերազանցել է 1940 թվականի մակարդակը, չնայած նրան, որ պատերազմից առաջ Լիտվայում գյուղատնտեսության մեջ զբաղված էր բնակչության երեք քա-



ռորդը, իսկ այժմ՝ ընդամենը 23 տոկոսը։ Հացահատիկային կուլտուրաների միջին տարեկան բերքատվությունն այս հնգամյակի չորս տարում հասավ հեկտարից 25,1 ցենտների և համարյա 3 անգամ բարձր էր, քան 1940 թվականին։ Այժմ մենք նախապատերազմյան տարիների համեմատությամբ ավելի քան եռապատկել ենք շաքարի ճակնդեղի բերքը, կրկնապատկել բանջարեղենինը։

Սովետական իշխանության տարիներին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հանրապետությունում ավելացել է 2,1, խոզերինը՝ 2,4, թռչուններինը՝ 3,6 անգամ։ Ամենամեծ ուշադրությունը նվիրվում է անասունների մսատվության բարձրացմանը, անասնապահության մյուս որակական ցուցանիշների բարելավմանը։ Անասնապահության բարձր ինտենսիվության մասին է վկայում այն, որ այժմ ստանում ենք 3,5 անգամ ավելի միս (սպանդանոցային քաշով), կաթ համարյա 2—5 անգամ ավելի, քան 1940 թվականին։

Առավել արագ է զարգացել մեր գյուղը վերջին երեք հնգամյակներում, կենսագործելով կուսակցության մշակած տնտեսական ու քաղաքական միջոցառումների համակարգը, որը հնարավորություն է ընձեռում առավել բարձր տեմպերով ավելացնելու կոլտնտեսային ու սովխոզային արտադրությունը։

Համեմատաբար վերջերս ուրախանում էինք չորացրած հողերի հեկտարներով, իսկ այժմ հանրապետությունում փակ դրենաժով չորացված են ավելի քան 2,2 միլիոն հեկտար գերխոնավ հողեր։ Գյուղատնտեսության էներգետիկ հզորությունները, 1940 թվականի համեմատությամբ, աճել են 27 անգամ։ Այժմ բոլոր հիմնական դաշտավարական աշխատանքներն ամբողջովին մեքենայացված են։ Ավելի լայնորեն է արմատավորվում մեքենայացումը անասնապահության մեջ։ Կոլտնտեսություններում, ինչպես և սովխոզներում ու պետական այլ տնտեսություններում, մշտապես աճում է հողագործության կուլտուրան, բարձրանում է բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ագրոտեխնիկական մակարդակը։ Հողագործության ու անասնապահության մեջ լայնորեն են օգտագործվում գիտության նվաճումները։ Գյուղատնտեսական գիտությունը դառնում է մեծ ուժ, որն այսօր օգնում է զարգացնելու արտադրությունը, հասնելու նորանոր հաջողությունների։

Գյուղատնտեսության հետագա զարգացումը մեծապես պայմանավորված է նրանով, թե որքան արագ, բանիմացորեն կընթանանք արտադրության կենտրոնացման ու մասնագիտացման մայրուղով։ Այդ կուսակցության ագրարային քաղաքականության հեռանկարային ուղղությունն է, որն անշեղորեն ու հետևողականորեն կենսագործվում է։ Հանրապետությունում կազմակերպված են 230 տերիտորիալ միջտնտեսային միավորումներ, ընդգրկելով բոլոր տնտեսությունները։ Ընդլայնվում է միջտնտեսային ու պետական անասնապահական համալիրների շինարարությունը։ Կենսագործելով տասներորդ հնգամյակում անասնապահական համալիրների կառուցման ծրագիրը և հասնելով այդ համալիրների նախագծային հզորության, մենք այստեղ կստանանք հանրապետության հանրային սեկտորում արտադրվող կաթի մեկ երրորդը, խոզի մսի՝ քառորդը։

Մեր սոցիալիստական գյուղում աճել է արտադրության փորձված կազմակերպիչների մեծ ջոկատ, աշխատանքի հազարավոր առաջավորներ իրենց ծանրակշիռ ավանդն ունեն ընդհանուր հաջողություններում։ Փոխվել է երկրագործների վերաբերմունքը հասարակական տնտեսության, աշխատանքի, սոցիալիստական սեփականության նկատմամբ։ Այսօր նա ակտիվ մասնակցում է կոլտնտեսության կամ սովխոզի կառավարմանը, տիրոջ պես է վերաբերվում հանրային տնտեսության հոգսերին։ Արտադրական ոլորտում արագ տարածվող գիտատեխնիկական առաջընթացը ընդգրկում է և հողագործի կենցաղը, նրա կուլտուրական կյանքը։ Մեր գյուղը վստահ ընթանում է պրոգրեսի ու ծաղկման ուղիով։

Սոցիալիստական էկոնոմիկայի դինամիկ զարգացումը, ազգային եկամտի անընդհատ աճը հնարավորություն ընձեռեցին բարձրացնելու աշխատավորության նյութական ու կուլտուրական կյանքի մակարդակը։ Հոգատարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ գլխավորն է կոմունիստական կուսակցության ու սովետական պետության գործունեության մեջ։ Հանրապետությու-

նում, ինչպես և ողջ երկրում, մշտապես աճում են բնակչության ռեալ եկամուտները, բարձրանում են բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատանքի վճարումները, աճում են հատկացումներն ու արտոնությունները հասարակական ֆոնդից։ 1979 թ. մանրածախ ապրանքաշրջանառությունը 16,2 անգամ ավելի էր, քան 1940 թվականին։ Առավելապես շատ են օգտագործվում սննդի արժեքավոր տեսակները։ Այժմ հանրապետության ամեն մի բնակիչ տարվա ընթացքում գնում է 11 անգամ ավելի սննդամթերք, իսկ այլ ապրանքներ՝ 18 անգամ ավելի, քան 1940 թվականին։ Այժմ բնակչությունն ավելի լավ է ապահովված արդյունաբերական ապրանքներով ու երկարատև օգտագործման առարկաներով։ Ըստ էության, բոլոր ընտանիքներն ունեն ռադիոընդունիչներ, $^{2}/_{3}$-ը՝ հեռուստացույցներ, սառնարաններ, լվացքի մեքենաներ։ Քաղաքներում ու գյուղերում ընդլայնվում է առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ցանցը։

Շատ բան է արվում բնակչության բնակարանային պայմանների բարելավման նպատակով։ Այսպես, միայն իններորդ հնգամյակի տարիներին բնակարան են ստացել կամ բարելավել են բնակարանային պայմանները 848 հազար մարդ, կամ Սովետական Լիտվայի բնակչության մեկ քառորդը, տասներորդ հնգամյակի չորս տարում՝ 614 հազար հոգի։

Սովետական իշխանության սոցիալական մեծ նվաճումը բնակչության ձրի բուժսպասարկումն է։ Լիտվայում բժիշկների թիվը, 1940 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 6 անգամ, միջին բժշկական ծառայողների անձնակազմը՝ 17,5։ Զգալի ավելացել է սանատորիաների ու հանգստի տների քանակը։ Մանկապարտեզներ ու մանկամսուրներ են հաճախում 141 հազար երեխաներ— 10,5 անգամ ավելի, քան 1940 թվականին։ Սովետական Լիտվայում այժմ կենսաթոշակներ են ստանում 658 հազար բնակիչներ, որոնցից 235 հազարը կոլտնտեսականներ են։

Կուսակցության հետևողական դաստիարակչական աշխատանքի շնորհիվ սովետական մարդկանց աճող նյութական բարեկեցությանն ուղեկցում են սոցիալիստական ապրելակերպի այնպիսի արժույթներ, ինչպիսին են՝ կոլեկտիվիզմն ու փոխադարձ օգնությունը, բարոյական հասունությունն ու ստեղծագործական ակտիվությունը, խոր նվիրվածությունը կոմունիստական իդեալներին և պատրաստակամությունը՝ անել ամեն ինչ հանուն դրանց հաղթանակի։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Սովետական Լիտվան աննախադեպ գագաթների է հասել լուսավորության, գիտության, կուլտուրայի բնագավառներում։ Հանրապետությունում, ըստ էության, իրականացվել է երիտասարդության համընդհանուր միջնակարգ կրթությունը, ավելի քան 600 հազար սովորողներ հաճախում են հանրակրթական դպրոցներ, 70 հազարը սովորում է հանրապետության 12 բուհերում, 69 հազարը՝ միջնակարգ մասնագիտական դպրոցներում։ Ինչպես ողջ երկրում, հանրապետությունում ևս ստեղծված են բոլոր պայմանները ըստ ցանկության մասնագիտություն ընտրելու, որակավորումը բարձրացնելու, հակումներն ու ունակությունները համակողմանի զարգացնելու համար։ Հետպատերազմյան տարիներին միջնակարգ մասնագիտական դպրոցներն ավարտել են 286 հազար մարդ, բարձրագույնը՝ մոտ 160 հազար։

Սովետական Լիտվայում մեծ հաջողությունների են հասել գիտության զարգացման բնագավառում։ Համատեղ գիտական հետազոտությունները, գիտական աշխատանքի արդյունքների ու եղրակացությունների փոխանակումը, գիտական աշխատանքների միասնական կոմպլեքսային ուղղությունը վկայում են հանրապետության գիտնականների բազմահազարանոց բանակի միջհանրապետական ու միջազգային ինտենսիվ փոխկապերի մասին։ Գիտական աշխատանքի մասշտաբների ու ուղղությունների առումով հանրապետությունը դարձել է հիմնարար ու կիրառական գիտական հետազոտությունների խոշոր կենտրոն։

Հասարակական մեծ առաջընթացի մասին է վկայում աշխատավորության կուլտուրական մակարդակի աճը։ Նրանք առավել հաճախ դառնում են ո՛չ միայն արվեստի սպառողներ, այլև ակտիվ արարողներ։ Այժմ հանրապետության ամեն



տասներորդ բնակիչը մասնակցում է գեղարվեստական ինքնագործունեությանը։ Երկրում և արտասահմանում փառքի են արժանացել Սովետական Լիտվայի պրոֆեսիոնալ գեղարվեստական կոլեկտիվները, արվեստի տարբեր ժանրերի ներկայացուցիչները։ Շնորհիվ գեղարվեստական ներազդման մեծ ուժի և քաղաքացիական պաթոսի՝ սոցիալիստական արվեստը կարևոր դեր է խաղում կոմունիզմի կառուցման շնորհակալ խնդիրների լուծման համար հասարակությանը մոբիլիզացնելու գործում։ Գրողները, նկարիչները, կոմպոզիտորները իրենց ստեղծագործության մեջ հավերժացրել են սովետական իրականության ռեալ երևույթները, ստեղծելով բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային արվեստի ստեղծագործություններ, որոնք հարստացնում են մեր բազմազգ հայրենիքի կուլտուրայի գանձարանը։

Սովետական իշխանության տարիներին ընդհանուր կուլտուրայի բաղկացուցիչ մասը դարձան ֆիզկուլտուրան, սպորտը, տուրիզմը։ Այդ բոլորը նպաստում է մարդու ֆիզիկական ու հոգևոր ուժերի, ամբողջական, ներդաշնակ անհատի զարգացմանը։

Լիտվական ՍՍՀ-ի, ինչպես և յուրաքանչյուր սովետական հանրապետության հաջողությունները, որ ձեռք են բերվել ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում, լենինյան ազգային քաղաքականության, սոցիալիստական ազգերի բարեկամության ու համագործակցության, եղբայրության ու փոխադարձ օգնության կենսատու ուժի համոզիչ վկայությունն են։ Այդ նվաճումները ցուցադրում են սոցիալիզմի առավելություններն ու հնարավորությունները, մարքս-լենինյան գաղափարախոսության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ուժը, աշխատավորության հավատարմությունը կոմունիզմի իդեալներին։ Նշելով իր երևելի տոնը, լիտվացի ժողովուրդը լի է շնորհակալության ամենասրտագին խոսքերով բոլոր սովետական ժողովուրդների, և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի նկատմամբ այն օգնության համար, որ զգացել ու զգում ենք մեր ճանապարհին։

Մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը փառապանծ կոմունիստական կուսակցությունն է։ Լինելով ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը, մշտապես ամրապնդելով իր շարքերը՝ Լիտվայի կոմունիստական կուսակցությունը կատարելացնում է իր գործունեությունը։ Այժմ նրա շարքերում են 168 հազար կոմունիստներ։ Գործելով իրեն հատուկ կազմակերպական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի մեթոդներով, կուսակցական կազմակերպությունները աշխատավորության ջանքերն ուղղում են հասնելու գլխավոր նպատակին՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի պլանների կատարմանը։

Լիտվայի աշխատավորները, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը ավելի ու ավելի ակտիվ են մասնակցում պետական, հասարակական, արտադրական գործերի կառավարմանը, օգտվում են ՍՍՀՄ սահմանադրության, մեր հանրապետության սահմանադրության ընձեռած սոցիալ-տնտեսական, քաղաքական ու անձնական իրավունքներից ու ազատությունից, ձգտում են լավագույն ձևով կատարել իրենց պարտականությունները։ Մենք տեսնում ենք, ինչպես համակողմանի աճում է ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիութենական, կոմերիտական, մասսայական բոլոր կազմակերպությունների դերը, բարձրանում է աշխատավորական կոլեկտիվների ակտիվությունը, ինչպես լայնորեն տարածվում է կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։

Լիտվայում սովետական իշխանության վերականգնման 40-ամյակը նշվում է նշանակալի ժամանակ— հնգամյակի ավարտական տարում, լենինյան հարվածային աշխատանքի տարում։ Այս հիանալի տոնը արտադրության հազարավոր առաջավորներ, արտադրական շատ կոլեկտիվներ դիմավորում են տասներորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելով։ Ուրախանալով հնգամյակի առաջավորների հաջողություններով, մենք միաժամանակ պետք է հասնենք հնարավորին չափ լավագույն ցուցանիշների գործունեության բոլոր տեղամասերում, բոլոր կոլեկտիվներում։

Մենք թևակոխել ենք հնգամյակի ավարտական տարվա երկրորդ կեսը։ Առջևում շատ մեծ ու պատասխանատու խնդիրներ են։ «Մենք պետք է,— նշեց

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հոգածությամբ մոտենանք այն ողջ դրականին, ինչ կա մեր աշխատանքում,— լինի դա քաղաքում, թե գյուղում։

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է քննադատաբար վերաբերվել այն վրիպումներին, թերություններին, որոնք, ցավոք, կան թե՛ տնտեսավարման պրակտիկայում, թե՛ նաև կուսակցական աշխատանքում»։

Տոնական օրերին մենք ո՛չ միայն ամփոփում ենք հաջողումները, այլև վերլուծում թերությունները, նշում ենք՝ ինչպես աշխատել ավելի լավ, արտադրողաբար, որպեսզի բարձրանան աշխատանքի արտադրողականությունը, արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը, աճի փոխադարձ պահանջկոտությունն ու պատասխանատվությունը, առավել ներգործուն դառնա սոցիալիստական մրցությունը, լավագույն ձևով օգտագործվեն բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։

Փոքր չեն 1980 թվականի համար հանրապետության աշխատավորների ընդունած պարտավորությունները։ Յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատողի պատվի գործն է հասնել այն բանին, որ դրանք ամբողջովին կատարվեն։ Այդ ուղղությամբ հատկապես պետք է շատ աշխատեն արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարությունների կոլեկտիվները, տրանսպորտի կազմակերպությունները։ Բերքի համար ծավալված պայքարում պատասխանատու խնդիրներ են դրված հողագործների առաջ,— ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի արդյունքը, հասնել նրան, որ այս տարին մեր գյուղատնտեսության շտեմարանները լինեն ավելի հարուստ։

Լենինի ու ժողովուրդների բարեկամության շքանշաններով պարգևատրված Սովետական Լիտվան թևակոխում է իր գոյության հինգերորդ տասնամյակը՝ լի ստեղծագործական ուժերով։ Բոլոր գործերով ու ձգտումներով Լիտվայի ժողովուրդն այսօր կրկին վառ ցուցադրում է իր նվիրվածությունը կոմունիզմի վեհ իդեալներին, իր համախմբվածությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջը, միահամուռ պաշտպանում նրա իմաստուն ներքին ու արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Լենինի գործի հավատարիմ շարունակող, խաղաղության ու կոմունիզմի անխոնջ մարտիկ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի արգասաբեր գործունեությունը։ Ցուցադրելով իր նվիրվածությունը կուսակցությանը, նրա նախանշած պլանները կենսագործելու վճռականությունը, լենինաբար-կոմունիստաբար ապրելու, աշխատելու և մարտնչելու ձգտումը, հանրապետության աշխատավորները կանգնում են հարվածային հերթափոխի, արժանավայել դիմավորելու նշանակալի իրադարձությունը՝ ՍՄԿԿ XXVI համագումարը։

Սովետական իշխանության տարիներին մեր երկրամասի զարգացման ողջ ընթացքը համոզիչ ապացուցում է, որ լիտվական ժողովրդի ընտրած զարգացման սոցիալիստական ուղին, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ եղբայրության ու բարեկամության ուղին միակ ճշմարիտն է։ Սովետական Լիտվան հաստատակամ ու վստահ ընթանում է այդ ուղիով։

«Коммунист», (Литва), № 7, 1980 г.

# ՀԱՐԱԶԱՏ ԵՆ ԱՐԱՐԱՏԸ ԵՎ ՆԵՄԱՆԸ

## (ԼԻՏՎԱԿԱՆ ԳՐՈՂՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԱՍԻՆ)

**ՎԱՂԵՄԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՄԲ** են կապված հայ և լիտվացի ժողովուրդները։ Ազատաբաղձ ձգտումները, համանման ճակատագիրը նրանց համակել են միմյանց նկատմամբ սիրո և հարգանքի ամենաազնիվ զգացմունքներով։ Դարեր շարունակ հայերն ու լիտվացիներն իրենց անկախությունը պաշտպանելու համար հարկադրված են եղել հարատև ու համառ պայքար մղել հաճախակի իրենց երկրները ներխուժած օտարերկրյա զավթիչների դեմ։ Իրարից հեռու գտնվող այս ժողովուրդները հաճախ են օգնության ձեռք մեկնել միմյանց։

Հայ և լիտվացի ժողովուրդների դարավոր բարեկամությունն արտացոլվել է նաև գրականության, արվեստի ու մշակույթի ոլորտում։

«...Հայ-լիտվական գրական կապերի հիմնաքարը պետք է համարել լիտվացի ճանաչված գրող և գրաքննադատ Անթանաս Կրիշչյուկայտիսի Հայկական բելետրիստներ հոդվածաշարը, որը տպագրվել է լիտվական «Վարպաս» («Զանգ») գրական հանդեսի 1894 թվականի հինգ (3, 5, 8, 10 և 12) համարներում։ Շատ մեծ հետաքրքրություն է առաջացրել այն Լիտվայում և հետագայում վերատպվել է գրականության քրեստոմատիաներում։ Լիտվացի ճանաչված գրողը դրա միջոցով իր հայրենակիցներին ծանոթացնում է հայ ականավոր գրողների ստեղծագործություններին՝ ներկայացնելով ու բնութագրելով նրանց նշանավոր երկերը։ Ա. Կրիշչյուկայտիսն անդրադառնում է հայ ժողովրդի անցյալին, նրա մղած ազատագրական կռիվներին, գաղթականների կյանքին, նրանց ձգտումներին, խոսում հայ գրի ու գրականության ստեղծման, հին հայերենի՝ գրաբարի, հայկական բարբառների և աշխարհաբարի մասին։ Հայերենից լիտվերեն թարգմանված առաջին չափածո ստեղծագործությունը Ռաֆայել Պատկանյանի «Արաքսի արտասուքը» բանաստեղծությունն է, որը 1897 թվականին լիտվերեն է թարգմանել բանաստեղծ Մարցելինաս Շիկշնիս-Շյաուլենիկշիսը. այն տպագրվել է «Վարպաս» հանդեսում, նույն թվականին։

Հայ-լիտվական այդ կապերը ծավալվեցին, զարգացան և ավելի ամրապնդվեցին 1940 թվականից, երբ Լիտվայում հաստատվեցին սովետական կարգեր. լայն ասպարեզ բացվեց սոցիալիստական ազգերի զարգացման, փոխհարստացման ու մերձեցման համար։ Հայ-լիտվական գրական կապերն առավել խորացան Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին, երբ լիտվացի եղբայրների հետ ուս-ուսի ֆաշիստական զավթիչների դեմ լիտվական հողի համար հերոսաբար մարտնչում էին նաև հայ ժողովրդի զավակները։ Լիտվայում այժմ խոր ակնածանքով են խոսում Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս, Վիլնյուսի պատվավոր քաղաքացի Հովհաննես Բաղրամյանի մասին, որի հրամանատարությամբ Մերձբալթյան առաջին ռազմաճակատի զորքերը գերմանաֆաշիստական զավթիչներից վերջնականապես ազատագրեցին Սովետական Լիտվան։

Պատերազմից հետո Հայաստան այցելած լիտվացի նշանավոր բանաստեղծ Անթանաս Վենցլովան հիանում է մեր հանրապետությամբ, նրա աշխատասեր զավակներով և վերհիշելով պատերազմն ու Լիտվայի համար մարտնչած հայազգի քաջերին, գրում է.

*«...Այգաբացին նոր բացված ծաղիկներին եմ նայում,*
*Հավերժական սառույցին ու լեռների շղթային,*
*Ու հիշում եմ, թե ինչպես հանուն իմ թանկ Լիտվայի,*
*Որդիներն այս աշխարհի կռվում էին ու մեռնում»։*

*(Թարգմ. Պ. Սևակի)*

Պատերազմի ահեղ օրերին իսկ լիտվացի գրողները թարգմանում էին հայ հեղինակներին։ 1941 թվականին լիտվական «Թաշտայ»

հանդեսում տպագրվեց Ավ. Իսահակյանի «Գրիր ինձ մեղմիկ...», «Ես որ մեռնիմ ու իմ վերքից», «Հավերժական սեր», «Սիրելի հերոս Ս. Գ. Զաքիյանի անմահ հիշատակին» բանաստեղծությունները:

Լենինյան մրցանակի դափնեկիր, ականավոր բանաստեղծ Էդուարդաս Մեժելայտիսը խոստովանել է. «Իմ «ծանոթությունը» Իսահակյանի հետ տեղի ունեցավ պատերազմի տարիներին, խրամատներում: Նրա հայրենասիրական բանաստեղծությունները պայքարի էին ոգեկոչում մեզ, տանում մարտի:

Մեծ Վարպետն ինձ երեք բան է սովորեցրել. որպես երիտասարդ քաղաքացու ինձ սովորեցրել է սովետական հայրենասիրություն, որպես երիտասարդ զինվորի՝ ատելություն ֆաշիզմի նկատմամբ և որպես երիտասարդ բանաստեղծի սովորեցրել է պոեզիա»:

Ասես, շարունակելով Էդուարդաս Մեժելայտիսի միտքը՝ Լիտվայի գրողների միության վարչության նախագահ Ա. Մալդոնիսը գրում է. «Շատ բանաստեղծներ են գրել հայրենի երկրի, նրա մարդկանց մասին... Քչերին է հաջողվել մի քանի տողով զարմանալի պարզությամբ ու ցայտունությամբ ստեղծել հայրենիքի անկրկնելի, կենդանի կերպարը, որը, ասես, հասնում է դարերի խորքը և, միևնույն ժամանակ, ուղղված է ապագային... Ավ. Իսահակյանը թե՛ որպես մարդ, թե՛ որպես ժողովրդի երգիչ, ամուր կապված լինելով իր ժողովրդի հետ, չէր կարող մի կողմ քաշվել այն վերապրումներից, որ Հայաստանին ընձեռեց Մեծ հոկտեմբերը: Ավ. Իսահակյանի պոեզիան հիմն է ի պատիվ մարդու, գեղեցիկ ու լուսավոր կյանքի համար նրա մղած պայքարի»:

Հայ-լիտվական բարեկամական կապերի արտահայտություններից են երկու հանրապետությունների գրողների, արվեստագետների փոխայցելությունները, բազմաթիվ թարգմանությունները:

1946 թվականին սովետահայ գրողները հյուրընկալեցին լիտվացի գրչակիցներին: Պատվիրակությունը գլխավորում էր ճանաչված գրող Պյատրաս Ցվիրկան: Նրանք եղան մեր հանրապետության տեսարժան վայրերում, հայ գրողների հետ համատեղ կազմակերպեցին հայ-լիտվական բարեկամությանը նվիրված երեկո: «Գրական թերթի»՝ 1946 թվականի նոյեմբերի 30-ի համարում տպագրվեցին լիտվացի գրողների տպավորությունները:

«Մենք՝ լիտվական գրողներս, առաջին անգամ ենք լինում Սովետական Հայաստանում: Մի քանի օրվա ընթացքում հնարավորություն ունեցանք ծանոթանալու հնադարյան հայ ժողովրդի հազարամյա կուլտուրային, նրա պատմական հուշարձաններին, նրա զարմանալի հարուստ գրականությանը և Հայաստանի ամբողջ տնտեսության բնագավառում ձեռք բերած նվաճումներին:

Մենք՝ փոքր ժողովրդի ներկայացուցիչներս, կրկին անգամ համոզվեցինք, որ միայն սովետական կարգերում, ժողովուրդների լենինյան բարեկամության շնորհիվ կարելի է հասնել այսպիսի նվաճումների: Ձեր օրինակով մեր երիտասարդ սովետական հանրապետությունը նույնպես կհասնի մեծ նվաճումների: Մենք խորապես համոզված ենք, որ հայ և լիտվական գրողների բարեկամությունն այսուհետ է՛լ ավելի ամուր կլինի: Մենք ունենք բոլոր հնարավորությունները՝ դասական գրականության սքանչելի նմուշները, մեր մայրենի լեզվով թարգմանելու: Այդ գործերը կկարդա, կըսիրի և կհիանա լիտվացի ընթերցողը:

Վերադառնալով Սովետական Հայաստանից, մենք տանում ենք ստեղծագործ, պոետական ոգի ունեցող հայ ժողովրդի ջերմ սերն ու համակրանքը լիտվական ժողովրդին: Մենք երբեք չենք մոռանա արևավառ Հայաստանը, նրա հիանալի ժողովրդին, նրա զարմանալի հարուստ գրականությունն ու մշակույթը:

Փա՜ռք ստեղծագործ հայ ժողովրդին, նրա գրականությանը՝ հանձինս Խ. Աբովյանի, Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի»,— գրել է Պ. Ցվիրկան:

Հայ կյանքի Ակրոպոլը խորագիրը կրող տպավորություններում Ա. Վենուլիսը գրել է. «Ես՝ հեռավոր հյուսիսի զավակս, Սովետական Լիտվայի քաղաքացիս, իմ գլուխն եմ խոնարհում հայ ժողովրդի բազմադարյան մշակույթի առաջ: Այդ գանձերը հայ կյանքի Ակրոպոլն են:

Ինձ անսահման ուրախացնում է հայկական վերածնությունը բիբլիական Արարատի ստորոտում: Այն ամենը, ինչ ես տեսել եմ Սովետական Հայաստանում, ինձ և իմ ընկերների համար կլինի դաս, թե ինչպես պետք է սիրել Հայրենիքը, ինչպես պետք է աշխատել ժողովրդի բարօրության համար: Մենք եղանք Էջմիածնի տաճարում, Զվարթնոցում, դիտեցինք հնագույն ձեռագրերով հարուստ Մատենադարանը, կերպարվեստի ու գրական թանգարանները, հայ տպագիր գրքի ցուցահանդեսը և պատմական նշանակություն ունեցող այլ վայրեր: Ամենուրեք մեզ զարմացնում էին հայ ժողովրդի բարձր արվեստն ու մշակույթը»:

Իսկ Ալբինաս Ժուկաուսկասը հայաստանյան իր տպավորությունները վերնագրել է՝ Ավելի ամուր, քան իր երկրի քարերը: Այստեղ կարդում ենք. «Իր բազմադարյան գոյության ընթացքում հայ ժողովուրդը շատ անգամ է արյունահեղ մարտեր մղել իր սրբազան հողը ներխուժած զավթիչների դեմ: Այդ փոթորիկների ժամանակ նա ավելի ամուր գտնվեց, քան իր լեռնային երկրի քարերը: Հազարամյակների ընթացքում նա պահպանեց ո՛չ միայն իր ֆիզիկական գոյությունը, այլև՝ իր մշակույթը, գրականությունն ու արվեստը: Անցան դարեր, շատ քիչ բան մնաց պատմական հուշարձաններից, բայց հաղթեց ինքը՝ ժողովուրդը և պահպանեց իր ազգային ինքնուրույնությունը...

Հայ ժողովուրդն այլևս վշտի ու արցունքի ժողովուրդ չէ: Նա այժմ կերտում է իր սոցիալիստական հայրենիքը, իր երջանիկ ապագան»:

Լիտվացի Յոզաս Պառւլշտելիսի Թող հավերժ ծաղկի Սովետական Հայաստանը խորագիրը կրող տպավորություններում կարդում ենք. «Ես երազում էի տեսնել հայ տաղանդավոր ժողովրդին, որի մասին միայն կարդացել էի: Այստեղ ամեն մի երևույթի մեջ երևում է հայ մարդու խանդավառությունը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո, Լենինի հանճարով վերջնականապես ազատագրվեց հայ ժողովուրդը: Այդ ժամանակից ի վեր բուռն վերելք են ապրում Հայաստանի և՛ ժողովրդական տնտեսությունը, և՛ արվեստն ու գրականությունը:

Մենք Սովետական Հայաստանից հեռանում ենք շատ բան տեսած ու սովորած: Այն ջերմ վերաբերմունքը, որ ցույց տվին մեզ Հայաստանի կառավարությունը, գրողների միությունն ու մյուս կազմակերպությունները, անչափ հուզեց հեռավոր Լիտվայի զավակներիս: Այն, ինչ մենք տեսանք Հայաստանի մայրաքաղաք Երևանում, կոլտնտեսություններում, սովխոզներում և մշակույթի օջախներում, անմոռանալի տպավորություն թողեց մեզ վրա: Այդ բոլորը մենք կհաղորդենք մեր ժողովրդին, մեր գրողներին:

Թող հավե՜րժ ծաղկի Սովետական Հայաստանը»:

1950 թ. լույս տեսավ լիտվացի գրող Ա. Վենուլիսի Կովկասյան լեգենդները գիրքը: Կովկասյան մի շարք ժողովուրդների լեգենդների հետ միասին գրքում տեղ է գտել և հայկական լեգենդը՝ Ա. Վենուլիսի մշակմամբ: Այն կարդացել ու բարձր է գնահատել Ավ. Իսահակյանը:

Խոսելով հայ ժողովրդի անցած ուղու, ճակատագրի մասին, Ա. Վենուլիսը նկարագրել է նաև Սովետական Հայաստանը, երկրի առաջընթացը գիտության, մշակույթի ու արվեստի ասպարեզում:

1953 թվականին Հայաստան է այցելել Լիտվական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի լեզվի և գրականության ինստիտուտի դիրեկտոր, ակադեմիկոս, բանաստեղծ և գրականագետ Կոստաս Կորսակասը: Ճանաչված գիտնականը եղել է մեր հանրապետության մի շարք տեսարժան վայրերում: Հենց այդ ուղևորությունների ժամանակ է ծնվել նրա «Սևանի կրակները» բանաստեղծությունը, որտեղ նա նկարագրում է Սովետական Հայաստանի առօրյան, նրա հերոսական ժողովրդին, քաղաքամայր Երևանը, Սևանա լիճը...

1969 թվականին Լիտվայում անցկացվեցին մի շարք հետաքրքրական միջոցառումներ՝ նվիրված Հովհ. Թումանյանի ծննդյան 100-ամյակին: Բոլոր գրադարաններում և մշակույթի օջախներում բացվեցին ցուցահանդեսներ, կազմակերպվեցին գրական-գեղարվեստական երեկոներ: «Լիտերատուրա իր մյանաս» («Գրականություն և արվեստ») շաբաթաթերթում տպագրվեց Հովհ. Թումանյանի «Ախթամար» լեգենդը՝ Անթանաս Վենցլովայի թարգմանությամբ:

1969 թվականի սեպտեմբերի 20-ին Երևանի Գ. Սունդուկյանի անվան թատրոնում տեղի ունեցավ ՍՍՀՄ և Հայաստանի գրողների միությունների վարչությունների համատեղ պլենումը՝ նվիրված Հովհաննես Թումանյանի ծննդյան 100-ամյակին: Պլենումում Հովհ. Թումանյանին նվիրված զեկուցումով հանդես եկավ Լիտվայի պատվիրակության ղեկավար, լենինյան մրցանակի դափնեկիր, բանաստեղծ Էդուարդաս Մեժելայտիսը: Հանգամանորեն վերլուծելով Հ. Թումանյանի մի շարք ստեղծագործություններ՝ վերջում նա ասաց. «Այսօր նա մեր առջև հառնում է որպես մի հսկա ժայռ, որը հայկական տապ արևի շողերի ներքո շողարձակում է քնարական, էպիկական, փիլիսոփայական և պարզապես մարդկային ծիածանի բոլոր գույներով, իր ողջ աննկարագրելի գեղեցկությամբ: Շնորհակալություն կյանքին, որ բանաստեղծին հարյուրապատիկն է հատուցում նրա ապրած բոլոր երկունքների ու անքուն գիշերների համար»:

Իսկ Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնում տեղի ունեցած հանդիսավոր նիստում Յու. Նարկևիչյուտեն ասաց. «Սաթե Բալթիկ ծովի ափերից մենք արևաշող Հայաստան ենք եկել՝ երկրպագելու մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանի հանճարին: Հոբելյանական տոնահանդեսներին ներկա գտնվելով բարձրաբերձ լեռների և հինավուրց մշակույթի այս հիասքանչ երկրում, մենք նոր ուժով զգացինք Թումանյանի պոեզիայի մեծ զորությունը:

Ի սրտե շնորհակալ ենք հոբելյանական հանդեսի հրավեր ստանալու համար: Հայաստանի տաղանդավոր ժողովրդին մաղթում ենք մարդկային մեծ բախտավորություն, որին կոչում էր մեծ բանաստեղծը:

Մենք Հայաստանից մեկնում ենք այն տպա-

վորությամբ, որ հայ ժողովուրդն անհուն գորով է տածում դեպի իր վեհապանծ հերոսական անցյալը, հիասքանչ ներկան ու լուսապայծառ ապագան, սիրում է իր մեծ զավակներին, իր ժողովրդի հոգևոր առաջնորդներին, մշակույթի հին ու նոր հուշարձանները»:

Սովետահայ նշանավոր գրող Գուրգեն Մահարին նմանության եզրեր է գտնում հայ և լիտվացի գրողների՝ Յոզաս Գրուշասի և Ալեքսանդր Ծիրվանզադեի, Շիմկուսի և Իսահակյանի, Ավիժյուսի և Խանզադյանի միջև:

Լիտվայում բարձր են գնահատում սովետահայ նշանավոր բանաստեղծ Եղիշե Չարենցի ստեղծագործությունները: Չարենցի բանաստեղծությունները լիտվերեն են թարգմանել ճանաչված բանաստեղծներ Յուստինաս Մարցինկյավիչյուսը, Վ. Բլոժեն, Մ. Մարտինյատիսը և ուրիշներ: Բանաստեղծի հոբելյանական հանդիսությանը մասնակցում էր Լիտվայի գրողների միության օրգան «Պյարգալե» («Հաղթանակ») գրական հանդեսի խմբագիր Յ. Մացյավիչյուսը:

«Երբ մենք ձեզ մոտ էինք գալիս՝ հարգելու հիանալի հեղափոխական բանաստեղծ Եղիշե Չարենցի հիշատակը,— ասաց նա,— ես որոնում էի ամենագեղեցիկ խոսքերը: Բայց դրանք բոլորը խամրեցին, երբ ոտք դրեցինք բանաստեղծի հայրենի երկիրը: Հավանաբար չարժե գեղեցիկ խոսքեր ասել բանաստեղծների մասին, հատկապես այնպիսի բանաստեղծների, որպիսին էր Չարենցը: Նրանց մասին հարկավոր է խոսել պարզ ու խիստ բառերով, ինչպես որ պարզ ու խիստ էր հեղափոխությունը, որին իր ողջ պայծառ տաղանդը նվիրաբերեց բանաստեղծը: Նա հեղափոխության փողհարն էր, այդ պատճառով էլ թանկ է Սովետական Միության բոլոր ժողովուրդներին»:

Հայաստանով ու հայ ժողովրդով հիացած բանաստեղծ Էդուարդաս Մեժելայտիսը մեծ ոգևորությամբ գրել է. «Ինչ-որ կարդացել եմ ես, ինչ-որ բան տեսել, ինչ-որ բան ճաշակել եմ ժամանակին: Եվ, խոստովանեմ, աստիճանաբար ավելի հազվադեպ եմ զարմանում: Ի՞նչ է նշանակում զարմանալ: Դա այն է, երբ ինչ-որ բան բռնում է ձեր շնչառությունը, կոկորդը սեղմում են երկաթե մամլակները, իսկ աչքերից գլորվում են խոշոր արցունքներ: Երբ սիրտը տրոփում է, ինչպես ջիգիթի երիվարը լեռնանցքում, երբ կուրծքը լցվում է այնպիսի ուրախությամբ, որպիսին արթնացնում է ինչ-որ մի նոր, չտեսնված ու սքանչելի բան՝ մարդկային ոգու ամենաանգերազանցելի մեծությունը:

Եվ, այնուամենայնիվ, ստիպված ես լինում երբեմն զարմանալ: Եվ, այնուամենայնիվ, կատաղի հրճվանքից հաճախ տրոփում է սիրտդ կրծքիդ տակ, ինչպես քառատրոփ վարգող երիվարը: Այդպիսի ապրում ես ունեցա անցյալ տարի, Հայաստանում, երկրագնդի այդ սքանչելի անկյունում, որին կուզենայի աստվածաշնչային անվանում տալ՝ դրախտ»:

«Արդեն շատ վաղուց,— շարունակում է նա,— ես երազում էի իմ աչքերով տեսնել հայկական ներկապնակի հանճարեղ բանաստեղծ Մարտիրոս Սարյանին, նայել նրա լուսավոր աչքերի մեջ... նայել նրա բնագույն կտավներին: Ես կանգնել էի այդ բազմափորձ ու հանճարեղ Վարպետի արարչությունների առջև, և արվեստի սիրելի ստեղծագործությունների պատկերասրահը, որ ես կրում էի իմ կրծքում, հարստացավ նոր, սքանչելի գլուխգործոցներով»:

Էդուարդաս Մեժելայտիսը Հայաստանում երկար չմնաց: Սակայն այդ փոքր ժամանակահատվածն էլ բավական էր, որ նա կարողանար մոտիկից ծանոթանալ ու ճանաչել հայ ժողովրդին և մեր մշակութային արժեքները: Մեծագույն բավականություն էր հայաստանյան ուղևորությունը լիտվացի բանաստեղծի համար: Սակայն ամենաթանկը հանճարեղ Նարեկացու Մատյան ողբերգության պոեմի ռուսերեն թարգմանված գիրքն էր:

«...Ճիշտ է,— գրում է նա,— սկզբում ես առանձին ուշադրություն չդարձրի գրքույկին: Խոթեցի պիջակիս գրպանը, բերեցի հյուրանոց և այդ օրը նույնիսկ չթերթեցի: Հաջորդ օրն արթնացա, ոչ լույս կար, ոչ արևածագ և, չիմանալով ինչ անել, բացեցի հատորիկը: Եվ որքան շատ էի կարդում, այնքան բռնվում էր շունչս, վրա էր հասել կյանքի այն երջանիկ պահերից մեկը, երբ կախարդվում ես ու հրպարտանում մարդկային հանճարով: Հեռվում կապույտ մետաքսե մշուշի միջից դուրս էին լողում արևով օծված վիթխարի Արարատի ալեհեր փնջերը: Անտեսանելի թևերով ինձ հասնում էր թավշե դեղձերի և սաթե խաղողի քաղցրահամ բույրը: Ես արբել էի այդ դրախտային բույրերից: Բայց ինձ առավել արբեցնում էին միջնադարյան հումանիստի բանաստեղծական խոստովանանքը, փիլիսոփայական մերկ աղոթքներն ու ողբերգական հեծկլտանքը:

Շնորհակալություն եղբայրական Հայաստանին այս հրաշալի նվերի համար, որը հիմա դրված է իմ սեղանին՝ համաշխարհային քնարերգության մեծագույն գոհարների կողքին: Հաճախ բաց եմ անում այս հատորը, բայց ծանրակշիռ գրքույկը և ամեն անգամ շատ բան եմ քաղում նրա մեջ պարփակված խոր իմաստությունից ու գեղեցկությունից: Եվ ամեն անգամ այդ գրքույկն ինձ հիշեցնում է, որ ես պարտական եմ հայ քնարերգությանը: Սակայն համոզված եմ, որ կգա օրը, և ես մի կողմ կդնեմ իմ այլևայլ աշխատանքները և կփորձեմ Նեմանի հողում վերատնկել հայկական այդ եզակի... բարձր, ճյուղառատ ու բազմատերև ծառը, որպեսզի նրա սքանչելի գեղեցկությունը վայելեն նաև քնարերգության լիտվացի սիրահարները»:

Հանճարեղ Նարեկացու Մատյան ողբերգության պոեմը լիտվացի բանաստեղծը համեմատում է Բախի խորալների հետ և անվանում «Գեղարդի քարե վեհապանծ խորալի կենդանի արձագանք»:

1975 թվականին Մոսկվայի «Խուդոժեստվեննայա լիտերատուրա» հրատարակչությունը միութենական ընթերցողի սեղանին դրեց Պարույր Սևակի բանաստեղծությունների ռուսերեն ժողովածուն, որի առաջաբանի հեղինակն է Էդուարդաս Մեժելայտիսը: «Լույսի և բարու երգիչը» խորագիրը կրող առաջաբանում Էդուարդաս Մեժելայտիսը խոսում է լիտվերենից Պ. Սևակի կատարած բարձրորակ թարգմանությունների, իրենց ծանոթության ու մտերմության, Սևակի ստեղծագործական աշխարհի մասին: Լիտվացի բանաստեղծը հազարավոր կիլոմետրեր հեռու է Հայաստանից, երբեք չի խզում իր կապը հայկական մշակույթից ու արվեստից, նա անկեղծորեն սիրում է հայ ժողովրդին ու Հայաստանը:

Ուշագրավ է «Սովետական գրականություն» հանդեսի 1972 թվականի օգոստոսյան համարը՝ նվիրված լիտվական գրականությանը:

Այստեղ տպագրված են Էդ. Մեժելայտիսի, Յ. Ավիժյուսի, Ս.. Վենցլովայի, Յու. Մարցինկյավիչյուսի, Ալ. Պոցյուսի, Յու. Գրուշասի և այլոց ստեղծագործությունները: Զետեղված է և Հայաստան այցելած լիտվացի գրող Էուգենյուս Իգնատավիչյուսի Երկարակեցության ջրերը խորագիրը կրող ակնարկը, որը երկու հանրապետությունների բարեկամության վառ արտահայտությունն է:

Հարուստ ու բազմազան են եղբայրացած ժողովուրդների գրական կապերը: Անշուշտ, կարելի է շարունակել մեր ակնարկը, սակայն ասվածը բավական է՝ պատկերացնելու հայ ու լիտվացի ժողովուրդների հոգևոր աշխարհի հարանուն ինտերնացիոնալիստական կապերը:

Սույն շնորհակալական խոսք չեն մեծանուն բանաստեղծների, գրողների գործերից արված մեջբերումները, նրանց անունները: Սոցիալիստական իրականության բարոյական նոր արժեքների իմաստավորում, ժողովուրդների բարեկամության վառ արտահայտություն են դրանք:

Ֆ. Բ. ԲԱԽՉԻՆՅԱՆ

# ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՈՈՊԵՐԱՑԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ա. Կ. ԱՅՐՈՒՄՅԱՆ
Տնտեսական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ համակարգում կուսակցությունը համապետական նշանակություն է տալիս միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացմանն ու համակենտրոնացմանը: «Այդ մեծ աշխատանքի լավ մտածված կազմակերպումով,— ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումում, հնարավոր է լինում քիչ ծախսումներով, ժամանակի տնտեսմամբ հասնել այն բնագծերին, որ կուսակցությունը սահմանում է գյուղատնտեսության համար»: Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և կառավարման ձևերի կատարելագործման այդ ուղղությունը իր հստակ բնորոշումն ստացավ ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում, Կենտկոմի համապատասխան պլենումների որոշումներում: Կուսակցության առաջադրած այդ ծրագիրը խորապես հիմնավորվեց «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Դա իրավամբ համարվում է զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների մարմնավորման ու ստեղծագործական զարգացման վառ օրինակ:

Արտադրաուժերի կատարելագործման և տնտեսական պոտենցիալի աճի պայմաններում երկրում տեղի է ունենում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման պրոցեսի հետագա խորացում, միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացում:

Միջտնտեսային և միջճյուղային սերտ կոոպերացումը խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսության և սննդարդյունաբերության արտադրանքի աճի տեմպերն արագացնելու, այդ ճյուղերի արդյունավետությունը բարձրացնելու, արտադրության կառավարման մեթոդները կատարելագործելու հարցում: Դա նաև սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման կարևոր միջոցներից մեկն է:

Բացառիկ է միջտնտեսային կոոպերացիայի նշանակությունը՝ որպես կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրության մասնագիտացման խորացման և համակենտրոնացման կարևոր պայմանի: Խոսքը վերաբերում է հանրային արտադրության կազմակերպման և կառավարման նկատմամբ սկզբունքորեն նոր մոտեցմանը:

Գյուղատնտեսական արտադրության կոոպերացման պրոցեսը երկրում



զգալիորեն զարգացավ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումից հետո: 1980 թ. սկզբներին արդեն երկրում կար 9,3 հազար միջտնտեսային ձեռնարկություն և կազմակերպություն՝ 1965 թ. 3,4 հազարի փոխարեն: Ավելի ու ավելի մեծ չափերով է ծավալվում ագրոարդյունաբերական ինտեգրացումը: Միջտնտեսային ձեռնարկություններում և կազմակերպություններում աշխատողների քանակը 1.700 հազարից ավելի է: Գյուղատնտեսական հիմնական արտադրական ֆոնդերի արժեքը (առանց անասունների) կազմում է մոտ 4 միլիարդ ռուբլի, իսկ շինարարական կազմակերպությունների արտադրական ֆոնդերը՝ 5100 մլն ռուբլի:

Գյուղատնտեսության մեջ առավել լայնորեն տարածվել են շինարարական և անասնապահական միջտնտեսային ձեռնարկությունները: Շինարարական կազմակերպությունների բաժինը միջտնտեսային ձեռնարկությունների ընդհանուր թվում կազմում է 33 տոկոս, չհաշված շինանյութեր արտադրող 220 ինքնուրույն կազմակերպությունները: Տեխնիկական հագեցվածությամբ և արդյունավետության ցուցանիշներով Մոլդավական ՍՍՀ և ՌՍՖՍՀ մի շարք մարզերի շինարարական միջտնտեսային կազմակերպությունները դարձել են խոշոր միավորումներ: Այդպիսի միավորումներն ունեն գործարաններ, բետոնե և երկաթբետոնե կառուցվածքների պատրաստման հրապարակներ, նախագծային ինստիտուտներ: Միջտնտեսային շինարարական կազմակերպությունների աշխատանքի պրակտիկան համոզչորեն ապացուցում է դրանց արդյունավետությունը:

Անասնապահական ձեռնարկությունների, թռչնաֆաբրիկաների, ինչպես նաև համակցված կերի գործարանների թիվը երկրում անցնում է 2 հազարից: Այդպիսի ձեռնարկություններում միավորվում են տնտեսությունների միջոցներն ու ջանքերը, լայն հնարավորություններ են ստեղծվում գիտության ու տեխնիկայի հաջողությունների կիրառման, արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման, կապիտալ ներդրումների, արտադրական ֆոնդերի ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման համար: Միջտնտեսային կոոպերացիայի կարևոր ժողովրդատնտեսական նշանակությունն այն է, որ դա նպաստում է գյուղում արտադրական կոմպլեքսների շինարարության, կուլտուր-կենցաղային և այլ շենքերի կառուցման միջոցների կենտրոնացմանը: Ինչ խոսք, որ այդպիսի խոշոր շինարարական աշխատանքներ ի վիճակի չեն կատարելու առանձին տնտեսությունները:

Երկրում, միջին հաշվով, մեկ միավոր արտադրանքի վրա կատարվող ծախսերը միջտնտեսային ձեռնարկություններում 2,5—3 անգամ, իսկ ինքնարժեքը՝ 1,2—2 անգամ ցածր են, քան մյուս տնտեսություններում:

Վերջին տարիներին միջտնտեսային կոոպերացիայի բնագավառում զգալի աշխատանքներ են ծավալվել Հայկական ՍՍՀ-ում: Դրանք ընդգրկում են երկու հիմնական ոլորտ՝ գյուղատնտեսական արտադրությունը և գյուղատնտեսության սպասարկումը: Այսօրվա դրությամբ հանրապետությունում գործում են միջտնտեսային 66 ձեռնարկություն, որից 53-ը՝ անասնապահական: Չնայած այդ տնտեսություններն ունեն արտադրության արդյունավետության տարբեր մակարդակներ, դրանցից շատերը, միջին շրջանային ցուցանիշների համեմատությամբ, հասել են արտադրական ավելի լավ արդյունքների, իսկ մի քանիսը որոշակի դրական ազդեցություն են գործում ամբողջ շրջանի գյուղատնտեսական արտադրության վրա: Միջտնտեսային ձեռնարկություններում, առանձին կոլտնտեսությունների ու սովխոզների համեմատությամբ, նկատելիորեն բարձր է անասունների միջին օրական քաշաճը, կարճ է բտման ժամանակաշրջանը, պակաս է միավոր արտադրանքի վրա ծախսվող կերի քանակը:

Միջտնտեսային կոոպերացման բնագավառում առանձնապես աչքի են ընկնում Ղուկասյանի, Ախուրյանի, Շահումյանի, Էջմիածնի, Սպիտակի շրջանները, որտեղ գործում են 4-ական և ավելի ձեռնարկություն, Գուգարքի, Սիսիանի, Ստեփանավանի, Հրազդանի, Արարատի, Ապարանի շրջանները, որոնք ունեն 2—3-ական ձեռնարկություն: Պարզ է, որ հարցը ո՛չ միայն և ոչ այնքան միջտնտեսային կազմակերպությունների քանակի մեջ է, որքան գործունեության արդյունավետության:

Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումում նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Մեզ հարկավոր են ոչ թե ամեն կարգի միավորումներ, այլ այնպիսիները, որոնք իրոք նոր աստիճանի են բարձրացնում արտադրության ու աշխատանքի սոցիալիստական հանրայնացումը, խարսխվում են գիտության, տեխնիկայի ու տեխնոլոգիայի նորագույն հասումների վրա, իրոք արտադրողական են ու թողարկում են առավելագույն չափով էժան արտադրանք»։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ կոոպերացման գործին անհրաժեշտ ուշադրություն է նվիրվում, խստիվ կիրառվում են ՍՄԿԿ Կենտկոմի մշակած սկզբունքները, միջտնտեսային կոոպերացիան զարգանում է հաջողությամբ և արդյունավետորեն։ Գործի նկատմամբ այլ մոտեցումը, փոխկապակցված հարցերի ոչ կոմպլեքսային լուծումը և ոչ պատշաճ տեխնիկատնտեսական հիմնավորումը սովորաբար մատնվում են անհաջողության։

Միջտնտեսային կոոպերացման և արտադրության մասնագիտացման ծավալով աչքի է ընկնում Ղուկասյանի շրջանը։ Միջտնտեսային միայն մեկ ձեռնարկությունում բտվում է խոշոր եղջերավոր անասունների մոտ 1300 գլուխ մատղաշ, կամ ամբողջ շրջանի հանրային հոտի համապատասխան գլխաքանակի մոտ 70 տոկոսը։ Այստեղ բարձր է անասունների միջին օրական քաշաճը, որն անցնում է 700 գրամից։ Անցած տարի պետությանն է վաճառվել 523 տոննա միս (կենդանի քաշով), որը շրջանի տնտեսությունների իրացրած մսի 40 տոկոսն է։ Ինտենսիվ բտման այս ձեռնարկության շահութաբերությունը հասնում է 47 տոկոսի։ Բարձր շահութաբերությամբ է աչքի ընկնում նաև տոհմային երինջներ աճեցնող ձեռնարկությունը, որտեղ պահվում է շուրջ 750 գլուխ անասուն։ Այստեղ լուծված է կերի հարցը, կենդանիները պահվում են տիպային գոմերում։ Այս երկու ձեռնարկության շահույթի գումարը անցնում է կես միլիոն ռուբլուց, որը բաշխվել է փայատեր տնտեսություններին, հատկացվել արտադրության զարգացման, նյութական խրախուսման ֆոնդերին և այլ կարիքների։ Համեմատաբար լավ ցուցանիշներ ունեն Կրասնոսելսկի, Գորիսի, Հրազդանի, Շահումյանի, Սիսիանի և Սպիտակի շրջանների միջտնտեսային անասնաբուծական ձեռնարկությունները։

Շահումյանի շրջանի ձեռնարկությունները հանրապետությունում աչքի են ընկնում իրենց չափերով և արտադրության ծավալով։ Այստեղ գործում են թռչնաբուծական, խոզաբուծական, մեղվաբուծական և շինարարական ձեռնարկություններ, ջերմատնային տնտեսություն։ Դրանց համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը անցյալ տարի անցավ երկու միլիոն ռուբլուց։ Ընդ որում, հարկ է նշել, որ միայն ջերմատնային տնտեսությունը 1979 թ. արտադրել է 700 տոննա բանջարեղեն, որը շուրջ 1,5 անգամ գերազանցում է հանրապետությունում գործող մյուս երեք համանման ձեռնարկությունների ցուցանիշը՝ միասին վերցրած։ Միաժամանակ պետք է նշել, որ շրջանի միջտնտեսային ձեռնարկությունների, հատկապես թռչնաբուծականի, աշխատանքը կարիք ունի լուրջ բարելավման։ Խոսքը հատկապես վերաբերում է այդ ձեռնարկությունների աշխատանքի շահութաբերության բարձրացմանը։

Ի վերջո, կարելի է հիշատակել մի այլ ձեռնարկության մասին ևս, որը հանրապետությունում միակն է իր տեսակի մեջ։ Դա Էջմիածնի կաթի արտադրության ձեռնարկությունն է։ Փայատերերի թվում են 27 կոլտնտեսություն և 2 սովխոզ։ Երևանի քաղաքամերձ գոտում կոոպերացիայի այդպիսի ձևը լուրջ ուշադրության է արժանի այն իմաստով, որ գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման առումով շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ունեցած կովերի գլխաքանակը, բավարար չէ արդյունաբերական բազայի վրա ժամանակակից տեխնոլոգիայով ռացիոնալ չափերի կաթնաարտադրության համալիրներ ստեղծելու համար։ Շրջանի՝ նվազ գլխաքանակ ունեցող ֆերմաների միավորման միջոցով այդպիսի ձեռնարկությունների ստեղծումը կնպաստի քաղաքային բնակչության կաթի մատակարարման գործի բարելավմանը։

Էջմիածնի շրջանի Հայկաշենի միջտնտեսային ձեռնարկությունում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն անցնում է հազարից։ Անցած տարի ձեռնարկությունը պետությանը վաճառել է 590 տոննա կաթ, մոտ 130 տոննա միս (կենդանի քաշով), մոտ 200 հազար հատ ձու։ Ընդհանուր առմամբ, միջ-



տնտեսային ձեռնարկությունն աշխատում է շահույթով, սակայն այստեղ առկա են մի շարք չլուծված հարցեր։ Դա, նախ և առաջ, տնտեսության մասնագիտացման հետագա խորացումն է՝ կաթի արտադրության ուղղությամբ, ինչպես նաև կովերի մթերատվության զգալի բարձրացման ապահովումը։

Չնայած միջտնտեսային կոոպերացման ասպարեզում նկատվող որոշակի տեղաշարժերին, շատ ձեռնարկություններում անբավարար են օգտագործվում կոոպերացման անվիճելի առավելությունները, իսկ հանրապետության 14 շրջաններում դանդաղ է արմատավորվում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման այդ կարևոր և հեռանկարային եղանակը։

Միջտնտեսային շատ ձեռնարկությունների հիմնական թերությունն այն է, որ այստեղ անասնագլխաքանակի համակենտրոնացումը չի ուղեկցվում համապատասխան տնտեսական պայմանների ստեղծմամբ և արտադրության տեխնոլոգիայի կատարելագործմամբ։ Մենք երբեք չպետք է մոռանանք, որ արտադրության համակենտրոնացման բարձր արդյունավետությունը ձեռք է բերվում ոչ թե ինքնաբերաբար, գլխաքանակի մեխանիկական համակենտրոնացմամբ, այլ գործը խելացիորեն կազմակերպելով, տնտեսական, տեխնիկական և կազմակերպչական գործոնների կոմպլեքս կիրառմամբ։

Անշուշտ, տարբեր շրջաններում, տարբեր չափերով աշխատանքներ են կատարվում միջտնտեսային ձեռնարկությունները ժամանակակից տեխնիկայով և սարքավորումներով հագեցնելու, արտադրական նոր շենքեր կառուցելու և հները վերակառուցելու, կերի բազան ամրապնդելու և արտադրության մյուս պայմանները բարելավելու նպատակով։ Սակայն մենք դեռևս շատ անելիքներ ունենք, որպեսզի հանրապետության միջտնտեսային ձեռնարկությունները տեխնիկական և տեխնոլոգիական առումով համապատասխանեն արդի պահանջներին։ Այդ խնդիրների լուծումը պահանջում է հանրապետական և շրջանային մարմինների օգնությունը։

Առանձին շրջաններում միջտնտեսային ձեռնարկությունների տնտեսական արդյունավետության բարձրացմանը և մթերքների արտադրության ավելացմանը խոչընդոտում են դրանց ոչ օպտիմալ չափերը։ Այսպես, երինջների աճեցման ձեռնարկություններում 1979 թվականին Ախուրյանի շրջանում պահվել է 280 գլուխ, Էջմիածնում՝ 257, Թումանյանում՝ 418 գլուխ, այսինքն՝ հաճախ ավելի քիչ, քան առանձին կոլտնտեսության կամ սովխոզի ֆերմաներում։

Պատահական չէ, որ այդ շրջաններում բտվող խոշոր եղջերավոր անասունների մատղաշի գլխաքանակից միջտնտեսային ձեռնարկություններին բաժին է ընկնում. Ախուրյանում՝ 9 տոկոսը, Էջմիածնում՝ 12, Թումանյանում՝ 15։ Ընդհանուր առմամբ, հանրապետությունում ինտենսիվ բտման համար նախատեսված խոշոր եղջերավոր անասունների մատղաշի միայն 6 տոկոսն է գտնվում միջտնտեսային ձեռնարկություններում։

Գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում հանրային արտադրության, այդ թվում նաև գյուղատնտեսության համակենտրոնացումը օբյեկտիվ անհրաժեշտություն է։ Արտադրության այդպիսի կազմակերպումը ՍՄԿԿ ագրարային քաղաքականության կարևորագույն օղակներից մեկն է։ Խոշոր արտադրության առավելությունը մանրի նկատմամբ անառարկելի է, դրա համար էլ, այլ միջոցառումների շարքում, շատ կարևոր է միջտնտեսային ձեռնարկություններում արտադրության համակենտրոնացման օպտիմալ չափի ապահովումը։ Միայն այս դեպքում են առավելագույն պայմաններ ստեղծվում բարձր արտադրողական տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի կոմպլեքսային օգտագործման, գյուղատնտեսական արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու և առհասարակ տնտեսական բարձր արդյունավետության հասնելու համար։

Գործող ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու և նորերը ստեղծելու միջոցով հանրապետությունում միջտնտեսային ձեռնարկությունների հետագա զարգացման համար, ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1980 թ.) պլենումի որոշումներին համապատասխան, անհրաժեշտ է ամենուրեք միաժամանակ կազմակերպել խոշոր եղջերավոր անասունների ինտենսիվ բտումը և գիրացումը։ Մեր հանրապետությունում, միջտնտեսային կոոպերացման առավել հե-

ռանկարային միավորները անասնաբուծական ձեռնարկություններն են, մասնավորապես՝ անասունների ինտենսիվ բտումը և տոհմային երինջների աճեցումը:

Աճի լայն հեռանկարներ ունեն Արարատի, Արտաշատի, Շահումյանի, Էջմիածնի շրջաններում ստեղծված ջերմատնային տնտեսությունները: 1979 թ. դրանք արտադրել են 1250 տոննա բանջարեղեն: Այս ձեռնարկությունների գործունեությունը, ըստ ամենայնի բարելավման զուգընթաց, նպատակահարմար է մյուս շրջաններում ևս արտադրության այդ ձևը արմատավորել: Ջերմատնային տնտեսության զարգացումը պայմաններ կստեղծի լուծելու տվյալ շրջանների ազգաբնակչությանը կլոր տարին թարմ բանջարեղենով ապահովելու խնդիրը:

Գյուղատնտեսության առջև դրված խնդիրների լուծման գործում որոշակի նշանակություն ունի արտադրության սպասարկման ոլորտի կազմակերպման մակարդակը: Այդ բնագավառի միջոցառումների սիստեմը բարդ է և բազմակողմանի: Ինչպես արդեն նշվեց, ամբողջ երկրի մասշտաբով միջտնտեսային ձեռնարկությունների մեջ թվով ամենաշատը շինարարական կազմակերպություններն են: Կոոպերացիայի այս ձևը ապացուցել է իր արդյունավետությունը: Գյուղում շինարարության առանձնահատկությունների և ծավալի հարաճուն տեմպերի պայմաններում այդպիսի կազմակերպությունները նպաստում են գործարկման ժամկետների կրճատմանը, շինարարական ծախսերի պակասեցմանը: Միաժամանակ մեծանում են ոչ միայն արտադրական, այլև կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման, գյուղերի բարեկարգման հնարավորությունները:

Հանրապետությունում միջտնտեսային շինարարական կազմակերպությունների կատարած շինմոնտաժային աշխատանքների ծավալը առայժմ մեծ չէ: 1979 թ. այն կազմեց հազիվ երեք և կես միլիոն ռուբլի: Դա այդ կազմակերպությունների փոքրաքանակ լինելու, ինչպես նաև դրանց տեխնիկական թույլ հագեցվածության հետևանք է:

Հանրապետության գյուղատնտեսության մեջ անընդհատ աճում է կապիտալ շինարարության ծավալը: Գյուղական շինարարության մինիստրության շինմոնտաժային կազմակերպությունները հիմնականում իրականացնում են գյուղի համեմատաբար խոշոր արտադրական, կուլտուր-կենցաղային և այլ օբյեկտների շինարարությունը: Այդ կապակցությամբ կոլտնտեսությունները, սովխոզները և միջտնտեսային ձեռնարկությունները հաճախ կիրառում են շինարարության, այսպես կոչված, տնտեղանակը, մի բան, որը մեծ մասամբ հանգեցնում է կառուցման ինքնարժեքի բարձրացման, ժամկետների ձգձգման, աշխատանքների որակի վատացման: Շատ են օբյեկտները ժամանակին շահագործման չհանձնելու փաստերը, որոնք հետևանք են ինչպես շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքի, այնպես էլ տնտեսություններում ֆինանսական ռեալ հնարավորությունների և օբյեկտները ֆոնդավորված շինանյութերով ապահովելու հարցերի անտեսման: Հետևանքը լինում է այն, որ տարեցտարի մեծանում է անավարտ շինարարությունը գյուղատնտեսության մեջ: 1965 թ. դրա արժեքը կազմում էր 33 միլիոն ռուբլի, իսկ 1979 թ. այն անցավ 100 միլիոնից: Ինչ խոսք, անավարտ շինարարության այդպիսի զգալի աճը վկայում է մի կողմից կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի զարգացման, մյուս կողմից՝ գյուղական շինարարության բնագավառում առկա լուրջ թերությունների մասին:

Գյուղում շինարարական աշխատանքների բարելավման նպատակով, պետական շինարարական կազմակերպությունների նյութատեխնիկական բազան էապես բարելավման զուգընթաց, անհրաժեշտ է հանրապետությունում ընդլայնել միջտնտեսային շինարարական կոոպերացիայի ցանցը, ապահովել այն համապատասխան տեխնիկայով, նյութերով և նախագծերով:

Երկրի մի շարք շրջաններում հաջողությամբ իրականացվում է գյուղատնտեսական տեխնիկայի համակենտրոնացումը միջտնտեսային ձեռնարկություններում կամ «Գյուղտնտեխնիկայի» շրջանային միավորումներում՝ գյուղատնտեսական արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման գործը բարելավելու նպատակով: Աշխատանքի կազմակերպման այդպիսի ձևը հնա-



րավորություն է ընձեռում վերացնելու տնտեսությունների ոչ միատեսակ հագեցվածությունը տեխնիկայով, մեքենաների թերբեռնվածությունը մի տնտեսությունում և գերբեռնվածությունը՝ մյուսում: Օրինակ, մեր հանրապետությունում 1978 թ. հերթափոխային աշխատանքը մեկ էտալոնային տրակտորի հաշվով տատանվել է 2,6—8,3 հեկտարի միջև, կամ 3,2 անգամ, հացահատիկային կոմբայնի օրական աշխատանքը՝ 2,4—9,5 հեկտար, կամ մոտ 4 անգամ, սիլոսահավաք կոմբայններինը՝ 14 անգամ: Ավելի մեծ են տարբերությունները տվյալ շրջանի առանձին տնտեսությունների միջև:

Շրջաններում տեխնիկայի համակենտրոնացման դեպքում նշված և մյուս թերությունները, որոնք խոչընդոտում են մեքենաների օգտագործման արդյունավետության աճին, կվերացվեն: Դա միաժամանակ հնարավորություն կընձեռի համապատասխան ծավալի աշխատանքների համար կրճատել նույնատիպ մեքենաների ու գործիքների պահանջարկը, վառելանյութի ծախսը, իջեցնել աշխատանքի ինքնարժեքը:

Մեր հանրապետությունում նույնպես իրականացվում է մեքենաների համակենտրոնացում, սակայն այդ աշխատանքները ծայրահեղորեն դանդաղ են ընթանում: Ներկայումս այն իրականացված է Վարդենիսի շրջանում: Նման աշխատանքներ են տարվում նաև Հրազդանի շրջանում: Նկատի ունենալով տեխնիկայի համակենտրոնացման մեծ առավելությունները գյուղատնտեսական արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման բնագավառում, հրատապ անհրաժեշտություն է համանման ձեռնարկությունների ստեղծումը նաև հանրապետության մյուս շրջաններում:

Երկրում լայնորեն չի տարածվել միջտնտեսային կոոպերացիան հողերի մելիորացման ասպարեզում: Հայտնի է, որ մելիորացիայի ծախսերը հիմնականում պետությունն է հոգում: Այդ աշխատանքների ծավալը ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում վիթխարի է: Սակայն դա չի նշանակում, թե կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է մի կողմ մնան այդ մեծ ու կարևոր գործից: ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների հողօգտագործման օրենսդրության հիմունքներում ուղղակիորեն նշված է, որ կոլտնտեսությունները, սովխոզներն ու մյուս ձեռնարկությունները, որոնք օգտագործում են գյուղատնտեսության համար հատկացված հողատարածություններ, պարտավոր են իրականացնել հողերի ոռոգումը, չորացումը և ջրարբիացումը, բարելավել մարգագետիններն ու արոտավայրերը:

Հաշվի առնելով այդ բնագավառում առկա փորձը և գյուղատնտեսական արտադրության պայմանները, կոլտնտեսությունների, սովխոզների ու միջտնտեսային ձեռնարկությունների մասնակցությունը հողերի մելիորացման աշխատանքներին կարող է լինել բազմազան: Աշխատանքի բնույթի և ծավալի համեմատ լայն ասպարեզ կա ներտնտեսային ցանցի կառուցման և սպասարկման գործում: Միջոցների, աշխատանքի և տեխնիկայի կոոպերացման, ինչպես նաև պետական կազմակերպությունների հետ համատեղ զգալի աշխատանքներ կարող են կատարվել այսպես կոչված՝ հողերի «փոքր» մելիորացիայի ասպարեզում:

Գյուղատնտեսության բազմազան սոցիալ-տնտեսական պայմաններում միջտնտեսային կոոպերացիայի հարցերի լուծումը պահանջում է համակողմանի հաշվի առնել յուրաքանչյուր տնտեսության և արտադրության կոնկրետ առանձնահատկությունները: Սակայն ոչ մի հիմք չկա արդարացնելու այն վիճակը, երբ հանրապետության որոշ շրջաններում չի ստեղծված միջտնտեսային ոչ մի ձեռնարկություն, շատ տեղերում էլ անհրաժեշտ թափով չի ծավալվել այդ գործը:

Անշուշտ, միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության հետագա մասնագիտացման և համակենտրոնացման վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդրի հաջող լուծումը պայմաններ կստեղծի արագացնելու գյուղատնտեսության զարգացման տեմպերը, բարձրացնելու հանրային արտադրության արդյունավետությունը:

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ ՊՐՈՑԵՍԸ

**ՅՈՒ. Դ. ՄԱԹԵՎՈՍՈՎ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման տեմպերը մեծապես պայմանավորված են ստեղծված և նոր ստեղծվող գիտատեխնիկական պոտենցիալի կիրառմամբ, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրմամբ։ Այդ պոտենցիալը արդյունավետ գործադրելու հարցը ամենայն սրությամբ դրված է «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ, որը, առաջնահերթ այլ միջոցառումների թվում, նախատեսում է գիտատեխնիկական հայտնագործությունների ու մշակումների իրագործումն արագացնող մի շարք միջոցառումներ։

Մեր երկրում ստեղծված է գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալ։ Սովետական պետությունը ձեռնարկում է բոլոր անհրաժեշտ միջոցները գիտական հետազոտությունների ու մշակումների ընդգրկման ծավալը մեծացնելու, դրանց մակարդակի ու արդյունավետության բարձրացման համար լավագույն պայմաններ ստեղծելու նպատակով։ 1940—1978 թթ. ՍՍՀՄ-ում գիտության վրա կատարված ծախսերն աճել են 64 անգամ։ Ընդ որում, այդ ծախսերն ավելանում են առաջանցիկ տեմպերով (մյուս բոլոր ծախսերի աճի համեմատությամբ)։ Այսպես, դրանց աճի տարեկան միջին տեմպերը 1950—1978 թթ. 1,2—1,4 անգամ գերազանցել են ազգային եկամտի, կապիտալ ներդրումների, արդյունաբերական արտադրության աճի տեմպերը։ Դա բացատրվում է այդ ժամանակաշրջանում երկրի գիտական պոտենցիալի արագ մեծացմամբ, գիտական գիտելիքների առաջատար բնագավառներում հիմնարար, տեսական հետազոտությունների ընդլայնման, գիտության ոլորտում, հատկապես փորձաէքսպերիմենտալ բազաների հզորացման համար կատարված կապիտալ ներդրումների նշանակալի ծավալներով։

Հիմնարար գիտությունների գլխավոր մարզերում սովետական գիտությունն աշխարհում առաջատար տեղ է գրավում։ Նշանակալի են նաև կիրառական գիտությունների նվաճումները։ Պետական ռեեստրում այժմ ամեն տարի գրանցվում են 30—40 հազար նոր հայտնագործություններ։ Մեկ տարում երկրում ստեղծվում են մոտ 4 հազար անուն մեքենաների, սարքավորումների, ապարատների ու սարքերի նոր նմուշներ, համակողմանի մեքենայացվում և ավտոմատացվում են հազարավոր տեղամասեր, արտադրամասեր, արտադրություններ։

Գիտատեխնիկական հզոր պոտենցիալի ձևավորման գործում սովետական պետության ձեռք բերած անվիճելի հասումները հիմք ստեղծեցին գիտության ու տեխնիկայի ոլորտի զարգացման էքստենսիվ ուղուց անցնելու նրա ինտեն-



սիվ ուղուն։ Գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների տնտեսական արդյունքն ապահովվում է արտադրության և շահագործման պրոցեսում դրանց իրականացման միջոցով։ Իսկ դա նշանակում է, որ նորամուծության ներդրումն արագացնելու համակարգը պետք է առավելապես կրճատի գաղափարի ձևավորման ու դրա գործնական մարմնավորման միջև ընկած ժամանակաշրջանը, մեծացնի գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների արդյունքների օգտագործման ծավալը՝ ընդհուպ մինչև ժողովրդական տնտեսության լիակատար հագեցումը նոր տեխնիկայով ու տեխնոլոգիայով։

Մինչև տասներորդ հնգամյակի վերջը մեր երկրում կյուրացվի 20 հազար անուն նոր արտադրատեսակ։ Գիտատեխնիկական հասումների լայն կիրառումը հնարավորություն կընձեռի զգալիորեն իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը և 1980 թվականին ստանալու 20 մլրդ ռուբլու լրացուցիչ խնայողություն։

Չնայած ձեռք բերված հաջողություններին, գիտական նվաճումների իրացման կառավարումը կատարելագործելու պրոբլեմը դեռևս մնում է իբրև հրատապ խնդիր։ Ժողովրդական տնտեսությունը լրիվ չափով չի իրացնում գիտության ու տեխնիկայի պոտենցիալ հնարավորությունները գիտատեխնիկական առաջընթացի տեմպերն արագացնելու և հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։ ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի տվյալներով, գիտական հետազոտությունների ու մշակումների փուլն անցած աշխատանքների 30—50 տոկոսն է միայն իրացվում ժողովրդական տնտեսության մեջ։ Աշխատանքների մնացած մասը կամ ընդհանրապես չի օգտագործվում, կամ ներդրվում է այնքան դանդաղ, որ մինչև յուրացման պահն արդեն հնանում է։

Հայտնի է, որ այս կամ այն գիտական գաղափարի իրացման համար կատարվող ծախսերը բազում անգամ գերազանցում են այդ գաղափարի երևան գալը պայմանավորած գիտական հետազոտությունների վրա կատարված ծախսերը։ Գիտաարտադրական ցիկլի (հիմնարար հետազոտություն-կիրառական հետազոտություն-մշակում-յուրացում) յուրաքանչյուր հաջորդ փուլն առհասարակ ավելի թանկ է նստում նախորդի համեմատությամբ։ Իսկ դա պահանջում է համապատասխանաբար մեծացնել այն ներդրումների ծավալը, որոնք ապահովում են գիտատեխնիկական նվաճումների արտադրական յուրացումն ու տարածումը։ Հետևաբար, կարևոր է գիտությանը հատկացվող ծախսերի և գիտական նվաճումների գործնական յուրացումն ապահովող ներդրումների ճիշտ հարաբերակցության պահպանումը։ Համաշխարհային փորձը վկայում է, որ այդ հարաբերակցության ռացիոնալ մակարդակը 1 : (3—5) է։ Մեզ մոտ այդ հարաբերակցությունը զգալիորեն ավելի ցածր է։

Վերջին տարիներին մեր երկրում գիտության համար կատարված բոլոր ծախսերի մոտ 13 տոկոսը բաժին է ընկնում հիմնարար հետազոտություններին, 60 տոկոսը՝ կիրառական հետազոտություններին, 27 տոկոսը՝ մշակումներին։ Գիտության համար կատարված ծախսերի այս կառուցվածքն այնքան էլ ռացիոնալ չէ։ Նկատվում է ծախսումների անհրաժեշտ հարաբերակցության որոշակի խախտում՝ կիրառական հետազոտությունների փուլում կատարվող ծախսերը խիստ ավելացնելու և կոնստրուկտորական ու տեխնոլոգիական մշակումների փուլում կատարվող ծախսերը համապատասխանաբար կրճատելու հաշվին։ Այս չարդարացված խզումը վերջին տարիներին դարձավ արտադրության մեջ գիտական հետազոտությունների արդյունքների դանդաղ արմատավորման պատճառը։ Այսպես, մեքենաների նոր նմուշների յուրացման ու սերիական թողարկման ժամանակ արտադրության բուն պրոցեսում տեղի է ունենում ժամանակի զգալի կորուստ այն պատճառով, որ դրանք դեռ երկար ժամանակ «կատարելագործվում են», իսկ այդ խիստ իջեցնում է նոր տեխնիկայի ներդրումից սպասվող օգուտը։

Նորմալ չէ նաև այն դրությունը, երբ արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի յուրացման համար ծախսվում են նույնքան (իսկ երբեմն նաև ավելի

տեգրացումը դրսևորվում է գիտության գործարանային սեկտորների զարգացման մեջ, արտադրական, գիտաարտադրական, նոր տեխնիկայի արմատավորման գործում մասնագիտացված միավորումների, կոմպլեքսային գիտահետազոտական ինստիտուտների կազմակերպման, արտադրական ձեռնարկությունների հետ գիտական հիմնարկությունների ու բուհերի կապերի զարգացման մեջ:

Գիտության գործարանային սեկտորները ժամանակակից ձեռնարկությունների ծառայությունների ու ստորաբաժանումների մի ամբողջություն են, որ կոչված են գիտաարտադրական ցիկլի նորմալ ընթացքի պայմաններ ապահովելու նրա փուլերից յուրաքանչյուրում, ինչպես նաև արագացնելու գիտական նվաճումների իրագործումը: Դրանց թվին են պատկանում գործարանային գիտահետազոտական լաբորատորիաները, կոնստրուկտորական բյուրոները, տեխնոլոգիական ծառայությունները, փորձնական արտադրամասերը, տեղամասերը, կայանքները, ինֆորմացիոն կենտրոնները: Գիտության գործարանային սեկտորը այն օղակն է, որը պսակում է գիտական գաղափարը ամենակարճ ժամկետում նյութականացնելու ամբողջ բարդ պրոցեսը:

Մինչդեռ նոր տեխնիկայի արմատավորման գործարանային ծառայությունների զարգացումը լիովին չի համապատասխանում ժամանակի պահանջներին: Արդեն կուտակված փաստական նյութի հիման վրա կարելի է հետևություն անել, որ գործարանային հետազոտական ծառայությունները «Գ-Ա» ցիկլի թույլ օղակն են: Իսկ դա իր հերթին նոր տեխնիկայի արմատավորումը դանդաղեցնող հիմնական պատճառներից մեկն է:

Ճյուղային հետազոտությունների զարգացման բաղան, որը կենտրոնացված է մինիստրություններում ու գերատեսչություններում, չի կարող «գիտական կարողությունների» սակավազորությունը փոխհատուցել անմիջականորեն արմատավորման փուլում: Ձեռնարկությունները, որպես կանոն, ինստիտուտից ընդունում և տեխնոլոգիական կիրառման են հասցնում համեմատաբար մանր նորամուծությունները միայն, որոնք կարող են միայն ոչ մեծ փոփոխություններ մտցնել արտադրական պրոցեսում:

Ձեռնարկությունների հետազոտական ստորաբաժանումների դերի թերագնահատումը էապես խոչընդոտում է պրակտիկայում գիտական գաղափարի ներդրմանը: Մենք վերլուծել ենք ՀՍՍՀ արդյունաբերական ձեռնարկությունների գիտական կազմակերպությունների վերջին տարիների հետազոտություններով առաջարկված՝ վեց տասնյակից ավելի առավել խոշոր մշակումների արմատավորման ընթացքը: Եթե այդ գիտական կազմակերպությունների բոլոր այն մշակումները, որոնք այս կամ այն պատճառով արմատավորված չեն արտադրության մեջ, ընդունենք 100 տոկոս, ապա ոչ լրիվ ավարտվածության (կիրառական տեսակետից անբավարար մշակվածության, փորձնական և փորձնական-արդյունաբերական ստուգման ճշգրիտ տվյալների բացակայության, շահագործման պակաս հուսալիության) հետևանքով չներդրված մշակումները կկազմեն 31 տոկոսը, 26 տոկոսը իրացված չէ այն պատճառով, որ ձեռնարկությունները բավարար չափով չունեն սարքավորումներ, նյութեր, ֆինանսական միջոցներ, որոնք անհրաժեշտ են արտադրության տեխնոլոգիական նախապատրաստումը կազմակերպելու համար, 32 տոկոսը արմատավորված չէ այն պատճառով, որ դեռևս ավարտված չէ «համաձայնեցման», «փոխկապակցման» պրոցեսը, 11 տոկոսը բաժին է ընկնում այն մշակումներին, որոնք իրացված չեն այլ պատճառներով (այդ թվում՝ սակավ արդյունավետության):

Հանրապետությունում կատարված հետազոտության արդյունքները վկայում են, որ արտադրության մեջ գիտատեխնիկական ձեռքբերումների դանդաղ օգտագործման էական պատճառներից մեկն այն է, որ գիտական ու կոնստրուկտորական կազմակերպությունները արտադրության են հանձնում նոր տեխնիկայի թերամշակ նմուշներ՝ առանց դրանց պատրաստման տեխնոլոգիական մանրամասն մշակման, առանց համակողմանի ստուգման ու փորձարկումների: Հանրապետության գիտական կազմակերպությունների և բուհերի կողմից արմատավորման համար ներկայացված մշակումների 60 տոկոսից ավելին չեն



կարող օգտագործվել արտադրության մեջ՝ դրանց կառուցվածքային ու տեխնոլոգիական թերությունների պատճառով: Դրա հիմնական պատճառը բավականաչափ հագեցված սեփական փորձնական-էքսպերիմենտալ բաղաների, փորձարկման ստենդների, ժամանակակից վերահսկիչ-չափիչ ապարատների, հաշվողական տեխնիկայի և հետազոտման այլ միջոցների բացակայությունն է:

Գիտական հիմնարկությունների և արդյունաբերական ձեռնարկությունների փորձնական-էքսպերիմենտալ արտադրությունների զարգացման անբավարար մակարդակը և տեխնիկական թույլ հագեցվածությունը արտադրության մեջ գիտական աշխատանքների արդյունքների արմատավորման ձգձգման, գիտատեխնիկական մշակումների ժամկետների երկարատևության, նոր կոնստրուկցիաների մեքենաների, մեխանիզմների, սարքերի ու տեխնոլոգիական պրոցեսների անբավարար մշակման, դրանց որակի վատացման գլխավոր պատճառներից են: Չնայած այն բանին, որ փորձնական-էքսպերիմենտալ արտադրամասերի ու տեղամասերի քանակը վերջին տասը տարում ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում, ավելացել է գրեթե 2 անգամ, այնուամենայնիվ, դեռևս չափազանց անբավարար է գիտահետազոտական ինստիտուտների, նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպությունների ու արդյունաբերական ձեռնարկությունների ապահովվածությունը դրանցով: Վերջիններիս մեծ մասի համար բնորոշ է կամ փորձնական-էքսպերիմենտալ բաղայի բացակայությունը, կամ դրա անբավարար կարողությունը:

Բավականաչափ հզոր փորձնական բաղա ունեցող գիտական կազմակերպություններն ու արդյունաբերական ձեռնարկությունները ստեղծում են ավելի կատարյալ կոնստրուկցիաներ, ընդսմին նոր արտադրատեսակների ստեղծման ժամանակաշրջանը կրճատվում է գրեթե 2 անգամ, իսկ ծախսումները՝ 50 տոկոսով: Փորձնական-էքսպերիմենտալ բաղաները պետք է տեխնիկապես անհամեմատ ավելի լավ հագեցված լինեն, քան արդյունաբերական ձեռնարկությունների արտադրամասերը: Կարևոր է ապահովել փորձնական արտադրության առաջանցիկ զարգացումը արդյունաբերական արտադրության համեմատությամբ, միջոցառումներ իրականացնել դրա մասնագիտացման և նյութատեխնիկական բաղայի ամրապնդման համար: Այդ ամենը պահանջում է ավելացնել ձեռնարկությունների, գերատեսչությունների գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական ու տեխնոլոգիական կազմակերպությունների փորձնական-էքսպերիմենտալ բաղաների զարգացման համար հատկացվող միջոցները:

Արտադրության մեջ նոր արտադրատեսակների արագ ու լայն ներդրման համար լուրջ խնդիր է անհրաժեշտ ռեզերվային (արտադրական) կարողությունների ապահովումը: Դրանք օգնում են յուրացնելու նորը, չխախտելով հիմնական արտադրության բնական ընթացքը: Ռեզերվային կարողությունները պետք է լինեն լավ կազմակերպված ամեն մի ձեռնարկության պարտադիր տարրը: Մինչդեռ երկրում եղած փորձնական-էքսպերիմենտալ շատ բաղաներ նոր արտադրատեսակների յուրացման փոխարեն ծանրաբեռնվում են հին սերիական արտադրանքի թողարկմամբ: Այդ պրոբլեմը կարելի է լուծել հին արտադրատեսակները արտադրությունից հանելու, գոյություն ունեցող հիմնական ֆոնդերի օգտագործումը բարելավելու, մեքենաներն ու սարքավորումները մոդեռնացնելու, եղած հիմնական ֆոնդերն ընդլայնելու և նորերը ձեռք բերելու միջոցով:

Արդի պայմաններում «Գ-Ա» ցիկլի փուլերի առավել լրիվ ինտեգրացմանը մեծ չափով նպաստում է գիտաարտադրական միավորումների ստեղծումը: Միավորումները հնարավորություն են ընձեռում ամենակարճ ժամկետներում գործնականորեն կիրառելու գիտական հետազոտությունների ու մշակումների արդյունքները:

Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, մեր հանրապետության «Նաիրիտ», «Հայհաստոց», տեղական արդյունաբերության մինիստրության գիտաարտադրական միավորումներում, գյուղատնտեսության մեքենայացման ու

էլեկտրիֆիկացման հայկական գիտահետազոտական ինստիտուտում նոր տեխնիկայի մշակումների ու յուրացման ժամկետները կրճատվում են միջին հաշվով 1,5—2 անգամ: Դա ձեռք է բերվում նոր տեխնիկայի ստեղծման պրոցեսի առանձին փուլերը զուգակցելու, ցիկլի բոլոր մասնակիցների համատեղ աշխատանքների, մշակման ընթացքին փուլ առ փուլ վերահսկելու շնորհիվ: Այստեղ բարձր տեմպերով աճում են դրանց գործունեության արդյունավետության ցուցանիշները, մասնավորապես մեկ ռուբլու դիմաց ստացվող տնտեսական արդյունքը 1,5 անգամ ավելի բարձր է, քան միավորումների կազմի մեջ չմտած համանման գիտական կազմակերպություններում:

Գիտաարտադրական միավորումների ձևավորման գործում մեծ է ո՛չ միայն ճյուղային, այլև ակադեմիական գիտահետազոտական ինստիտուտների դերը: Հայաստանի գիտությունների ակադեմիայում վերջին տարիներին հիմնարար հետազոտությունների ընդլայնման հետ մեկտեղ լայնորեն ծավալվել են կիրառական հետազոտությունները, որոնց բազայի վրա ու առաջատար դերի դեպքում կարելի է ստեղծել միավորումներ: Արդեն հասունացել են պայմանները հանրապետության գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի, նուրբ օրգանական քիմիայի, ագրոքիմիայի ու հիդրոպոնիկայի ինստիտուտների բազայի վրա գիտաարտադրական համալիրներ ստեղծելու համար: Դրանց կազմակերպումը զգալիորեն կարագացնի կիրառական հետազոտությունների արդյունքների արմատավորումն արտադրության մեջ:

Հարկ է միաժամանակ նշել, որ շատ դեպքերում գիտաարտադրական միավորումների առավելությունները չեն օգտագործվում՝ դրանց ղեկավարման, աշխատանքի պլանավորման, ֆինանսավորման և գործունեության խթանման ասպարեզում եղած թերությունների հետևանքով: Գիտաարտադրական միավորումների ստեղծման ու հաջող գործունեության համար կարևոր է, որ այնտեղ արտադրության հետ գիտության կազմակերպական միավորումը անպայման լրացվի տնտեսական միասնությամբ՝ հատկապես արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորումը տնտեսապես խթանելու բնագավառում:

Գիտատեխնիկական հեղափոխության շրջանում արտադրության մեջ գիտական նվաճումների արմատավորման արագացումը զգալի չափով պայմանավորված է կոմպլեքսային գիտահետազոտական ինստիտուտների զարգացմամբ (օրինակ՝ Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ե. Օ. Պատոնի անվան էլեկտրաեռակցման ինստիտուտը, գերպինդ մարմինների ինստիտուտը և այլն): Դրանք ինտեգրացնում են «Գ-Ա» ցիկլի մի շարք փուլերը՝ սկսած գիտական հետազոտություններից, վերջացրած փորձնական նմուշի ստեղծմամբ: Կոմպլեքսային գիտահետազոտական ինստիտուտներում գիտաարտադրական ցիկլը կազմակերպված է «հետազոտական կոնվեյերի» ձևով, որը հնարավորություն է ընձեռում գիտաարտադրական ցիկլի առանձին փուլերն իրականացնելու զուգահեռաբար՝ հաջորդականի փոխարեն: Այդ համալիրների արդյունավետության մասին է վկայում դրանց՝ երկրում միջինից ավելի կարճ գիտաարտադրական ցիկլը: Փորձը վկայում է, որ կոմպլեքսային ինստիտուտներին հաջողվում է կրկնակի կրճատել նոր մեքենաների, սարքավորումների, տեխնոլոգիական պրոցեսների ստեղծման ու ներդրման ժամանակը: Մեր կարծիքով, հանրապետությունում հասունացել են պայմանները Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտի բազայի վրա կոմպլեքսային գիտահետազոտական ինստիտուտ կազմակերպելու համար:

Նոր տեխնիկայի ներդրման հետ առնչվող շատ պրոբլեմների լուծմանը նպաստում է գիտատեխնիկական առաջընթացի կառավարման ծրագրային-նպատակային սկզբունքը: Ամենաընդհանուր ձևով՝ ծրագիր ասելով հասկանում ենք բոլոր այն համաձայնեցված միջոցառումների ամբողջությունը, որոնք անհրաժեշտ են պլանավորված արդյունքին հասնելու համար՝ շատ կազմակերպու-



թյունների ջանքերի միավորմամբ, անկախ դրանց գերատեսչական ենթակայությունից:

Գիտատեխնիկական ծրագրերի մշակումը բարձրացնում է գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների նպատակամղվածությունը, նպաստում է գիտության ու տեխնիկայի նվաճումների ավելի արագ արմատավորմանը արտադրության մեջ, քանի որ դրանք ավելի են կողմնորոշվում դեպի վերջնական արդյունքները, ընդգրկում են ցիկլը՝ մինչև նորության սերիական արտադրությունը: Ծրագրի առաջադրած խնդրի լուծումն ապահովվում է «գիտություն-արտադրություն» ամբողջ ցիկլի աշխատանքների անընդմեջ (համընդգրկող) պլանավորմամբ, որը հիմնված է նոր տեխնիկայի գծով արդյունաբերական ճյուղերում տարվող աշխատանքների պլանավորումը, ֆինանսավորումը և տնտեսական խթանումը նոր սիստեմի փոխադրելու վրա: Այդ սիստեմի հիմքը գիտության ու տեխնիկայի զարգացման պլանավորումն է պատվեր-կարգագրերի օգնությամբ, որոնց մեջ սահմանվում են աշխատանքների վերջնական արդյունքները, նշվում կատարողները, կատարման ժամկետները բոլոր փուլերում՝ գիտական հետազոտություններից մինչև դրանց արդյունքների արմատավորումը արտադրության մեջ, անհրաժեշտ ռեսուրսները, ֆինանսավորման և նյութական խրախուսման աղբյուրները: Պլանավորման նոր կարգը հնարավորություն է ընձեռում վերացնելու չարդարացված խզումները գիտահետազոտական, կոնստրուկտորական, փորձնական աշխատանքների ու նոր տեխնիկայի յուրացման աշխատանքների միջև և զգալիորեն բարելավելու վերահսկողությունը առանձին փուլերի նկատմամբ:

Այսպիսով, արտադրության մեջ գիտական նվաճումների արմատավորման պրոցեսի կատարելագործումը սիստեմատիկ, կոմպլեքսային գործունեություն է, միասնական պետական գիտատեխնիկական քաղաքականության անբաժանելի մասը: Այն կոչված է անխափան գործող կապեր ստեղծելու գիտության ու արտադրության միջև և այդ հիման վրա ապահովելու երկրի գիտատեխնիկական պոտենցիալի առավել լրիվ օգտագործումը ժողովրդական տնտեսության մեջ:

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋԱՐԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

**Ս. Գ. ՄԵԺԼՈՒՄՅԱՆ**
Երևանի պետական հանրախանութի դիրեկտոր,
տնտեսական գիտությունների թեկնածու

*ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ մեր վաճառասեղաններին մասսայական պահանջարկի ավելի շատ ապրանքներ են երևում։ Ընդ որում, արտադրության ծավալի աճի հետ մեկտեղ բարելավվում է լայն սպառման ապրանքների որակը։ Բնակչության կենսամակարդակի բարձրացման շնորհիվ աճում է նրա գնողունակությունը, մեծանում պահանջարկը մասսայական ապրանքների նկատմամբ։ Հարաճուն պահանջարկի բավարարման գործում նշանակալի է առևտրի ճիշտ կազմակերպման, դրա ձևերի ու մեթոդների կատարելագործման, սպասարկման կուլտուրայի բարձրացման դերը։ Այդ կապակցությամբ կարևորվում է առևտրական խոշոր միավորումների ստեղծումը, որտեղ առավել մեծ հնարավորություններ կան այդ խնդիրների հաջող լուծման համար։ Երևանի պետական հանրախանութը, չնայած ընդամենը չորս տարվա կենսագրություն ունի, բավական հարուստ փորձ է կուտակել առևտրի կազմակերպման բնագավառում։ Մեր հաջողությունների վկայությունն է այն, որ մշտապես կատարվում և գերակատարվում են պլանային առաջադրանքները, աճում է ապրանքաշրջանառության ծավալը. 1977 թվականի 55,3 մլն ռուբլուց ապրանքաշրջանառության ծավալը ընթացիկ տարում կհասնի 62,2 մլն ռուբլու։ Կոլեկտիվը պարտավորվել է 1980 թ. ապրանքաշրջանառության պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 27-ին, և բնակչությանը լրացուցիչ վաճառել 750 հազար ռուբլու արդյունաբերական ապրանքներ։*

*Հանրախանութի կոլեկտիվը մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը աշխատանքային բարձր ցուցանիշներով դիմավորելու համար ծավալեց «Ոչ մի ետ մնացող կողքիդ» նշանաբանով սոցիալիստական գործարար մրցություն։ Արդյունքը եղավ այն, որ պարտավորված 100 հազար ռուբլու փոխարեն պլանից ավելի վաճառվեց 350 հազար ռուբլու արդյունաբերական ապրանքներ։ Կոլեկտիվը ներկայումս աշխատանքային մեծ խանդավառությամբ պատրաստվում է դիմավորելու Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակը։ Հանրախանութի 25 առաջավոր բրիգադներ պարտավորվել են նոյեմբերի 29-ին կատարել հնգամյակի իրենց առաջադրանքները։*

*Այս տարվա սոցմրցությամբ պարտավորվել ենք նախորդ տարվա համեմատությամբ 6,7 տոկոսով բարձրացնել վաճառողների աշխատանքի արտադրողականությունը, առևտրի առաջավոր մեթոդների՝ օրինակ ինքնասպասարկման ներդրմամբ ապրանքների վաճառքը ընդհանուր շրջանառության մեջ հասցնել 70 տոկոսի, հագեցնել առևտուրը տեխնիկական նոր սարքավորումներով և բարելավել աշխատողների սոցիալ-կենցաղային պայմանները։*

*Հանրախանութի կոլեկտիվի պետական պլանային առաջադրանքների սիստեմատիկ կատարմանը մեծապես նպաստում է սերտ համագործակցությունը արտադրող ձեռնարկությունների հետ։ Մենք տարբեր մատակարարողների հետ կնքել ենք համագործակցության 30 պայմանագրեր՝ «Արտադրվում է գերազանց, վաճառվում է գերազանց» նշանաբանով։ Սոցիալիստական մրցության կազմակերպման այս ձևը մեծապես նպաստում է փոխադարձ պարտավորությունները ժամանակին կատարելուն, ապրանքների համաչափ մատակարար-*



*մանը, առևտրական սրահներում կայուն տեսականու պահպանմանը, ապրանքների որակի բարելավմանը, գնորդների պահանջարկի խոր ու բազմակողմանի ուսումնասիրմանը և այդ միջոցով արտադրության չափի ու տեսականու ընդլայնմանը։ Այդպիսի պայմանագրեր են կնքվել «Գարուն» կարի արտադրամիավորման № 4 ֆաբրիկայի և հանրախանութի կանացի շրջազգեստների առևտրական սրահի, նույն միավորման № 3 ֆաբրիկայի և տղամարդկանց վերնաշապիկների սրահի, Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորման № 1 ֆաբրիկայի և տղամարդկանց կոստյումների սրահի, կոշիկի «Մասիս» ֆիրմայի №№ 1, 4, 6 ֆաբրիկաների և կանացի ու տղամարդկանց մոդելային կոշիկի սրահների, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի ու հանրախանութի մետաքսյա գործվածքեղենի սրահի, Սովետաշենի տրիկոտաժի միավորման ու կանացի տրիկոտաժե վերնազգեստների սրահի միջև և այլն։*

*Հանրախանութը մեծ նշանակություն է տալիս նաև համագործակցության այնպիսի պայմանագրերին, որոնք արտացոլում են ապրանքների արտադրության և իրացման տեխնոլոգիական ողջ շղթան։ Նման պայմանագիր է կնքվել, օրինակ, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, կարի «Գարուն» արտադրամիավորման և հանրախանութի կանացի շրջազգեստների սրահի միջև։ Պայմանագրի նման եռօղակ սիստեմն ավելի արդյունավետ է նպաստում թողարկվող ապրանքը ժամանակակից նորաձևությանը համապատասխանեցնելուն, դրա որակի բարելավմանը, ապրանքների համաչափ մատակարարմանը և բնակչության կուլտուրական սպասարկման մակարդակի բարձրացմանը։ Պայմանագրային համագործակցության շնորհիվ ավելանում են արտադրող ձեռնարկությունների ներքին ռեզերվների գործադրման հաշվին թողարկվող բարձր պահանջարկի ապրանքների, ինչպես և նոր արտադրատեսակների արտադրության ծավալները։ Այսպես, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկան 490 հազար ռուբլու ֆոնդի փոխարեն հանրախանութին 1979 թվականին մատակարարել է 941 հազար ռուբլու արդյունաբերական ապրանք, որից 451 հազարը արտադրության ներքին ռեզերվների բացահայտման, հումքի և նյութերի խնայման շնորհիվ։ Տեղին է նշել, որ մատակարարման ընդհանուր գումարից 187 հազար ռուբլին բաժին է ընկնում միայն նոր արտադրատեսակներին։*

*Նույնպիսի օրինակ կարելի է բերել նաև «Գարուն» կարի արտադրամիավորման № 4 ֆաբրիկայից, որը միայն 1979—80 թթ. ընթացքում 30 տոկոսով նորացրել է իր արտադրատեսակները։*

*Արտադրող և վաճառող ձեռնարկությունների փոխադարձ համագործակցության շնորհիվ թողարկվող արտադրատեսակների անընդհատ նորացումն ու դրանք ժամանակակից նորաձևությանը համապատասխանեցնելը վերացնում են հանրախանութում գերնորմատիվային ապրանքային պաշարների գոյացումը, ինչպես նաև առևտրի ցանցում աշխատանքային և նյութական ռեսուրսների սառեցումը։*

*Համագործակցության պայմանագրերի հիման վրա հանրախանութում հաճախակի կազմակերպվում են ցուցահանդես-վաճառքներ, գնորդների կոնֆերանսներ։ Դա հնարավորություն է ընձեռում ուսումնասիրելու գնորդների պահանջարկը կոնկրետ այս կամ այն արտադրատեսակների նկատմամբ՝ արտադրության ծավալի վրա համապատասխանաբար ներգործելու նպատակով։ Միայն 1979—80 թվականների ընթացքում հանրախանութում կազմակերպվել են 27 ցուցահանդես-վաճառք, գնորդների երկու կոնֆերանս։*

*Տարեցտարի բարելավվում է հայրենական արտադրանքի որականին։ Եթե 1978 թվականին արտադրանքի ցածր որակի համար հանրախանութը արտադրող կազմակերպություններին ներկայացրել է 136,7 հազար ռուբլու տուգանք, ապա 1979—80 թթ. այն կազմել է 64,2 հազար ռուբլի, իսկ թողարկվող ապրանքների տեսականին այդ տարիների ընթացքում նորացվել է 50 տոկոսով։ Եթե նախորդ տարիներին հանրախանութի ընդհանուր ապրանքաշրջանառության մեջ հայրենական արտադրանքը կազմել է 60 տոկոս, ապա այն այժմ 80 տոկոսից ավելի է։*

Եվ, այնուամենայնիվ, համագործակցության պրակտիկայից դեռևս իսպառ չեն վերացվել ապրանքների անհամաչափ մատակարարման երևույթները, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում առևտրի սպասարկման կուլտուրայի վրա, առաջացնում են արհեստական հերթեր և գնորդների դժգոհությունը: Անհամաչափ մատակարարման պատճառով ապրանքների կեսից ավելին մենք ստանում ենք ամսվա վերջին տասնօրյակում, հետևաբար և ամսվա մեր պլանի կեսը կատարվում է այդ տասն օրվա ընթացքում: Բնականաբար, հանրախանութի սպասարկող անձնակազմն այդ օրերին ավելի լարված է աշխատում, ընկնում է բնակչության կուլտուրական սպասարկման մակարդակը, որը և հարուցում է գնորդի իրավացի դժգոհությունը: Անկասկած, այս երևույթի պատճառներից մեկը արտադրող-սպառող օղակների պայմանագրային հարաբերությունների խախտումն է, նրանց ոչ ճկուն աշխատանքը:

Իրողություն է և այն, որ հանրախանութը դեռևս չի կարողանում լիովին բավարարել ապրանքային տեսականու հանդեպ բնակչության պահանջարկը, մի բան, որը հիմնականում պայմանավորված է արտադրության հնարավորություններով: Դա վերաբերում է հատկապես հայրենական արտադրության անկողնային սպիտակեղենին, կանանց և տղամարդկանց ներքին սպիտակեղենին, կանացի ժակետներին, երեսսրբիչներին: Դրանք թողարկվում են հանրապետության ձեռնարկություններում, բայց ֆոնդավորված են, և արտադրությունը, անկախ վաճառքի լայն հնարավորություններից, ֆոնդից ավելի չի կարող մատակարարել: Սակայն իրողություն է և այն, որ այս կամ այն ապրանքի նկատմամբ գնորդների չհիմնավորված, երբեմն ապշեցուցիչ չափերի հասնող «պահանջարկը» առևտրի ոլորտում տվյալ ապրանքի արհեստական դեֆիցիտ է ստեղծում: Այդ առումով բնորոշ է նույն անկողնային բամբակյա սպիտակեղենի պահանջարկի ու առաջարկի միջև ստեղծված խզումը. նախորդ տարիների համեմատ զգալիորեն ավելացել է արտադրանքի այդ տեսակի ինչպես արտադրության, այնպես էլ վաճառքի ծավալը: Այսպես, 1978 թ. հանրախանութում վաճառվել է 1.101 հազար ռուբլու անկողնային սպիտակեղեն, 1979-ին՝ 1.494 հազար, իսկ 1980-ին՝ 1.870 հազար: Սճն ակնհայտ է, բայց, այդուհանդերձ, պահանջարկը դեռևս չի բավարարվում: Ըստ երևույթին, այս ասպարեզում առևտրի դերը մենք չպետք է հանգեցնենք սոսկ ապրանքի իրացմանը. բնակչության շրջանում պահանջարկի կուլտուրայի դաստիարակումը պետք է դառնա գնորդների հետ մեր հանդիպումների, նրանց հետ առևտրի աշխատողների կապի այլ ձևերի մշտական խնդիրը:

Բնակչության շրջանում հատկապես բարձր պահանջարկ ունեն «Գարուն» կարի արտադրամիավորման №№ 3, 4 ֆաբրիկաների կանացի շրջազգեստներն ու խալաթները, տղամարդկանց վերնաշապիկները, կոշիկի «Մասիս» ֆիրմայի փորձարարական և № 6 ֆաբրիկաների, կոշիկի մոդելների տան տղամարդու և կանացի կոշկեղենը, որոնք աչքի են ընկնում իրենց բարձր որակով և լիովին համապատասխանում են ժամանակակից նորաձևության պահանջներին:

Ցավոք, մենք ականատես ենք նաև հակառակ պատկերին, երբ համեմատական կարգով իջնում է բնակչության պահանջարկը Երևանի մետաքսի և նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատների, ինչպես նաև Քանաքեռի կանացի մասսայական կոշկեղենի և Շահումյանի անվան կոշկեղենի ֆաբրիկաների թողարկած արտադրանքի նկատմամբ:

Չնայած գործնական աշխատանքում հանդիպող որոշակի դժվարություններին, որոնք կապված են պայմանագրային պարտավորությունների խախտման հետ, առևտրի ռացիոնալ կազմակերպման, արտադրության հետ ճիշտ համագործակցելու կարևորագույն ձևը, այնուամենայնիվ, համագործակցության պայմանագրերն են:

Առևտրի պլանային առաջադրանքների սիստեմատիկ կատարման գործում կարևոր դեր են խաղում առևտրի առաջավոր ձևերի ու մեթոդների ներդրումը, լավագույն փորձի տարածումը: Գնորդների կուլտուրական սպասարկմանը մեծապես նպաստում են հանրախանութում գործող ռադիոռեկլամն ու բարի ծառայությունների բյուրոն: Այս ծառայությունները գնորդին տեղեկություններ



են հաղորդում վաճառքում գտնվող ապրանքների, այս կամ այն հարկում դրանց տեղաբաշխման, ինչպես նաև հանրախանութի ներքին կառուցվածքի մասին:

Հանրախանութի ցուցադրական դահլիճում պարբերաբար գնորդների ուշադրության են ներկայացվում հայրենական նորաձևությունները: Ընդլայնվում են գնորդներին մատուցվող լրացուցիչ ծառայությունները: Հանրախանութում գործում են ժամացույցների նորոգման, հուշանվերների փորագրման, դեղորայքի վաճառքի, մեծածավալ ապրանքների փաթեթավորման, բարդ տեխնիկական ապրանքների նորոգման, առաջին բուժօգնության կետեր:

Խոսելով ռեկլամային աշխատանքների մասին, պետք է խոստովանել, որ դեռևս այդ բնագավառում կան լուրջ թերություններ: Դա հատկապես վերաբերում է խանութի գեղարվեստական ձևավորմանը, ցուցափեղկերի կահավորմանը:

Պետական հանրախանութն ունի չորս առևտրական հարկեր, որոնցից յուրաքանչյուրը մասնագիտացված է որոշակի ապրանքային խմբերի ասպարեզում: Նման մասնագիտացումը, ինչպես նաև այդ հարկերում ըստ առևտրական սրահների ապրանքային փոքր խմբերի առանձնացումը զգալիորեն կրճատում է գնումների վրա ծախսվող ժամանակը, նպաստում ապրանքաշրջանառության ծավալի մեծացմանը, ինչպես նաև բարձրացնում վաճառողի աշխատանքի արտադրողականությունը:

1980 թվականի առաջին եռամսյակում մենք հաջողությամբ տեղադրեցինք Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետությունից ստացված առևտրական նոր սարքավորումները, որոնք մեծապես նպաստում են առևտրի որակի և արդյունավետության բարձրացմանը, առևտրի առաջավոր ձևերի ներդրմանը: Առևտրի առաջավոր ձևերից է նաև ապրանքների՝ նմուշներով և բաց ցուցադրման եղանակով վաճառքի կազմակերպումը: Այս մեթոդով հիմնականում վաճառվում են գործվածքեղենը, ռադիոհեռուստատեսային ապրանքները, ռադիոմասերը, վարագույրները, գալանտերեայի ապրանքները:

Հանրախանութի կոլեկտիվի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման գործում դրական ազդեցություն ունի նաև մինսկցիների օրինակով 1979 թվականի մայիս ամսից հանրախանութում ներդրված աշխատանքի որակի կառավարման համակարգը: Դա, ի դեպ, հանրապետությունում առաջին անգամ ներդրվել է մեր հանրախանութում և մյուս առևտրական ձեռնարկությունների համար կարող է ծառայել որպես փորձի ընդօրինակման միջոց: Այս համակարգի նպատակը հանրախանութի բոլոր առևտրական բաժինների աշխատանքի կազմակերպման որակի բարձրացումն է, որով, վերջին հաշվով, պայմանավորված է մեր աշխատանքի տնտեսական արդյունավետությունը. համակարգի կիրառմամբ յուրաքանչյուր աշխատողի հավելյալ վարձատրության չափը ուղղակիորեն առնչվում է ապրանքների վաճառքի ճիշտ կազմակերպման, աշխատանքային կարգապահության, բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացման որակական ցուցանիշների հետ:

Աշխատանքի որակի կառավարման համակարգի ներդրումից անցել է ընդամենը մեկ տարի, սակայն այդ կարճ ժամանակընթացքում արդեն նկատելի են դրական տեղաշարժերը: Զգալիորեն նվազել են գնորդների հանդեպ ոչ հարգալից վերաբերմունքի, աշխատանքային կարգապահության խախտման դեպքերը: Եթե աշխատողը գնորդի նկատմամբ եղել է կոպիտ կամ խախտել է աշխատանքային կարգապահությունը, ապա ամսական արդյունքների ամփոփման ժամանակ նա զրկվում է հավելյալ որոշ վարձատրությունից: Եվ հակառակը. եթե աշխատողը բարձր է պահել վաճառողի կոչումը, աչքի է ընկել սպասարկման կուլտուրայով, ապա նրա պարգևատրությունը աճում է համապատասխան տոկոսներով: Այս համակարգը հնարավորություն է ընձեռում բացահայտելու յուրաքանչյուրի աշխատանքի որակը աշխատատեղում, ցանկացած ժամանակահատվածում: Պրակտիկան հաստատում է, որ առևտրում այս համակարգի ներդրումը հասունացած խնդիր է և բխում է օրվա պահանջներից:

Առաջնորդվելով կուսակցության ու կառավարության պահանջներով, պետական հանրախանութում մենք աշխատանքի ենք ընդունում հիմնականում կանանց և աղջիկների: 1980 թվականի հունվարի 1-ի դրությամբ նրանք կազ-

մում են հանրախանութի աշխատողների 85 տոկոսը: Կոլեկտիվը երիտասարդ է, գոհացուցիչ է նրա մասնագիտական որակավորման մակարդակը. 913 մարդուց 88-ն ունեն բարձրագույն, 124-ը՝ միջնակարգ մասնագիտական կրթություն, 369-ը ավարտել են առևտրի մասնագիտական ուսումնարանները, մյուսները հիմնականում միջնակարգ կրթություն ունեն: 1977—80 թթ. 133 երիտասարդ վաճառողներ որակավորումը բարձրացրել են ՀՍՍՀ առևտրի մինիստրության պրոֆտեխուսումնարանում: Վաճառողների որակավորումը բարձրացնելու նպատակով հանրախանութում գործում է որակավորման հանձնաժողով, որը 1977—79 թվականների ընթացքում կրտսեր վաճառողից՝ վաճառողի և վաճառողից՝ ավագ վաճառողի որակավորում է շնորհել 92 աշխատողների: Նույն նպատակին է ծառայել նաև թերի միջնակարգ կրթություն ունեցող բանվորական կատեգորիայի աշխատողներին առանց արտադրությունից կտրվելու հեռակա և երեկոյան միջնակարգ դպրոցներում ընդգրկելը:

«Արտադրության մեջ բանվորների պատրաստման հետագա կատարելագործման և որակավորման բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների կենսագործման ասպարեզում մենք ըստ ամենայնի կարևորում ենք անմիջականորեն արտադրության մեջ կադրերի պատրաստումն ու նրանց որակավորման բարձրացումը: Կադրերի համալրումը խանութը հիմնականում կատարում է իրեն կից գործող խանութ-դպրոցի շրջանավարտների միջոցով: Այդ դպրոցի աշխատանքային պրակտիկան լրիվ արդարացնում է իրեն: Դասընթացներն անցկացվում են հանրախանութում, իսկ արտադրական պրակտիկան՝ անմիջականորեն առևտրական սրահներում: Դա հնարավորություն է ընձեռում մինչև հիմնական աշխատանքի անցնելը ծանոթանալու հանրախանութի ներքին կարգ ու կանոնին, աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձին:

Կադրերի պատրաստման, նրանց բարոյական դաստիարակության գործում մեծ ավանդ ունի հանրախանութի վարպետ-դաստիարակների խորհուրդը, որը ղեկավարում է 50 վարպետ-դաստիարակների հասարակական գործունեությունը: Վարպետ-դաստիարակների շնորհիվ է, որ այսօր վաճառասեղանի շուրջ 250 աշխատողներ տիրապետում են վաճառող-խորհրդատուի, հսկիչ-գանձապահի, հասարակական խոտանողի մասնագիտություններին: Կադրերի որակավորման բարձրացման նպատակով հանրախանութում յուրաքանչյուր տարի ըստ մասնագիտությունների անց են կացվում «Լավագույն վաճառող», «Լավագույն վաճառող-խորհրդատու», «Լավագույն հսկիչ-գանձապահ» մրցույթները, որոնք նպաստում են մասնակիցների ինչպես մասնագիտական գիտելիքների հարստացմանը, այնպես էլ նրանց սպասարկման կուլտուրայի բարձրացմանը: Պատահական չէ, որ և՛ քաղաքային, և՛ հանրապետական նման մրցույթներում միշտ առաջավոր տեղեր են գրավել պետական հանրախանութի ներկայացուցիչները: Ըստ մասնագիտությունների ծավալված քաղաքային մրցույթներում քանիցս հաղթող են ճանաչվել մեր հանրախանութի աշխատողներ Արմինե Հովհաննիսյանը և Ալվարդ Կարապետյանը:

Հանրախանութի ձեռք բերած հաջողություններում իրենց արժանի ներդրումն ունեն տնտեսական բաժնի վաճառող, քաղաքային սովետի դեպուտատ Ա. Կույումջյանը, որը պարգևատրվել է «Սոցիալիստական մրցության դերազանցիկի» կրծքանշանով, գալանտերեայի ապրանքների բաժնի սեկցիայի վարիչ, հանրախանութի վարպետ-դաստիարակների խորհրդի նախագահ Հ. Կարապետյանը, կոշիկի բաժնի սեկցիայի վարիչի տեղակալ Ս. Ենգիբարյանը, որն արժանացել է ՍՍՀՄ առևտրի մինիստրության և ՀԱՄԿԽ-ի պատվո դիպլոմի, պատրաստի հագուստեղենի բաժնի սեկցիայի վարիչի տեղակալ Շ. Մեսրոպյանը և նույն բաժնի հսկիչ գանձապահ Ա. Հովհաննիսյանը, որոնք պարգևատրվել են ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի ու ՀԼԿԵՄ Կենտկոմի դիպլոմներով, և շատ ուրիշներ:

Կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծմանը մեծապես նպաստում է նաև գաղափարադաստիարակչական աշխատանքների ճիշտ կազմակերպումը: 710



աշխատողներ ընդգրկվել են կուսակցական և կոմերիտական քաղուսուցման մեջ, կոմունիստական աշխատանքի դպրոցներում, ժողովրդական համալսարաններում, որտեղ դասախոսություններ են կարդում հմուտ և փորձված դասախոսներն ու մասնագետները: Այդ պարապմունքները նկատելի ազդեցություն են ունենում աշխատողների գաղափարական մակարդակի բարձրացման, նրանց էսթետիկական զգացողության ու վարվեցողության կուլտուրայի հղկման վրա:

Երիտասարդ կադրերի դաստիարակությունը անընդմեջ մի պրոցես է, այն սկսվում է աշխատանքային առաջին իսկ օրից: Շատերը գալիս են մեզ մոտ աշխատելու միջնակարգն ավարտելուց անմիջապես հետո: Նրանց դաստիարակության գործում մեծ դեր ունեն փորձառու վարպետ-դաստիարակները: Յուրաքանչյուր այդպիսի վարպետի կցված են երիտասարդ վաճառողներ, որոնց ամեն մի աշխատանքային քայլի համար նրանք իրենց պատասխանատու են համարում:

Գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքների ողջ կոմպլեքսը նպաստել է կայուն աշխատավորական կոլեկտիվի ստեղծմանը, որը, ինչ խոսք, առևտրի պրոցեսում կուլտուրական սպասարկման ընդհանուր մակարդակի բարձրացման կարևոր ազդակ է: Կադրերի հոսունության կրճատմանը զգալիորեն նպաստել է նորմալ աշխատանքային պայմանների ստեղծումը: Ներքին ձևափոխությունների հաշվին բացվել է կանացի վարսավիրանոց՝ կոսմետիկական առանձնասենյակով, որից սիրով օգտվում են մեր աշխատողները: Գործում են նաև բուժկետը՝ գինեկոլոգիական և թերապևտիկ կաբինետներով, կանանց հիգիենայի սենյակը, բանվորական ճաշարանը՝ 250 նստելատեղով: Բոլորովին վերջերս մեր աշխատողները ստացան ևս մի հաճելի նվեր՝ 80 քմ տարածությամբ հանգստի սենյակ և կարմիր անկյուն, որտեղ կարելի է լարված աշխատանքից հետո մի փոքր հանգստանալ, թարմանալ, հաղորդակցվել օրվա նորույթներին:

Այս տարի ավարտվեցին նաև պահեստային տնտեսությունների վերակառուցման աշխատանքները: Նախկինում պահեստներն իրենց պայմաններով չէին բավարարում գործող սանիտարական նորմաները, զուրկ էին բնական լուսավորվածությունից և բավարար օդափոխությունից: Այժմ պահեստներում աշխատանքային պայմանները որոշակիորեն բարելավված են: Սակայն պահեստային տնտեսությունն իր տարողությամբ դեռևս չի համապատասխանում մեր ապրանքաշրջանառության ծավալին: Եվ դա խանգարում է զանազան ապրանքախմբերով ժամանակին սեզոնային կուտակումներ կատարելուն: Փաստորեն դրա պատճառով խախտվում է ապրանքների համաչափ մատակարարումը: Հատկապես այդ խիստ զգացվում է կուլտապրանքների վաճառքի ժամանակ, երբ անհրաժեշտ է դպրոցական սեզոնը կազմ ու պատրաստ դիմավորել: Պահեստային տնտեսությունների ներկայիս ծավալը հնարավորություն չի տալիս նաև ապահովելու յուրաքանչյուր ապրանքախմբի տեսականու և տեխնիկական պայմաններով պահանջվող պահպանման, դրանց տեսակավորման համար անհրաժեշտ պայմաններ: Սա իր բացասական ազդեցությունն է թողնում ապրանքների ֆիզիկական և որակական հատկությունների պահպանման վրա:

Մեզ մոտ դեռևս ապրանքների բեռնման և բեռնաթափման, դրանք պահեստից առևտրական սրահները տեղափոխելու աշխատանքները կատարվում են ձեռքով, մեխանիկական սայլակների օգնությամբ: Դա խիստ ծանրաբեռնում է կանանց աշխատանքը և, բնականաբար, լրջորեն մտահոգում է հանրախանութի ղեկավարությանը:

Առևտրի կազմակերպման մակարդակը ավելի բարձրացնելու, աշխատավորների կուլտուրական սպասարկումը կազմակերպելու գործում մեր առջև ծառացած են մի շարք չլուծված հարցեր: Նախ՝ զգացվում է մասնագիտական բարձրագույն կրթություն ունեցող կադրերի խիստ պակաս. այդ բացը մասամբ լրացվում է տեղի այն երիտասարդ կադրերով, որոնք հանրախանութի գործուղմամբ ընդունվում են հեռակա բարձրագույն մասնագիտական հաստատություններ:

Դեռևս իսպառ չի հաղթահարված կադրերի հոսունությունը։ Հարցի կարգավորմանը մեծ չափով խանգարում է այն, որ հանրախանութը չունի իր առանձին մանկապարտեզը։ Մինչդեռ կոլեկտիվը բնութագրվում է իր երիտասարդությամբ. աշխատողների գերակշռող մասը երիտասարդ մայրեր են, որոնք շատ դեպքում հեռանում են հանրախանութից՝ երեխաներին խնամող չունենալու պատճառով։

Նոր հնգամյակում հանրախանութի ապրանքաշրջանառության տարեկան ծավալը կավելանա շուրջ 10 մլն ռուբլով և կհասնի 74 մլն ռուբլու։ Յուրաքանչյուր մեկ քմ վաճառասրահի ապրանքաշրջանառության ծավալը կմեծանա 19 հազար ռուբլով, կավելանա նաև մեկ վաճառողին բաժին ընկնող ապրանքաշրջանառության ծավալը։ Հնգամյակի տարիներին հանրախանութի ընդհանուր ապրանքաշրջանառության մեջ ինքնասպասարկման մեթոդով ապրանքների վաճառքը կկազմի 85—90 տոկոս։ Մշտապես մեր ուշադրության կենտրոնում կլինի գնումների վրա ծախսվող ժամանակի կրճատումը։ Այդ կարևոր, առանցքային հարցի լուծման համար անհրաժեշտ է պահանջարկի և առաջարկի մանրակրկիտ ուսումնասիրում, դրանց մեթոդների կատարելագործում, ֆիրմային սեկցիաների քանակի ավելացում, որը բարոյապես կխթանի արտադրող ձեռնարկություններին՝ իրենց կցված սեկցիաներում մշտապես ապահովելու կայուն և որակյալ տեսականի։ Խիստ կարևոր է ռեկլամային աշխատանքների մակարդակի բարձրացումը, հանրախանութում գնորդներին ցույց տրվող լրացուցիչ ծառայությունների անվանացանկի ընդարձակումը։ Նախատեսվում է նաև ֆիրմային սեկցիաներում ամիսը մեկ վաճառքը կազմակերպել արտադրության ներկայացուցիչների միջոցով։ Դա հնարավորություն կընձեռի, որպեսզի արտադրողներն անմիջականորեն, երես առ երես հանդիպեն գնորդների հետ, հաղորդակից լինեն նրանց պահանջներին, հաշվի նստեն դրանց հետ։

Հանրախանութի կոլեկտիվը աշխատանքային վերելքի պայմաններում պատրաստվում է բարձր ցուցանիշներով ավարտելու տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին և լավագույն արդյունքներով դիմավորելու կուսակցության XXVI համագումարը։



Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ։** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64։

*Հանձնված է շարվածքի՝ 19.09.80—30.09.80։ Ստորագրված է տպագրության՝ 10.10.80։ ՎՖ 04854 Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15.732։ Պատվեր 2215։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28։*
Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու։ Հ. 27։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու։ Հ. 31։ *«Հայաստան» հրատ., 1980։*

ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի մասին։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Խ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— ՍՄԿԿ պայքարը գյուղատնտեսության զարգացման համար։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Կուսակցական շինարարություն *(ուսումնական ձեռնարկ)*։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Ա. ԹԱՄԱԶՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը և արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսը։ *ԵՊՀ հրատ., 1980։*

Յ. ՄԱՐՈՒԹՅԱՆ— Հնգամյակի աչքեայինները։ *«Հայաստան» հրատ., 1980։*

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Պարսոնսի գործողության տեսության հակագիտական էությունը։ *ԵՊՀ հրատ., 1980։*

Է. ՄԿՐՏՉՅԱՆ— Աշխարհաբարի տարրերը միջնադարի գրական հուշարձաններում։ *ԵՊՀ հրատ., 1980։*

Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— 19—20-րդ դարերի հայ թատրոնի տարեգրություն *(1801—1922)։ Հ. 2։ Ե., ԳԱ հրատ., 1980։*

Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Հայ թատրոնի պատմություն *(1901—1920)։ Ե., ԳԱ հրատ., 1980։*

Հ. ԹՈՒԹՈՒՆՋՅԱՆ— Երեխաների հոգեբանության հարցեր։ *ԵՊՀ հրատ., 1980։*

Ն. ՄԱՅԿՈՎ— Քաղաքացիական պաշտպանությունը կարևոր գործ է։ *«Հայաստան» հրատ., 1980։*

А. КОСЫГИН — **В едином строю защитников Отчизны.** М., Политиздат, 1980.

Г. РОМАНОВ — **Избранные речи и статьи.** М., Политиздат, 1980.

А. КОСТИН — **Ленин — создатель партии нового типа.** (1894—1904 гг.) Изд. 2, дораб. и доп. М., Политиздат, 1980.

**Партия в твоей жизни.** Молодому коммунисту. М., Политиздат, 1980.

**Внешнеполитическая деятельность КПСС и современные международные отношения.** М., «Знание», 1980.

В. МАШЕНЦЕВ — **Деятельность КПСС по повышению активности масс в коммунистическом строительстве.** М., «Знание», 1980.

М. ВОЛКОВ — **Развитое социалистическое общество и советский образ жизни.** М., «Знание», 1980.

О. КУТАФИН — **Плановая деятельность Советского государства.** М., «Юрид. лит.», 1980.

В. ЗАХАРОВ — **Планирование идеологической работы.** М., Политиздат, 1980.

**Критика современных буржуазных и ревизионистских концепций по проблемам строительства социализма и коммунизма.** М., «Высшая школа», 1980.

Л. ФЕДОРОВ — **Рабочий класс против международных монополий.** М., «Знание», 1980.

А. УЛЕДОВ — **Духовная жизнь общества.** Проблемы методологии исследования. М., «Мысль», 1980.

Л. ГОРШКОВ — **Пропаганда трудовых починов.** М., «Плакат», 1980.

**Особенности и проблемы размещения производительных сил СССР в период развитого социализма.** М., «Наука», 1980.

А. ФАЛАЛАЕВ — **Формирование предприятия коммунистического типа.** М., «Мысль», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130--8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱԽՏՈՐՈՇԻՉ

*Դեռևս անցյալ դարում գիտնականները հայտնաբերել են, որ մարդու ներքին օրգանները կապված են մաշկի որոշակի մասերի հետ։ Հետագայում հաստատվել է, որ այս կամ այն օրգանի հիվանդությունը, ասես, կենտրոնանում է մարմնի համապատասխան մասում, դրանով իսկ փոխելով նրա էլեկտրադիմադրողականությունը։*

*Վերջերս բժշկական գիտությունների թեկնածու, Լատվիական ՍՍՀ վաստակավոր բժիշկ Վիտաուտաս Մյաշկան և ֆիզիկոս-ինժեներ Սիգիտաս Ջեմյաշկան ստեղծել են ցավը և հույզերը չափող էլեկտրոնային սարք, որի աշխատանքը հիմնված է վերոհիշյալ երևույթի վրա։ Սարքի օգնությամբ 3—4 րոպեանոց սեանսի ընթացքում հաջողվում է չափել մաշկի դիմադրողականությունը, հետևաբար և օբյեկտիվորեն բնորոշել ցավի ախտանիշները։ Ավելին, մարդը կարող է և չզգալ, որ ինքն արդեն հիվանդ է, իսկ սարքն զգուշացնում է մոտեցող վտանգի մասին։ Սարքը կարող է չափել մարդու և՛ հոգեկան, և՛ հուզական լարվածությունը։*

## ՇԱՐԺԱՆԻՎՈՎ՝ ՊՐԱԳԱ—ՄՈՍԿՎԱ ԵՐԹՈՒՂՈՎ

*Բռնոյի (ՉՍՍՀ) ռոտացիոն շարժիչների գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է գազային շարժանիվով բանող միջքաղաքային ավտոբուս՝ 100 ուղևորական նստելատեղով։ Շարժիչը կարող է գործել նավթով, բենզինով, մազութով և դիզելային վառելիքով, ինչպես և էժանագին յուղախառնուրդով։ Արտանետված գազերը այրման բարձր ջերմաստիճանում ավելի պակաս թունավոր են, քան մխոցային շարժիչներինը։ Շարժանիվների հզորությունը մոտ 250 ձիաուժ է. այն ավելի փոքր է նույն հզորության դիզելային շարժիչներից։ Շարժանիվը գործի է գցում գեներատորը, որն էլեկտրականություն է հաղորդում անվադողերի էլեկտրաշարժիչներին։*

## ՄԵՔԵՆԱԳՐՈՒՄ Է «ԵՐԻՑՈՒԿԸ»

*Ջեմերդ քաղաքի (ԳԴՀ) «Ռոբոտրոն» կոմբինատն սկսել է թողարկել S 6001 էլեկտրոնային գրամեքենան։ Այն կառավարում է միկրոպրոցեսորը՝ փոքրաչափ ԷՀՄ-ը։ Մեքենագրվող տեքստն արձանագրվում է մեքենայի հիշողության մեջ և անհրաժեշտության դեպքում կարող է կրկնվել վայրկյանում 40 նիշ արագությամբ։ Տպագրության նման արագությունն ապահովվում է «երիցուկը»՝ ծակոտկեն անվակը, որի ծայրերին տեղակայված են տառերը։ Մեքենայի գլանն անշարժ է, իսկ «երիցուկը» շարժվում է թղթի երկարությամբ, ստեղնաշարի ամեն հարվածի կամ ԷՀՄ-ի ամեն մի ազդանշանի հետ դեպի թուղթն է շրջվում անհրաժեշտ տառը և հարվածվում թղթին։*

*Երկու-երեք վայրկյանի ընթացքում կարելի է փոխել «երիցուկի» տառատեսակը, ասենք, ռուսականը՝ լատինականով։ Մեքենան ունի «ուղղում» մակագրությամբ յուրատեսակ ստեղնաշար, որը հնարավորություն է ընձեռում ջնջելու սխալ մեքենագրած տառը և հենց տեղում ճշտելու։*